

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**2**

ՓԵՏՐՎԱՐ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## С О Д Е Р Ж А Н И Е







# ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԱՐՏԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նորանոր բնագծեր նվաճեց ընթացիկ հնգամյակի չորրորդ տարում։ Այդ պատմական ձեռքբերումներում իր արժանի տեղն ունի Սովետական Հայաստանը։ Հանրապետությունը ժամկետից շուտ կատարեց արդյունաբերական արտադրանքի իրացման և կարևորագույն արտադրատեսակների մեծ մասի արտադրության տարեկան պլանը, թողարկելով ավելի քան 208 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Մեծ ոգևորությամբ ընդունվեց աշխատանքային բարձր ցուցանիշների հասնելու համար մեր հողագործներին, բոլոր աշխատավորներին ՍՄԿԿ Կենտկոմի հղած ողջույնը։*

*Ներգրավվելով ՍՄԿԿ XXVII համագումարը, Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակը և ստախանովյան շարժման 50-ամյակը նոր աշխատանքային նվաճումներով դիմավորելու համամիութենական շարժման մեջ՝ հանրապետության հարյուրավոր ձեռնարկություններ, արտադրամասեր, տեղամասեր ու բրիգադներ պաշտպանեցին Միության առաջավոր ձեռնարկությունների նախաձեռնությունը՝ «Հնգամյակի առաջադրանքը՝ մինչև Հաղթանակի օրը»։ Բազում աշխատավորական կոլեկտիվներ պարտավորվել են հնգամյակն ավարտել մինչև նոյեմբերի 29-ը՝ Հայաստանում սովետական իշխանության հաստատման օրը։*

*Մեր բոլոր ձեռքբերումները, անկասկած, հանրապետության կուսակցական կազմակերպության նաև գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական նպատակասլաց աշխատանքի արդյունք են։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումը խնդիր դրեց բարձրացնել կոմունիստական դաստիարակության ներգործունությունը, շարժման մեջ դնել ժողովրդական զանգվածների՝ գիտակցականությամբ և գաղափարական համոզվածությամբ տոգորված ստեղծարար ուժերը։ Կուսակցության բազմաբեղուն գործունեության այդ կարևորագույն բնագավառը մշտապես գտնվում է ՍՄԿԿ Կենտկոմի ուշադրության կենտրոնում։ Դրա վառ վկայությունը հանդիսացավ «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» կուսակցության Կենտկոմի անցյալ տարվա հոկտեմբերին ընդունած որոշումը։ Այդ պատմական փաստաթուղթը հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ընդունեցին խանդավառությամբ, երախտագիտության խոր զգացումով։ Այս ծրագրային որոշումը մեր կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի կողմից մեր ժողովրդի բարօրության, Սովետական Հայաստանի հետագա զարգացման ու ծաղկման նկատմամբ ցուցաբերվող հոգատարության ևս մի նոր, վառ դրսևորում է։ Այստեղ առանձնապես շեշտվում է մեր հանրապետությունում տիրող բարոյաքաղաքական առողջ մթնոլորտը, որը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հմուտ ղեկավարության, ամենուրեք աշխատանքի լենինյան ոճի հաստատման նպատակով իրագործվող հետևողական աշխատանքի արդյունք է։*

*Հայաստանի կուսակցական կազմակերպությունների, բոլոր աշխատավորական կոլեկտիվների հայրենասիրական ստեղծարար աշխատանքի, արտադրական ու քաղաքական բարձր ակտիվության, նրանց կողմից կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի ետհամագումարյան պլենումների որոշումների հետևողական իրականացման արդյունք են վերջին երկու հնգամյակների մեր նվաճումները, այն, որ կատարվում ու գերակատարվում են պլա-*

նային առաջադրանքները, ապահովվում է հանրապետության տնտեսական, սոցիալական և կուլտուրական կայուն, դինամիկ զարգացումը։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին հարցը հանգամանորեն քննարկվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումում, որտեղ զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։ Զեկուցման մեջ մասնավորապես ասված է. «Մեզ համար բացառիկ կարևոր այդ փաստաթղթում խորապես վերլուծված է Հայաստանի կոմկուսի, նրա կոմիտեների և սկզբնական կուսակցական կազմակերպությունների բազմակողմանի գործունեությունը աշխատավորների կոմունիստական դաստիարակության ասպարեզում։ Ըստ արժանվույն գնահատվել է արվածը, մատնանշվել են գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հիմնական ուղղությունները՝ առաջիկա տարիների և հեռանկարի առումով, որոշվել այդ աշխատանքի, տնտեսական ու կուլտուրական շինարարության, կենսագործունեության բոլոր ոլորտների կուսակցական ղեկավարման կատարելագործման հետագա բարելավման ուղիներն ու մեթոդները»։

Հիրավի, կուսակցության այս նոր փաստաթուղթը, հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման արմատական պրոբլեմների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության ավելի վաղ ընդունած որոշումների հետ մեկտեղ, Հայաստանի կուսակցական կազմակերպությանը զինում է տնտեսական, կուլտուրական շինարարության, կուսակցական աշխատանքի կոնկրետ ու ամբողջական գործնական ծրագրով հանրապետության կյանքի բոլոր բնագավառներում։

Կուսակցական կազմակերպությունների ժողովներում, կոլեկտիվների հավաքներում միանգամայն ճիշտ նշվեց, որ կուսակցության որոշումը պարտավորեցնում է կոմունիստներին, բոլոր աշխատավորներին լինել առավել ակտիվ քաղաքացիական դիրքերում, դրսևորել պետական ու հասարակական գործերում կենսական շահագրգռություն, հանդես բերել նախաձեռնող, ստեղծագործական մոտեցում աշխատանքում։

Կուսակցության խոր գիտական և համակողմանի մշակված սոցիալ-տնտեսական քաղաքականության կենսագործման շնորհիվ հանրապետությունը հասել է սոցիալ-տնտեսական զարգացման բարձր մակարդակի, զգալիորեն ընդլայնվել են նրա տնտեսական, արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալի մասշտաբները։ Հանրապետության ազգային եկամուտը ներկայումս 1,7 անգամ ավելին է, քան 1975 թվականին էր։ 1971—1975 թթ. արտադրված ամբողջ ազգային եկամուտը կազմել է շուրջ 14 միլիարդ ռուբլի, անցած հնգամյակում՝ 20 միլիարդ ռուբլի։ Իսկ 1980—1984 թվականներին ազգային եկամուտը նախորդ հինգ տարիների համեմատությամբ աճեց 31,7 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը ժողովրդական տնտեսության մեջ աճեց 18,4 տոկոսով, որի հաշվին ստացվեց ազգային եկամտի աճի շուրջ 65 տոկոսը։ Անցած տարի ազգային եկամտի մեկ տոկոսի աճը հավասարվեց 54 մլն ռուբլու, 1979 թվականի 43 մլն ռուբլու դիմաց։ Այժմ հանրապետության տարածքում գործում են 700 արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք բանվորների թվով, արտադրական ֆոնդերի ծավալով, արտադրանքի տեսականիով և տեխնիկական հագեցվածության աստիճանով զգալիորեն գերազանցել են 1979 թվականի մակարդակը։ Ընթացիկ հնգամյակի չորս տարիներին արդյունաբերության մեջ ներդրվել է նոր տեխնիկայի ավելի քան 33 հազար միջոցառում, այդ թվում արտադրության տեխնոլոգիական պրոցեսների բարելավման ավելի քան 12 հազար միջոցառում։ Ձեռնարկություններում տեղադրվել են 570 մեքենայացված հոսքային և ավտոմատ գծեր, որոնց ընդհանուր թիվը ներկայումս անցնում է երկու հազարից։

Հատկանշական է, որ ավելի արագ տեմպերով են զարգանում ռադիոտեխնիկական և էլեկտրոնային արդյունաբերությունը, սարքաշինությունն ու ճշգրիտ հաստոցաշինությունը, այն ճյուղերը, որոնք պայմանավորում են տեխ-



նիկական առաջընթացը, դրական ներգործություն են ունենում աշխատանքային ու նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, արտադրության ճյուղային կառուցվածքի վրա։

Ընթացիկ հնգամյակում հետևողականորեն շարունակվեցին աշխատանքները արդյունաբերության ռացիոնալ տեղաբաշխման, առանձին ռեգիոնների տնտեսական պոտենցիալի արդյունավետ օգտագործման ուղղությամբ, որոնք կենսական նշանակություն ունեն հանրապետության տնտեսական և սոցիալական հետագա զարգացման համար։ Վերջին տասը տարում փոքր և միջին քաղաքներում, շրջկենտրոններում և գյուղական վայրերում ստեղծվեցին 125 արդյունաբերական նոր ձեռնարկություններ, մասնաճյուղեր ու արտադրամասեր, որի շնորհիվ արտադրության մեջ լրացուցիչ ընդգրկվեց մոտ 45 հազար մարդ։ Ընթացիկ հնգամյակի եզրափակիչ տարում կգործարկվեն ևս 41 արդյունաբերական մասնաճյուղեր, արտադրության մեջ լրացուցիչ կներգրավվեն 14 հազար մարդ։

Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները 1980—1984 թվականներին կազմել են ավելի քան 6 միլիարդ 774 միլիոն ռուբլի կամ 20 տոկոսով ավելի, քան նախորդ հինգ տարիներին։ Կապիտալ շինարարության լայն ծրագրի իրականացման շնորհիվ սիստեմատիկաբար աճում են հիմնական ֆոնդերը։ Անցած չորս տարիներին գործարկվել են 6 միլիարդ 502 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր, որը 21 տոկոսով ավելի է նախորդ հինգ տարիների համեմատությամբ։

Ընթացիկ հնգամյակի չորս տարում ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը մեծացավ շուրջ 9,9 տոկոսով, օդային տրանսպորտինը՝ 17,1 տոկոսով։ Ընդլայնվել է ընդհանուր օգտագործման ճանապարհների, ինչպես նաև կապի և հեռուստատեսության ցանցը։

Նշելով մեր ձեռքբերումները ժողովրդական տնտեսության այդ կարևոր բնագավառում, միաժամանակ հարկ է նկատել, որ ամեն տարի արդյունաբերության մեջ ձեռնարկությունների ու կազմակերպությունների մոտ 6—7 տոկոսը չի կատարում արտադրանքի թողարկման և իրացման, իսկ ավելի մեծ թվով ձեռնարկություններ ու կազմակերպություններ՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքները։ Փաստ է նաև, որ հանրապետության ձեռնարկությունների մոտ 20 տոկոսը ոչ լրիվ է կատարում մատակարարումների պայմանագրային պարտավորությունները։

Շարունակվում են լուրջ տեղաշարժերը հանրապետության էկոնոմիկայի ագրարային սեկտորի զարգացման ուղղությամբ։ Նոր աստիճանի է բարձրացվել գյուղատնտեսական արտադրությունը, որի զարգացումը սերտորեն ներդաշնակվել է հանրապետության էկոնոմիկայի ընդհանուր առաջընթացի հետ։ Աշխատանքի հստակ կազմակերպման և տեխնիկայի ավելի արդյունավետ օգտագործման շնորհիվ կոլտնտեսությունների և սովխոզների կոլեկտիվները անցած չորս տարիներին գյուղատնտեսության համախառն միջին տարեկան ծավալը նախորդ հնգամյակի համեմատությամբ ավելացրին 12,2 տոկոսով, այդ թվում բուսաբուծության գծով 7,3, անասնապահության գծով 17,9 տոկոսով։ Ընթացիկ հնգամյակում գյուղատնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումները կազմեցին մեկ միլիարդ 388 միլիոն ռուբլի։ Շարք են մտել 34,3 հազար հեկտար ոռոգելի նոր հողատարածություններ, ջրարբիացվել են 43,1 հազար հեկտար արոտավայրեր և մարգագետիններ։

Գյուղում կառավարման նոր մարմինների գործունեությունը առայժմ դանդաղ է ծավալվում։ Շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդները լիապես չեն օգտագործում իրենց տրված իրավունքները, տակավին թույլ է նրանց դերը սոցիալական և դաստիարակչական խնդիրների լուծման գործում։ Դեռևս ոչ բոլոր ճյուղերում է ապահովվում կոմպլեքսային մոտեցումը ծագող պրոբլեմների լուծման, գյուղատնտեսական աշխատանքի բովանդակության հարստացման, դրա հեղինակության բարձրացման հարցերում։

Բարվոք չէ վիճակը նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի և առաջավոր փորձի արմատավորման ասպարեզում։ Լիովին չեն իրականացվում

ժողովրդական տնտեսության ճյուղերի մեծ մասում դրանց հետ առնչվող միջոցառումները։

Վերջին շրջանում կատարվում են շինարարական աշխատանքների պլանները գլխավոր կապալառուի գծով, կենսագործվում են սոցիալ-կուլտուրական նշանակության օբյեկտների գործարկման առաջադրանքները։ Այդուհանդերձ հանրապետությունում, ամբողջությամբ վերցված, չեն կատարվում շինմոնտաժային աշխատանքների պլանները, լրիվ չեն իրացվում պետական կապիտալ ներդրումները։ Կոմունալ տնտեսության մարզում, մարդատար տրանսպորտի, սպասարկման ոլորտի աշխատանքում տակավին քիչ չեն չլուծված հարցերը։ Հարկ է մշտապես հիշել, որ դրանք մեր մարդկանց հրատապ պահանջմունքների բավարարման հարցերն են, որոնց լուծումը ունի սոցիալ-հոգեբանական մեծ նշանակություն։

Առաջնահերթ խնդիր է բնակարանների, սոցիալ-կուլտուրական օբյեկտների կառուցման նախատեսված պլանների անշեղ կատարումը։ Բարելավել առևտրի ու հասարակական սննդի, կենցաղային սպասարկման ձեռնարկությունների աշխատանքը։ Անհրաժեշտ է հստակորեն կարգավորել բոլոր այն հաստատությունների ու կազմակերպությունների աշխատանքը, որոնք առնչություն ունեն մարդկանց գործունեության, կյանքի ու կենցաղի կազմակերպման հետ։ Այս ամենը օրենք պետք է դառնա յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի ու կազմակերպության, սովետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական մարմինների ու կազմակերպությունների համար։

Ուշադրությունը սևեռելով ժողովրդատնտեսական պլանների գաղափարախոսական ապահովման հարցերին, անհրաժեշտ է, ինչպես պահանջում է կուսակցությունը, հոգալ նաև քաղաքական աշխատանքի, դաստիարակչական ջանքերի սոցիալ-տնտեսական ապահովման մասին։

Առաջադրված կանխագծումների կատարման համար ակտիվ կազմակերպական, քաղաքական աշխատանք իրականացնելու հետ միաժամանակ, անհրաժեշտ է մշտապես հոգալ հանրապետության էկոնոմիկայի վաղվա օրվա մասին, զուգորդելով ռեալիզմն ու նորարարությունը։ Համառորեն աշխատել, որ այն բարձրացվի որակական նոր մակարդակի, վճռական տեղաշարժի հասնել աշխատավորության բարեկեցության աճի նյութական բազայի՝ հանրային արտադրության ինտենսիվացման և արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում։

Գաղափարախոսական աշխատանքը մղելով առաջին պլան, սոցիալական լայն հայացք հաստատելով գաղափարախոսության նկատմամբ որպես մտքի, գործողության և դաստիարակության ոլորտ, ՍՄԿԿ Կենտկոմը 1983 թվականի հունիսյան պլենումում մշակեց գաղափարախոսական աշխատանքի երկարաժամկետ ծրագիր, նոր էջ բացեց կուսակցության գաղափարական կյանքում։

Գաղափարախոսական աշխատանքում հաջողության հասնելու համար անհրաժեշտ է, որպեսզի ժողովրդական զանգվածների արմատական շահերը հանդիսանան ոչ թե իբրև հեռավոր ապագայի վերացական իդեալներ, այլ առնչվեն հանապազօրյա խնդիրների հետ և դրսևորվեն այսօրվա հրատապ պրոբլեմներում։ Կուսակցական կազմակերպությունների, պետական, սովետական ու տնտեսական մարմինների գործունեության մեջ ավելի ու ավելի ամուր են հաստատվում ռեալիստական, սթափ և ստեղծագործական մոտեցումը գործի նկատմամբ, անհաշտ վերաբերմունքը թերությունների հանդեպ։ Համընդհանուր հավանություն ստացավ կուսակցության ծավալած պայքարը ամենուրեք կարգուկանոն, կազմակերպվածություն, կարգապահություն հաստատելու, կադրերի պատասխանատվությունը բոլոր մակարդակներում բարձրացնելու համար։

Գաղափարադաստիարակչական աշխատանքի ներգործունության գլխավոր պայմաններից մեկն է դրա կենտրոնացումը անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներում, բրիգադներում, օղակներում։ Աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային ձևերի պայմաններում գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման դրական փորձ են կուտակել Կիրովականի արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցա-



կան կազմակերպությունները։ Ուշագրավ է, հատկապես, հասարակական աշխատանքում արտադրության վետերան կոմունիստներին ներգրավելու նրանց փորձը։ Վետերանների կենսափորձը, գիտելիքները, հեղինակությունը օգնում են համախմբելու կոլեկտիվները, բարձրացնելու նրանց անդամների աշխատանքային ու սոցիալական ակտիվությունը։

Թերևս հարկ է նկատել, որ ոչ բոլոր կուսակցական կազմակերպություններն են լիովին օգտագործում սոցիալիստական մրցության դաստիարակչական հնարավորությունները։ Աշխատանքային մրցակցության ներգործությունը էապես աճում է, երբ բացառվում են ձևամոլությունն ու ցուցամոլությունը, երբ մրցության բոլոր մասնակիցների համար ստեղծվում են հավասար հնարավորություններ, խթանվում է փորձի փոխանակումը, ապահովվում աշխատանքային փոխօգնությունը, հաղթողներին որոշելիս ցուցաբերվում օբյեկտիվ մոտեցում։

Հարկ է նկատել, որ աշխատանքային մրցակցությանը հավասարապես վնաս են հասցնում ինչպես պլանների ու պարտավորությունների նվազեցումը, այնպես և կազմակերպամոլությունը։ Դրանք նույն ձևամոլության ու ցուցամոլության տարատեսակն են։ Ցավոք, նման երևույթները տակավին չեն հաղթահարվել մեր պրակտիկայում։ Կամ պարտավորությունների ի՞նչ լարվածության մասին կարող է խոսք լինել, երբ դրանք այնքան ցածր են, որ հաճախ գերակատարվում են բազում անգամ։ Անտրամաբանական է, երբ մրցությունը միանգամից տարվում է մի քանի նշանաբանով։

Մեր լավագույն կոլեկտիվներում, որոնց անունը քանիցս է հիշատակվում, ապահովվում է տնտեսական, կազմակերպական և դաստիարակչական գործոնների սերտ միասնությունը։ Սոցիալիստական մրցությունը կազմակերպվում է խելացիորեն, դիտվում է որպես արտադրության վերելքի գործուն լծակ, մարդիկ իրոք դրսևորում են աշխատանքային եռանդ, և ձեռք են բերվում կայուն բարձր արտադրական արդյունքներ։ Առաջավոր աշխատավորական կոլեկտիվների, նրանց կուսակցական կազմակերպությունների փորձը ժողովրդատնտեսական պլանների գաղափարախոսական ապահովման ասպարեզում արժանի է խոր ուսումնասիրման ու տարածման։ Այդ փորձը վկայում է, որ գաղափարախոսական ապահովումը նշանակում է ոչ թե լոկ դասախոսություն, քաղինֆորմացիա կամ դիտողական ագիտացիա։ Այն ենթադրում է քաղաքական ու դաստիարակչական ձեռնարկումների մի ամբողջ կոմպլեքս, որը ներազդում է աշխատավորների արտադրական ակտիվության վրա, խթանում այն։ Այո, հանրային արտադրության ինտենսիվացումը, նրա արդյունավետության բարձրացումը մեծապես պայմանավորված են կուսակցական, քաղաքական, կազմակերպչական ու դաստիարակչական ամբողջ աշխատանքի հետևողական կատարելագործմամբ և արդյունավետության բարձրացմամբ։

Հանրապետության կուսակցական կազմակերպություններն իրենց գործունեությունը վերակառուցելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջների ոգով, հետևողական աշխատանք են տանում մեր մարդկանց մեջ մարքս-լենինյան աշխարհայացք ձևավորելու ուղղությամբ։ Այս առումով հարկ է նշել Երևանի, Լենինականի, Կիրովականի, Հրազդանի, Սիսիանի, Ախուրյանի, Էջմիածնի, Ղափանի և մի շարք այլ շրջանների կուսկազմակերպությունների կատարած դրական, ուսանելի աշխատանքը։

Հանրապետության կուսակցական կազմակերպություններում քաղաքական ուսուցումը նպատակամղվում է այն բանին, որ յուրաքանչյուրն ըմբռնի կուսակցության քաղաքականությունը և գործնականորեն կատարի իր հասարակական պարտքը։ Կուսակցական կոմիտեներն սկսել են ավելի լայնորեն արմատավորել պարապմունքների ակտիվ ձևերը, դրանց հաղորդելով պրակտիկ ուղղվածություն։ Իրողություն է սակայն, որ այդ բնագավառում տակավին քիչ չեն թերությունները, նոր ձևերի ու մեթոդների արմատավորման գործում դանդաղկոտությունն ու անհետևողականությունը։

«Զարգացած սոցիալիզմի պահանջների մակարդակին» հոդվածում ընկեր Կ. Ու. Չեռնենկոն նշում է. «Պատրաստվելով համագումարին, կուսակցությու-

նը անհրաժեշտ է համարում բազմակողմանիորեն իմաստավորել անցած ուղին, տալ գործերի ներկա վիճակի ճշգրիտ գիտական գնահատականը, յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական քաղաքացու գիտակցությանը հասցնել այստեղից բխող խնդիրների նորույթը և բազմաբարդությունը, նրանց մեջ առաջացնել այդ խնդիրները ստեղծագործաբար լուծելու պահանջը»։

Արդի պայմաններում զարգացած սոցիալիզմի մասին մարքս-լենինյան կոնցեպցիան, որպես կոմունիստական հասարակական-քաղաքական ֆորմացիայի անհրաժեշտ էտապ, կազմում է ՍՄԿԿ ստրատեգիայի և տակտիկայի հիմքը։ Զարգացած սոցիալիզմը պատմականորեն երկարատև փուլ է։ Այս եզրահանգումը տեսական և քաղաքական առումով ունի սկզբունքային նշանակություն։ Այն,— ինչպես ասում է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— հնարավորություն է ընձեռում նախ և առաջ տալ մեր հասարակության կողմից սոցիալ-տնտեսական հասունության ձեռք բերած աստիճանի, մեր ապրած մոմենտի յուրահատկության գիտականորեն հիմնավորված սահմանումը՝ առանց ուտոպիայի նշույլի, երկրորդ՝ ճշգրտել սոցիալիստական փուլի բովանդակության և տևողության վերաբերյալ, կոմունիզմին անցնելու անհրաժեշտ նախադրյալների վերաբերյալ պատկերացումները, երրորդ՝ դրա հիման վրա ստեղծագործաբար նորացնել ՍՄԿԿ ստրատեգիան և տակտիկան՝ ինչպես մոտ ապագայի, այնպես էլ հեռավոր կոմունիստական հեռանկարի հաշվառմամբ, ձևավորել կոնկրետ խնդիրները և մասսաներին մոբիլիզացնել դրանց իրականացման համար։

Կուսակցության տված գնահատականները և հետևությունները զգուշացնում են առաջ վազելուց, եղածը և ձեռք բերվելիքը իրար հետ շփոթելուց։ Դրա հետ մեկտեղ չի կարելի դանդաղկոտություն հանդես բերել ամենօրյա աշխատանքում, հասունացած պրոբլեմները լուծելիս, թերությունները հաղթահարելիս։

Հանրապետությունում զգալի աշխատանք է տարվում բարոյական դաստիարակության ուղղությամբ և հետևողական պայքար մղվում բացասական երևույթների դեմ։ Սակայն,— ինչպես ասվեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում,— այդ աշխատանքն ու այդ պայքարը պատշաճ մակարդակով և վճռականորեն ծավալվում են ոչ ամենուրեք, ոչ բոլոր կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների կողմից։ Դրա հետևանքով դեռևս հաղթահարված չեն սոցիալիստական սեփականության հափշտակման, կաշառակերության, պրոտեկցիոնիզմի, շորթման փաստերը և այլ մերժելի դրսևորումներ, մի բան, որ բացասաբար է անդրադառնում դաստիարակչական աշխատանքի վրա։

Պայքարը բացասական երևույթների դեմ բարոյական անաղարտության հաստատման կարևոր նախապայման է։ Ուստի անհրաժեշտ է այսուհետ ևս վճռականորեն հանդես գալ սովետական ապրելակերպի հակոտնյաների, հասարակության նկատմամբ սպառողական վերաբերմունքի, քաղքենիության, մակաբուծության դեմ, անհանդուրժողական լինել պաշտոնական դիրքի չարաշահումների, օրինականությունն ու կարգականոնը, սոցիալիստական բաշխողական հարաբերությունները խախտողների դեմ։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ առանձնապես կարևորվում է աշխատավորներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ եղբայրական բարեկամության ոգով դաստիարակելու հարցը։ Այս առնչությամբ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշվում է, որ հանրապետությունում ավելի բովանդակալից է դառնում ինտերնացիոնալ դաստիարակության, Սովետական Միության, սոցիալիստական Հայաստանի պատմական նվաճումների պրոպագանդման աշխատանքը։ Նկատենք նաև, որ այս բնագավառի մեր ձեռքբերումները հարստանում են նորանոր գործերով ու նախաձեռնություններով։ Խորանում և ընդլայնվում են Սովետական Հայաստանի կապերը բոլոր եղբայրական հանրապետությունների հետ, ընդգրկելով քաղաքական, տնտե-



սական, մշակութային կյանքի բոլոր կողմերը։ Աշխատավորության, երիտասարդության ինտերնացիոնալ, ռազմահայրենասիրական դաստիարակության գործին նոր թափ է հաղորդել մեծ հաղթանակի 40-ամյակի տոնակատարության համաժողովրդական նախապատրաստությունը։ Հիրավի մեր կյանքի բոլոր բնագավառներում ինտերնացիոնալիզմն ու ժողովուրդների բարեկամությունը խոր արմատներ են գցել։

Մեր առաջնահերթ խնդիրն է մեծ հոգածություն հանդես բերել աճող սերնդի քաղաքացիական ձևավորման նկատմամբ, միավորելով ընտանիքի, ուսումնական հաստատությունների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը, պատանիների ու աղջիկների մեջ սերմանել գաղափարաբարոյական վսեմ հատկություններ։ Ելնելով կուսակցության Կենտկոմի պահանջներից, նրանք պետք է համառ ու նպատակասլաց իրականացնեն հանրակրթական և մասնագիտական դպրոցի ռեֆորմը, ստեղծեն արտադրական ուսուցումն ապահովող անհրաժեշտ քանակությամբ աշխատատեղեր, մասնագետների պատրաստումը համապատասխանեցնեն ժողովրդական տնտեսության պահանջմունքներին, քաջալերեն երիտասարդության ձգտումը աշխատելու երկրի հարվածային կառույցներում։ Հանրապետության ռեալ պահանջմունքները բավարարելու նպատակով անհրաժեշտ է մշակել կոմպլեքսային միջոցառումներ, հաշվի առնելով ժողովրդագրական և սոցիալ-տնտեսական գործոնները։

Դժվար է գերագնահատել սովետական արվեստի ու գրականության դերը մեր հասարակության հոգևոր կյանքում։ Այդ մասին հանգամանորեն նշեց ընկեր Չեռնենկոն վերջերս կայացած սովետական գրողների միության վարչության հոբելյանական պլենումում։ Սովետահայ մշակույթի նկատմամբ մեծ հոգատարության և նրա նվաճումների բարձր գնահատման նոր վառ վկայությունն է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման շնորհումը Գոհար Գասպարյանին, Սերո Խանզադյանին, հայրենիքի բարձր պարգևներով Վարդգես Պետրոսյանի, Սիլվա Կապուտիկյանի, Գևորգ Էմինի, Մկրտիչ Սարգսյանի պարգևատրումը, ՍՍՀՄ պետական մրցանակի շնորհումը Հրանտ Մաթևոսյանին։ Պատշաճը հատուցելով մեր գրողներին ու արվեստագետներին, միաժամանակ հարկ է նշել, որ գեղարվեստական մտավորականության ներկայացուցիչները տակավին քիչ են ստեղծում արդիականության մասշտաբային իմաստավորմամբ և իրենց գաղափարական ուղղվածությամբ, գեղագիտական բարձր մակարդակով և հնչողությամբ աչքի ընկնող ստեղծագործություններ։

Հաշվի առնելով ժամանակակից գաղափարախոսական պայքարի սրությունն ու բարդությունը, հունիսյան պլենումը պահանջեց բարելավել հակապրոպագանդան ինչպես երկրի ներսում, այնպես էլ արտասահմանյան լսարանի համար։ Խնդիր է դրված հետևողականորեն ուժեղացնել հակապրոպագանդիստական աշխատանքը, կատարելագործել դրա ձևերն ու մեթոդները։ Գաղափարախոսական աշխատանքը պետք է ուղղված լինի իմպերիալիզմի հետադիմական էության խոր բացահայտմանը, նրա հակաժողովրդական և ագրեսիվ քաղաքականության, գաղափարախոսության ու բարոյախոսության մերկացմանը, սովետական մարդկանց մեջ քաղաքական ճիշտ զգացողության, դասակարգային մոտեցման, հակառակորդի գաղափարական դիվերսիաներին հակահարված տալու կարողության դաստիարակմանը։ Խնդիրը ոչ միայն բուրժուական գաղափարախոսական առասպելների և ստերեոտիպերի մերկացումն է։ Դա ամենից առաջ մեր իդեալների, հասարակական կյանքի սոցիալիստական նորմերի հաստատումն է, իսկական ազատության ու դեմոկրատիայի հաստատումը, ռեալ սոցիալիզմի պատմական նվաճումների պրոպագանդումը։

Անհրաժեշտ է ըստ ամենայնի կատարելագործել հայրենադարձների շրջանում տարվող աշխատանքը, հարստացնել ու արդիականացնել դրա բովանդակությունը, ուժեղացնել ներգործությունը։ Սակայն այդ աշխատանքը պետք է աչքի ընկնի հոգատարությամբ, տակտով և նրբանկատությամբ։

Ակնհայտ է սփյուռքահայության մեծամասնության դրական վերաբերմունքը մայր հայրենիքի, Սովետական Միության նկատմամբ։ Սակայն չպետք է մոռանալ, որ հայ գաղութները միատարր չեն։ Կոմունիստներից, մեր դասա-

կարգային եղբայրներից զատ այստեղ գործում են և այլ կուսակցություններ ու հայրենասիրական խմբավորումներ, որոնք հիմնականում կանգնած են հայրենիքի հետ կապերն ամրապնդելու դիրքերում:

Հայտնի է, որ կուսակցությունների մասին դատում են ըստ նրանց համագումարների որոշումների, ըստ նրանց գործերի: Ելնելով այս սկզբունքային հիմնադրույթից՝ կարելի է եզրակացնել, որ դաշնակցությունը եղել և մնում է հակահեղափոխական, հակասովետական կուսակցություն, որն այսօր ծառայում է ամերիկյան իմպերիալիզմին:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների կենսագործման ասպարեզում իրենց նպաստն են բերում մեր գիտնականներն ու դասախոսները: Ընդլայնվում է հանրապետության գիտնականների, հատկապես հասարակագետների անմիջական մասնակցությունը աշխատավորության շրջանում տարվող մասսայական-քաղաքական, դաստիարակչական աշխատանքին: Այդուհանդերձ, ելնելով կուսակցության առաջադրած հրատապ խնդիրներից, հանրապետության գիտական հիմնարկները դեռևս բավարար կերպով չեն ներգործում հանրային արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա, ակտիվորեն չեն մշակում հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման պրոբլեմները: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որպեսզի լրիվ հաղթահարվեն ոչ դասակարգային մոտեցման դրսևորումները պատմական այս կամ այն իրադարձության և անհատի գնահատման ժամանակ, մի հանգամանք, որ նույնպես մատնանշվել է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ:

Անհրաժեշտ է բարձրացնել կուսակցական, սովետական մարմինների, մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների պատասխանատվությունը մարդկանց հետ տարվող քաղաքական աշխատանքի, գաղափարախոսական, կազմակերպչական և տնտեսական գործունեության սերտ միասնության ապահովման համար:

Կուսակցության ուժն ու հեղինակությունը, ասում է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, յուրաքանչյուր կոմունիստի հեղինակությունն է, նրա անձնական օրինակի ուժը: Կոմունիստի գործերով և վարքով մարդիկ նշանակալից չափով դատում են կուսակցության, նրա քաղաքականության և գաղափարախոսության մասին: ...Կուսակցության մեջ են մտնում ոչ թե պաշտոնների ու արտոնությունների համար, այլ հանուն այն բանի, որպեսզի ծառայեն սոցիալիզմի բարձր իդեալներին, աշխատավոր ժողովրդի շահերին:

Մեր զարգացման ծրագրերի իրականացման հաջողությունը մեծապես պայմանավորված է սովետական հասարակության քաղաքական սիստեմի բոլոր օղակների արդյունավետ գործունեությամբ, քաղաքական սիստեմ, որի անբաժանելի մասն են կազմում ժողովրդական դեպուտատների սովետները՝ ՍՍՀՄ-ի քաղաքական հիմքը: Առաջիկա ընտրություններին 340 մարդ առաջադրվել են ՀՍՍՀ Գերագույն սովետի, 27.441 մարդ՝ տեղական սովետների դեպուտատության թեկնածուներ, որոնց կեսից ավելին բանվորներ և կոլտնտեսականներ են: Այստեղ լայնորեն ներկայացված են կանայք, անկուսակցականները, կոմերիտականները և երիտասարդները: Նրանք մշտապես աշխատում են բուն արտադրության ոլորտում, ամենօրյա շփման մեջ են մարդկանց հետ, լավատեղյակ են աշխատավորների հոգսերին ու պահանջներին: Պետական իշխանության մարմինների այսպիսի կազմը իսկական ժողովրդաիշխանության կոնկրետ արտահայտություն է:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը Հայաստանի կուսակցական կազմակերպության գաղափարախոսական գործունեության մասին ոգեշնչել է հանրապետության կոմունիստներին, բոլոր աշխատավորներին, որոնք, համախմբված հարազատ կուսակցության Կենտրոնական կոմիտեի շուրջը, ամեն ինչ կանեն կուսակցության պահանջների անվերապահ կատարման համար, անշեղ բարձրացնելու գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի արդյունավետությունը, նորանոր հաջողություններով կդիմավորեն ՍՄԿԿ XXVII համագումարը:

---

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԵՎ ԴՐԱՆՑ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ

**Բ. ՊՈՆՈՄԱՐՅՈՎ**
ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար

ԱՐԴԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ ՏԵՂԻ ԵՆ ՈՒՆԵՆՈՒՄ արմատական հեղափոխական վերափոխումներ: Դրանք սոցիալ-տնտեսական զարգացման խոր պրոցեսների օրինաչափ արդյունք են:

Սակայն հակակոմունիզմի քարոզիչները այդ բոլոր փոփոխությունների ետևում տեսնում են «Մոսկվայի ձեռքը», «համաշխարհային կոմունիզմի» մեքենայությունները: Իմպերիալիզմի ջատագովները, և ամենից առաջ Վաշինգտոնի քաղաքագետները, համառորեն, հաստատակամորեն ջանում են ամերիկացիներին, մյուս կապիտալիստական երկրների հասարակական կարծիքին պարտադրել այն միտքը, թե վերջին կես դարում երկրագնդի վրա կատարված սոցիալական բոլոր փոփոխությունները տեղի են ունեցել հենց այս պատճառով: Այդ կերպ են բացատրում և՛ ազգային ազատագրության գոտում, հատկապես Լատինական Ամերիկայում մղվող պայքարը, և՛ կապիտալի աշխարհում տեղի ունեցող հակամոնոպոլիստական պայքարը, և՛ ամբողջությամբ վերցրած մարդկության կյանքում կատարվող սոցիալ-քաղաքական տեղաշարժերը: Սոցիալական ու ազգային ազատագրության ուժերի դեմ մղած պայքարում կրած բոլոր անհաջողությունների պատասխանատվությունը բարդվում է Սովետական Միության, մյուս սոցիալիստական երկրների վրա: Արդեն շատ տարիներ այդ նույն ոգով է արտահայտվում նաև ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Ռեյգանը:

Գիտությամբ բացահայտված և պրակտիկայով հաստատված հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքները իմպերիալիզմի ջատագովների սրտովը չեն, նրանք չգիտեն դրանք կամ էլ չեն ընդունում: Նրանց համար սոցիալիզմը և կոմունիզմը պատմական զարգացման արդյունքն ու դրա օրինաչափ հետևանքը չեն, այլ մի ինչ-որ «անոմալիա մարդկային պատմության մեջ», «մարդկության պատմության ցավալի ու պատահական մի գլուխ»: Առաջադիմության ու հետադիմության, սոցիալիզմի ու կապիտալիզմի ուժերի պատմական հակամարտությունը նրանք փորձում են հանգեցնել «բարու» և «չարի» վերացական ուժերի պայքարի, ընդ որում «բարու» կրողն իբր թե ազատ ձեռնարկչական կարգն է, այսինքն՝ ամենից առաջ ամերիկյան իմպերիալիզմը:

Բուն պատճառն այն բանի, որ ամերիկյան ռեակցիան շանթ ու կայծակ է արձակում Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների դեմ, կոմունիստական շարժման դեմ, թաքնված է նրանում, որ դրանց բուն գոյությունը կաշկանդում է իմպերիալիզմի էքսպանսիոնիստական գործունեությունը, խոչընդոտում աշխարհով մեկ ամերիկյան կապիտալի «կենսական շահերի» ու տիրապետության տարածմանը, կապիտալ, որը երկերեսանիորեն իրեն «դեմոկրատական կապիտալիզմ» է հորջորջում:

Միջոցների մեջ խտրություն չդնելով, հետադիմության պատվարները տարփողում են, թե Սովետական Միությունը, որը հետևողականորեն պաշտ-

պանում է խաղաղության ու ժողովուրդների անվտանգության գործը, «սպառնալիք է բոլոր մայրցամաքների ազատության ու խաղաղության համար», որ Եվրոպային սպառնում են «սովետական տիրապետությունը» և ՍՍՀՄ-ի «քայքայիչ գործողությունները», և առհասարակ երկրագնդի վրա չկա մի անկյուն, որի դեմ ինչ-որ բան չնյութեն նենգ սովետներն ու կոմունիստները՝ «չարի ու մեղքի» այդ կրողները: Գիտության տեսակետից խորապես տգետ և բարոյական տեսակետից զրպարտչական պնդումներ են այդ ամենը:

Իսկ ինչպիսիք են Միացյալ Նահանգների՝ «բարու» այդ ուժերի առաջիկա տարիների մտադրությունները, եթե դատելու լինենք, օրինակ, ըստ հանրապետական կուսակցության փաստաթղթերի, որոնցում մերկացած ձևով արտահայտված է իմպերիալիզմի միջազգային քաղաքականության դասակարգային էությունը:

**Ռազմաքաղաքական** բնագավառում դա կողմնորոշումն է դեպի սպառազինությունների մրցավազքը, ռազմական գերազանցության հասնելը, դա միլիտարիզմի փառաբանությունն է, երբ գովերգվում են «ամերիկյան հզորությունն ու վճռականությունը», «ուժի դիրքի» ստրատեգիան, երբ սպառազինությունների նոր տեսակների թվարկումն ու ստրատեգիական և տակտիկական պոտենցիալի ավելացման ծրագրերի շարադրումը մեջընդմիջվում են «ռազմական», «տեխնիկական», «որակական» գերազանցությունն ապահովելու կոչերով: Այդ՝ հակահրթիռային պաշտպանության ու տիեզերքի ռազմականացման «համապարփակ» համակարգի ստեղծման ծրագրերն են, Սովետական Միությունը «զինաթափ անող» առաջին հարվածը հասցնելու ունակության ձեռքբերման ձգտումը: Միլիտարիզմի և ագրեսիայի նման ծրագիրը վերստին հաստատում է, որ ոչ թե Սովետական Միությունը, ոչ թե սոցիալիզմի ուժերն են սպառնալիք բերում խաղաղությանը, ստեղծում երրորդ համաշխարհային պատերազմի ծագման վտանգ, այլ իմպերիալիզմը, ամերիկյան կառավարող շրջանները և նրանց ետևում կանգնած ռազմարդյունաբերական մոնոպոլիստական կապիտալը:

**Տնտեսական** բնագավառում դա ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների հետ տնտեսական և գիտատեխնիկական կապերի խարխլումն է, դա «երրորդ աշխարհի» երկրներում կապիտալիստական կարգերի արմատավորման, «ստրատեգիական առումով կարևոր օգտակար հանածոների» զավթման ծրագիրն է, օրինակ՝ Աֆրիկայում՝ դրանք «պահպանելու» անհրաժեշտության պատրվակի տակ:

**Գաղափարախոսական** բնագավառում դա սոցիալիզմի դեմ «խաչակրաց արշավանքն» է, ՍՍՀՄ-ի և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների դեմ «հոգեբանական պատերազմը»: Դա այն պլատֆորմն է, որը նախատեսում է «ուրիշներին հաղորդել «դեմոկրատական կապիտալիզմի» բարերար գաղափարները», այսինքն իմպերիալիզմի գաղափարախոսական էքսպանսիան և ամեն մի առաջադիմական շարժման դեմ պայքարը: Թերևս ԱՄՆ-ի պատմության մեջ առաջին անգամ գաղափարախոսական էքսպանսիան բարձրացվել է պետական քաղաքականության կարևորագույն ուղղության աստիճանի: Այդ նպատակով մշակվել են «Դեմոկրատիայի և հրապարակային դիվանագիտության ծրագիրը», «Ճշմարտություն» պրոպագանդիստական նախագիծը և խոշոր մասշտաբի այլ միջոցառումներ, որոնք խնդիր են դնում իրականացնել ամբողջ աշխարհի մարդկանց մտքերի մշակումը՝ հօգուտ մոնոպոլիստական բուրժուազիայի, հօգուտ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս երկրների կառավարող խավերի: Ինչպես հայտարարում է նեոպահպանողականության գաղափարախոսներից մեկը՝ Ն. Պոդգորեցը, գաղափարների կռիվը «կարող է պատահել, նույնիսկ ավելի վճռորոշ է, քան ամեն մի ռազմական առճակատում: Մեզ ծայրահեղորեն անհրաժեշտ է վերականգնել (՞) մեր հզորությունն այդ ոլորտում, ինչպես որ սպառազինությունների ոլորտում, այն բանի համար, որպեսզի գաղափարախոսական հարձակում մղենք»:

Այդ քայքայիչ գաղափարախոսական գործողությունների մեջ գլխավորը ռեալ սոցիալիզմի, մարքսիզմ-լենինիզմի դեմ հարձակումն է՝ այն վարկաբե-



կելու, թուլացնելու, ինչպես Ռ. Ռեյգանն է հայտարարում, «պատմության աղբանոցը» նետելու նպատակով:

## I

Ո՞րն է այն բանի պատճառը, որ ռեալ սոցիալիզմի, ամեն մի ազատագրական շարժման, մարքսիզմ-լենինիզմի դեմ արշավը հայտնվել է ԱՄՆ-ի վարչակազմի միջազգային գրոհների կենտրոնում:

ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը իրենց արտաքին ու ներքին քաղաքականության մեջ առաջնորդվում են մարքս-լենինյան ուսմունքով, բայց նրանք գաղափարախոսական տարաձայնությունները երբեք չեն փոխադրում միջպետական հարաբերությունների ոլորտը, գտնելով, որ սոցիալիզմի սիստեմի ու կապիտալիզմի սիստեմի միջև պատմական վեճը պետք է լուծվի խաղաղ ճանապարհով, առանց զինված պայքարի: ՍՍՀՄ-ի, ինչպես և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների արտաքին քաղաքականությունը կառուցվում է սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքով: Սովետական արտաքին քաղաքական գործունեության ողջ բազմամյա պրակտիկան դրա համոզիչ ապացույցն է:

**Մարքսիզմ-լենինիզմի նկատմամբ նրա թշնամիներն ատելություն են տածում ամենից առաջ այն պատճառով, որ, լինելով համընդհանուր, համապարփակ, այդ ուսմունքը գիտականորեն հիմնավորեց կապիտալիստական հասարակարգի անցողիկ բնույթը, կապիտալիզմի մայրամուտը, կոմունիզմի ապագա հաղթանակի անխուսափելիությունը:**

Եվ զուր են ամերիկյան հետադիմականները կոմունիստական ուսմունքը «անոմալիա» հայտարարում, զուր են ՆԱՏՕ-ի գործիչները հանգստացնում իրենց այն բանով, որ «մարքսիզմ-լենինիզմը հրապուրիչ չեղավ աշխարհի համար»: Մարքս-լենինյան ուսմունքը տարեցտարի իր կողմն է գրավում միլիոնավոր նորանոր հետևորդների, որոնք արդիականության կոնկրետ փաստերի վրա համոզվում են նրա ճշմարտացիության մեջ, քանի որ միայն այդ ուսմունքը կարող էր թափանցել պատմական պրոցեսի էության մեջ, բացահայտել մարդկության պատմության իսկական իմաստը և պարզել նրա հեռանկարները:

Կոմունիզմի հակառակորդներին հատկանշական են մարդկային հասարակության պատմության, նրա անցյալի, ներկայի և առավել ևս ապագայի հակագիտական ու ոչ օբյեկտիվ ըմբռնումը և կանխակալ, շահագործող դասակարգերի շահերին ծառայող մեկնաբանումը: Ընդգրկումն այստեղ խիստ լայն է՝ պատմության ուղղակի նենգափոխումից մինչև նախորդ դարաշրջանների հետ զուգադրությունների ձեռնածություն՝ գոյություն ունեցող սոցիալիզմը վարաբանելու և պատմական պրոգրեսը պարզապես անտեսելու նպատակով:

Նեոպահպանողականության և ռեակցիայի գաղափարախոսների հերյուրանքներին հակադրվում են պատմության մատերիալիստական մեկնաբանումը, հասարակության շարժման հետազոտման խիստ գիտական, դիալեկտիկամատերիալիստական մեթոդը, հասարակական պրոցեսների ստույգ ճանաչման մեթոդաբանությունը:

Դեռ մինչև Կ. Մարքսն էլ փորձեր են արվել թափանցելու գաղտնիքներն այն բանի, թե ինչ է իրենից ներկայացնում պատմական զարգացումը: Բայց միայն պատմության մատերիալիստական ըմբռնման հայտնագործումը, հասարակական երևույթների ոլորտի վրա մատերիալիզմի տարածումը, նշում է Վ. Ի. Լենինը, վերացրին նախկին պատմական տեսությունների երկու գլխավոր թերությունը. «1-ին, դրանք լավագույն դեպքում քննարկում էին մարդկանց պատմական գործունեության լոկ գաղափարական մոտիվները, չհետազոտելով այն, թե ինչից են առաջանում այդ մոտիվները, չըմբռնելով հասարակական հարաբերությունների սիստեմի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունը, չտեսնելով այդ հարաբերությունների արմատները նյութական արտադրության զարգացման աստիճանի մեջ. 2-րդ, նախկին տեսությունները չէին ընդգրկում հենց բնակչության մասսաների գործողությունները, մինչդեռ

պատմական մատերիալիզմն առաջին անգամ հնարավորություն տվեց բնապատմական ճշտությամբ հետազոտել մասսաների կյանքի հասարակական պայմանները և այդ պայմանների փոփոխությունները» (ԵԼԺ, հ. 26, էջ 65—66)։

Ինչպես հայտնի է, Մարքսը առաջինն առաջադրեց այն դրույթը, ըստ որի նյութական կյանքի արտադրության եղանակը պայմանավորում է առհասարակ հասարակության կյանքի սոցիալական, քաղաքական ու հոգևոր ընթացքը։ Դրանով իսկ հնարավորություն ստեղծվեց բացատրելու հասարակական հարաբերությունների զարգացման բնույթը։

Սակայն, ըստ Մարքսի, հասարակական պրոցեսի սոսկ ճանաչումը քիչ է դեռ։ Այդ իմացությունը հարկավոր է՝ նրա՛նց օգտին հասարակության զարգացման վրա ակտիվորեն ներազդելու համար, ովքեր ստեղծում են նրա բոլոր հարստությունները, ովքեր իրենց աշխատանքով ապահովում են մարդկային քաղաքակրթության բուն գոյությունն ու առաջընթացի պայմանները։ Այդ սկզբունքի վրա հիմնված պատմության փիլիսոփայությունն ու մարքսիզմի մեթոդաբանությունը պայմանավորում են կոմունիստների հեղափոխական պրակտիկան, հասարակական կյանքի իրական պրոցեսների հետ դրա անխզելի փոխադարձ կապը։

Հասարակական նյութական հարաբերությունների վերլուծությունը հնարավորություն տվեց հավաստելու տարբեր երկրներում տեղի ունեցող պրոցեսների կրկնելիությունը և դրանք ընդհանրացնելու հասարակական ֆորմացիա հիմնարար հասկացության մեջ (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 1, էջ 159)։ Դա հնարավորություն տվեց այն հետևությունն անելու, թե պատմական պրոցեսի և հասարակական առաջընթացի հիմքում ընկած է հասարակական-տնտեսական ֆորմացիաների փոփոխությունը։ Յուրաքանչյուր ֆորմացիա իրենից ներկայացնում է հասարակական զարգացման մի որոշակի աստիճան, ամբողջական համակարգ, համաշխարհային պատմության մի փուլ, կոնկրետ հասարակության ու նրա սոցիալ-տնտեսական կառուցվածքի պատմական տիպ։ Մարքսիզմ-լենինիզմը ապացուցեց,— կապիտալիզմի ջատագովները կատաղի հարձակումներ են գործում հատկապես այդ հետևության դեմ,— որ հակամարտ, շահագործողական ոչ մի ֆորմացիա չի կարող անվերջ զարգանալ։ Վրա է հասնում ժամանակը, երբ նրան հատուկ արտադրական հարաբերությունները հակասության մեջ են մտնում,— իսկ կապիտալիզմի օրոք այդ պրոցեսը շարունակվում է նաև այսօր— արտադրողական ուժերի հետ,— գիտության ու տեխնիկայի պրոգրեսի հետ։ Այդ ժամանակ էլ նախադրյալներ են առաջանում մեկ ֆորմացիան պատմական զարգացման ավելի բարձր տիպի մի այլ ֆորմացիայով փոխարինելու համար։ «Ոչ մի հասարակական ֆորմացիա,— նշում է Մարքսը,— ավելի վաղ չի կործանվում, քան կծավալվեն այն բոլոր արտադրողական ուժերը, որոնց համար նա բավական ասպարեզ է բացում, և նոր՝ ավելի բարձր արտադրական հարաբերությունները երբեք ավելի վաղ հանդես չեն գալիս, քան կհասունանան նրանց գոյության նյութական պայմանները հենց հին հասարակության ընդերքում» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 13, стр. 7)։ Ընդ որում կարևոր դեր են խաղում այն փոփոխությունները, որոնք տեղի են ունենում ոչ միայն բազիսի մակարդակով, այլև վերնաշենքում, հասարակական գիտակցության տարբեր ձևերում, անցյալի գիրկն անցնող դասակարգերին փոխարինելու եկող ուժերի սոցիալական կազմակերպման մեջ, ինչպես նաև արտաքին քաղաքական բարենպաստ պայմանները։

Այսպիսով, մարքսիզմը ցույց տվեց մինչսոցիալիստական հասարակական ֆորմացիաների առաջացման, զարգացման ու անկման պատմական պրոցեսի հիրավի գիտական ճանաչման ուղին՝ քննության ենթարկելով բոլոր հակասական միտումների ու հակամարտ ուժերի ամբողջությունը։ Սոցիալական հակասությունների և հեղափոխական վերափոխումների ծավալման, սոցիալիզմին անցնելու պատմական անհրաժեշտության օրինաչափությունների իմացության ղեկավար թելը, ինչպես նշում էր Լենինը, դասակարգային պայ-



քարի մարքսյան տեսությունն է (տե՛ս ԵԼԺ, հ. 26, էջ 67)։ Մարքսիզմի հիմնադիրները առանձնահատուկ ուշադրություն էին դարձնում սուբյեկտիվ գործոնի նշանակությանը, մասսաների հեղափոխական գիտակցության հասունացմանը և այդ առնչությամբ հեղափոխական կուսակցության ավանգարդային, կազմակերպող դերին։

Եթե հակամարտ ֆորմացիաները պատկանում են մարդկության նախապատմությանը, ապա մարդկության իսկական պատմությունը, նրա ծաղկումն սկսվում են միայն կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլի՝ սոցիալիզմի գոյավորմամբ, որտեղ բացակայում են անտագոնիստական հակասությունները։ Գիտական սոցիալիզմի ծագմամբ պարզ դարձավ, որ միայն մատերիալիստական տեսության դիրքերից կարելի է ըմբռնել պատմական զարգացման ընթացքը, հասկանալ հասարակության մեջ տեղի ունեցող փոփոխությունների պատճառներն ու էությունը, հեղափոխական տեղաշարժերի, սոցիալական հեղափոխությունների իմաստը։

## II

Խեղաթյուրելով պատմական պրոցեսի էությունը, հակակոմունիստները ձգտում են աղավաղել սոցիալական հեղափոխությունների վերաբերյալ պատկերացումը, ներկայացնել դրանք որպես հասարակության պատմության մեջ պատահական, չպայմանավորված երևույթ։ Նման հակապատմական մոտեցում է դրսևորվում հատկապես ներկա հարյուրամյակի սոցիալական հեղափոխությունների նկատմամբ, երբ համաշխարհային իրադարձությունների վրա հզոր ներգործություն են ունենում բանվորական ու կոմունիստական շարժումը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյությունը։

Հեղափոխության՝ բուիության հասնող գռեհիկ ըմբռնումը հանգեցնում է նրան, որ հակակոմունիստները ամլացնում են նրա սոցիալական բովանդակությունը և այն պատկերում սոսկ իբրև «կոմունիստական դավադրության» արդյունք, պատմական էպիզոդ ժողովուրդների կյանքում կամ էլ սովորական «անկարգություն», ինչպես հայտարարել է, օրինակ, Է. Միզը, որը մինչև վերջերս ԱՄՆ-ի պրեզիդենտի խորհրդականն էր։ Ուժգնորեն պրոպագանդվում է Սովետական Միությունից այլ երկրներ «հեղափոխության արտահանման» կեղծ կոնցեպցիան։ Ժամանակակից ազգային ու սոցիալական հեղափոխությունների մեծ մասը հրամցվում է «կոմունիստական հեղաշրջումների» տեղ, որոնց ետևում իբր կանգնած են կամ Մոսկվան, կամ էլ մյուս սոցիալիստական երկրները։

Վերջերս ԱՄՆ-ում հրատարակված Խաղաղության ստրատեգիա՝ ուժի միջոցով գրքույկում, որը ներկայացնում է հետադիմական շրջանների հայացքները, հաստատվում է, որ իբր հեղափոխական շարժման մեջ «մեղավոր է» գլխավորապես Կրեմլը։ Այդ կոնցեպցիան էլ, որը պնդում է, թե աշխարհի բոլոր հեղափոխական փոփոխությունների համար պատասխանատվությունը կրում է Սովետական Միությունը և որ հարկավոր է կասեցնել ազատագրական շարժման օբյեկտիվ ընթացքը, ԱՄՆ-ի վարչակազմը դրել է իր արտաքին քաղաքականության հիմքում։ Այստեղից էլ՝ հույսը ուժի, վիթխարի սպառազինությունների, այդ թվում և միջուկային զենքի վրա դնելը։

Բայց հարկ է հիշել պատմության դասերը։ Հազարամյակների ընթացքում փարավոններն ու կայսրերը, կայզերներն ու ցարերը, պրեզիդենտներն ու մյուս տիրակալները փորձել են կանխել իրենց տիրապետության հիմքերը խարխլող սոցիալական փոփոխությունները։ Այդ բոլոր փորձերը միշտ էլ ձախողմամբ են ավարտվել, որովհետև այն, ինչ հասունանում է հասարակության ընդերքում, ինչ պայմանավորված է պատմության բուն օբյեկտիվ ընթացքով, անխուսափելի է։ Հեղափոխությունները, նշում է Լենինը, «աճում են այն ժամանակ, երբ տասնյակ միլիոնավոր մարդիկ գալիս են այն եզրակացության, որ այսպես ապրել այլևս հնարավոր չէ» (ԵԼԺ, հ. 36, էջ 559)։ Եվ այսօր էլ հասարակության զարգացման օբյեկտիվ պրոցեսները թզուկներ են դարձնում նրանց, ովքեր կոմունիզմը բանադրանքի են ենթարկում, ովքեր սոցիալիզմի,

հեղափոխությունների, ազատագրական շարժումների մեջ տեսնում են «Մոսկվայի ձեռքը» և փորձում են հակադրել դրանց իմպերիալիստական թելադրանքի ու «խաչակրաց արշավանքների» բռնությունները։

Բնականաբար, մեր գաղափարախոսական հակառակորդները լռությամբ են մատնում այն, որ, ըստ կոմունիստական ուսմունքի, ոչ մի հեղափոխություն չի կարող իրականացվել, երբ չեն հասունացել նրա հասարակական ու տնտեսական նախադրյալները։ «Հեղափոխությունները,— ասում էր Լենինը,— պատվերով չեն կատարվում, չեն համարեցվում այս կամ այն պահին, այլ հասունանում են պատմական զարգացման պրոցեսում և բռնկվում մի այնպիսի պահի, որը պայմանավորված է ներքին ու արտաքին մի շարք պատճառների զուգակցությամբ» (Նույն տեղը, էջ 648)։ Եվ հենց այդ պատճառով էլ պարզապես անհնար ու անիմաստ է որևէ «հեղափոխության արտահանումը», ինչպես որ անհնար է «վերուստ», դրսից ներմուծելու միջոցով սոցիալիզմ արմատավորելը։

«Հեղափոխության արտահանման» վերաբերյալ հերյուրանքի անհեթեթությունը ստիպված են խոստովանել նաև ԱՄՆ-ի որոշ նշանավոր բուրժուական գործիչներ։ Այսպես, պետական քարտուղարի նախկին տեղակալ Ջ. Բոլը այս առնչությամբ նկատում է. «Սովետական Միությունը այժմյան կառավարության համար սևեռուն գաղափար է դարձել։ Այն չի ընդունում, որ գրեթե բոլոր ճգնաժամերը, որոնց բախվում ենք այսօր, ճգնաժամեր են, որոնց համար Սովետական Միությունը ոչ մի պատասխանատվություն չի կրում»։

«Հեղափոխության արտահանման» հակակոմունիստական դրույթը իմպերիալիստներին հարկավոր է հակահեղափոխության արտահանման իրենց քաղաքականությունը հիմնավորելու համար։ Օրինակների համար պետք չէ հեռու գնալ. ագատասեր Գրենադայի դեմ ագրեսիան, չհայտարարված պատերազմն ընդդեմ Նիկարագուայի, աֆրիկյան երկրների հակահեղափոխական ուժերին խրախուսելը, Աֆղանստանում հակահեղափոխությանն աջակցելը, հակասոցիալիստական դիվերսիոն գործողություններն ընդդեմ Կենտրոնական և Արևելյան Եվրոպայի ժողովուրդների և այլն

Հակահեղափոխության արտահանումը իմպերիալիստական էքսպանսիայի առանձնապես վտանգավոր ձև է դարձել միջազգային ասպարեզում, այն սպառնալիք է ստեղծում ժողովուրդների ազատությանն ու անկախությանը, հետապնդում է հակաժողովրդական շահագործողական վարչակարգերի պահպանման, կապիտալիստական կարգերի վերածնման նպատակ, հանգեցնում է միջազգային լարվածության ուժեղացման։ Իմպերիալիզմը հակահեղափոխության արտահանումն իրագործում է ինչպես զինված ճանապարհով, այնպես էլ քայքայիչ գործողությունների միջոցով, դրանցում ներգրավելով հատուկ ծառայությունները և օգտագործելով այն երկրների ներքին գործերին միջամտելու բազմազան ձևերը, ուր տեղի են ունեցել հեղափոխական փոփոխություններ։ Հակահեղափոխության արտահանումն ուղղված է սոցիալական ու ազգային ազատագրության պայքարում ժողովուրդների ձեռք բերած նվաճումների վերացմանը, հեղափոխական ժողովուրդներին այն բերում է տեռոր, ազատության մարտիկների հետապնդում, մարդու իրավունքների ոտնահարում։ Սակայն դրսից հակահեղափոխական կարգերի ամեն մի պարտադրում պատմական հեռանկարով ձախողման դատապարտված գործողություններ են, քանի որ դրանք արմատներ չունեն հեղափոխական ուղու վրա կանգնած երկրի ազգային ու սոցիալական հողի մեջ։

Արդի հակակոմունիզմը իր հակահեղափոխական շնչարգելության մեջ կկամենար մոռանալ այն մասին, որ ինքը՝ բուրժուազիան էլ, տիրապետող դասակարգ դարձավ հեղափոխությունների հետևանքով, թեպետև դրանք իրենց բնույթով դասակարգայնորեն սահմանափակ էին։ Հարկ է հիշեցնել, որ ԱՄՆ-ն էլ քաղաքական անկախություն ձեռք բերեց ազգային-ազատագրական պատերազմի շնորհիվ։ Բուրժուական հեղափոխությունները հաղթանակել են այն պատճառով, որ ֆեոդալական հարաբերություններն այլևս չէին համապատասխանում ծնունդ առած արտադրության կապիտալիստական եղանակի պա-



հանջմունքներին, որն առաջադիմական էր այդ ժամանակաշրջանում։ Դա մի ավելորդ անգամ հաստատում է, որ հեղափոխությունների միջոցով իրականացվում է մարդկության առաջընթացը հասարակական պրոգրեսի ուղիով։

Բնական է, որ տարբեր պատմական դարաշրջանների հեղափոխությունները մեծ տարբերություններ ունեն, դրանք ունեն իրենց առանձնահատկությունները։ Պատմության մեջ երբևէ տեղի ունեցած բոլոր հեղափոխություններից հասարակական զարգացման ողջ ընթացքի վրա առավել մեծ ազդեցություն գործում է սոցիալիստական հեղափոխությունը։

Այն մարդկային կյանքի ամենախոր հիմքերի վերափոխման պրոցես է։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը համաշխարհային պատմության նոր դարաշրջան բացեց, իր հետ առաջ բերեց կապիտալիստական սիստեմի մի ամբողջ շարք հեղափոխական ցնցումներ, կապիտալիզմի տիրապետության ոլորտի անշեղ նեղացում։

Պատահական չէ, որ հետադիմության ուժերը հեղափոխական Հոկտեմբերը ամենակատաղի հարձակումների ու չարամիտ նենգափոխումների օբյեկտ դարձրին, որոնք վկայում են ոչ միայն դրանց հեղինակների հակակոմունիստական մտածողության, այլև Հոկտեմբերյան հեղափոխության էությունն ու բնույթն ըմբռնելու կատարյալ անկարողության մասին։ Բացի այդ ակնհայտ են և գռեհիկ անգիտությունը, այն առարկայի չիմացությունը, որի մասին նրանք հանդգնում են արտահայտվել։ Նման անգիտության բնորոշ նմուշ է վերևում արդեն մեջբերված Խաղաղության ստրատեգիա՝ ուժի միջոցով գրքույկը։ Դրանում հավաստվում է, ոչ ավել, ոչ պակաս, թե «1917 և 1921 թվականների միջև Սովետական Միությունն ընդլայնեց իր սահմանները՝ կլանելով Ուկրաինան, Բելոռուսիան, Ղազախստանը, Ադրբեջանը, Հայաստանը և Վրաստանը»։ Այս հորինվածքի հեղինակները գլխի չեն ընկել, որ ՍՍՀՄ-ը կազմավորվել է միայն 1922 թվականին, իսկ Ուկրաինան, Բելոռուսիան, Ադրբեջանը, Հայաստանը, Վրաստանը, Թուրքեստանը (որն իր մեջ ընդգրկում էր ոչ միայն Ղազախստանը), Ռուսաստանի պետության կազմի մեջ են մտել Հոկտեմբերյան հեղափոխությունից շատ ավելի վաղ։

Հոկտեմբերյան հեղափոխությունը բացեց սոցիալական ու ազգային ճնշումից, շահագործման բոլոր ձևերից Ռուսաստանի բոլոր ժողովուրդների ազատագրման դարաշրջանը, բազմազգ սոցիալիստական ընկերակցության՝ Սովետական Միության բարգավաճման դարաշրջանը։

Մարդկության պատմության մեջ Հոկտեմբերի նշանակությունը որոշվում է և նրանով, որ այն հողագնդի վրա վերջ տվեց այնպիսի կարգերին, երբ մեկ իշխող դասակարգը փոխարինվում էր մյուսով, իսկ շահագործումն ու ճնշումը մնում էին։ Հասարակության զարգացումը կտրուկ շուռ եկավ սոցիալիզմի կողմը, որն ընդմիշտ վերացնում է շահագործումն ու ճնշումը, մեծամասնության նկատմամբ փոքրամասնության իշխանությունը։

Արդիականության պատմական պրոցեսում մեծ է XX դարի 40-ական և հաջորդ թվականներին (իսկ ավելի վաղ՝ Մոնղոլիայում) տեղի ունեցած հեղափոխությունների դերը, երբ կապիտալիզմի համաշխարհային սիստեմից անջատվեցին Ալբանիան, Արևելյան Գերմանիան, Բուլղարիան, Լաոսը, Լեհաստանը, Կուբան, Հարավսլավիան, Հյուսիսային Կորեան, Հունգարիան, Չեխոսլովակիան, Չինաստանը, Ռումինիան, Վիետնամը։

Թեև հեղափոխության զարգացման գործում այդ երկրներից յուրաքանչյուրն ուներ իր առանձնահատկությունները, ամբողջությամբ վերցրած հեղափոխական փոփոխություններն ունեին ընդհանուր օրինաչափություններ։ Դրանք կանխորոշված էին հասարակական զարգացման օբյեկտիվ տրամաբանությամբ։ Արտադրական հարաբերությունների հնացած եղանակը փոխարինվեց նորով։ Կատարվեց արդյունաբերության, բանկերի, տրանսպորտի ազգայնացում։ Անցյալի գիրկն անցնող բուրժուազիայի դասակարգը պարտություն կրեց դասակարգային մարտերում և ստիպված եղավ իշխանությունը զիջել բանվոր դասակարգին ու նրա դաշնակիցներին։ Հաստատվեց նոր քաղաքական իշխանություն՝ ժողովրդի իշխանություն։

Հակակոմունիստների տեսակետից այդ ամենը Սովետական Միության «էքսպանսիայի» դրսևորում է։ Բայց նման պնդումները հարկավոր են միայն նրա համար, որպեսզի հիմնավորվի սոցիալիստական երկրների դեմ ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի քայքայիչ գործունեությունը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, ֆաշիստական Գերմանիայի ու միլիտարիստական Ճապոնիայի ջախջախման շնորհիվ ազգային-ազատագրական շարժման հզոր վերելք ծավալվեց։ Այդ ժամանակներում առկա էր գաղութատիրության հեղձուցիչ ճնշման դեմ, իմպերիալիզմի դեմ պայքարող ներքին ուժերի հասունացումը։ Ժողովրդի բողոքը ազգային ինքնագիտակցության վերելք առաջ բերեց։ Հասունանում էր նաև սոցիալական ինքնագիտակցությունը բանվոր դասակարգի, բազմամիլիոն գյուղացիության, մտավորականության, որոնք ամբողջությամբ վերցրած կազմում էին ազատագրական շարժման կարևորագույն ուժը։ Այսպիսով, նախադրյալներ էին ստեղծվում արմատական հեղափոխական փոփոխությունների համար։

Հենց այս գործոնների շնորհիվ էլ, այլ ոչ թե «սովետական էքսպանսիոնիզմի», ժողովուրդներն ազատագրվեցին գաղութատիրությունից, իսկ նրանցից շատերն ընտրեցին զարգացման սոցիալիստական ուղին։

Ազգային-ազատագրական հեղափոխությունների «օտարերկրյա» ծագման հակակոմունիստական կոնցեպցիան վիրավորական է դրանք իրագործած ժողովուրդների համար։ Այն անտեսում է յուրաքանչյուր այդպիսի ժողովրդի ու նրա ավանգարդի բազմամյա անձնուրաց պայքարը, ազատության և ազգային անկախության համար արված զոհաբերությունները։

Բերենք մի քանի օրինակ արդի պատմությունից։

Սոցիալական ու ազգային ամենասուր հակասությունների, երկիրն ընդգրկած իշխանության ողջ սիստեմի ճգնաժամի, համընդհանուր դժգոհության հետևանքով 1974 թվականին Եթովպիայում ազգային-դեմոկրատական հեղափոխություն ծավալվեց։ Այդ երկրի ժողովրդական զանգվածները եռակի ճնշման տակ էին՝ ֆեոդալական-միապետական, կապիտալիստական և նեոգաղութատիրական։ Բազմաթիվ ազգություններն ու ազգային փոքրամասնությունները դրանից զատ ենթարկվում էին ազգային ճնշման ու կրոնական հալածանքների կառավարող խմբավորման կողմից, որը հիմնականում բաղկացած էր ամհարյան ֆեոդալների ներկայացուցիչներից, հենց իր՝ կայսրի գլխավորությամբ։

Այն մասին, թե ինչ էր իրենից ներկայացնում նախահեղափոխական Եթովպիան, վկայում են փաստերը։ ՄԱԿ-ի պաշտոնական տվյալների համաձայն, բնակչության մեկ շնչին ընկնող տարեկան եկամտով այն Աֆրիկայում գրավում էր վերջին տեղերից մեկը։ Ազգաբնակչության մոտ 90 տոկոսը կազմող գյուղացիության ճնշող մեծամասնությունը հողազուրկ էր։ Անելանելի աղքատություն և իրավազրկություն, գրեթե համատարած անգրագիտություն, զանգվածային համաճարակներ ու հիվանդություններ՝ այսպիսին էր հասարակ մարդու ճակատագիրը։

Ի վերջո 1974 թվականին Եթովպիայում հեղափոխական իրադրություն ստեղծվեց։ Գործադուլները, գյուղացիական խռովությունները, ուսանողական հուզումներն ընդգրկեցին երկիրը։ Խմորում սկսվեց բանակում։ Բնական ու անխուսափելի դարձան հուսահատության հասցված եթովպական ժողովրդի ապստամբությունը, միապետության տապալումը, հեղափոխության հաղթանակը, որն իր առաջին քայլերից հակաֆեոդալական, հակաիմպերիալիստական նպատակներ առաջադրեց։

Այսօր Եթովպիայի 32 միլիոնանոց ժողովուրդը հաջողությամբ վերացնում է ֆեոդալական մնացուկները, ստեղծել է Եթովպիայի բանվորական կուսակցությունը, որը ղեկավարում է հեղափոխության զարգացման կարևորագույն փուլերից մեկի ավարտման՝ սոցիալիզմի կառուցմանն անցնելու պայմանների ապահովման պրոցեսը։

Մեկ ուրիշ օրինակ։

Հակակոմունիստական պրոպագանդան պնդում է, թե իբր Աֆղանստանի



իրադարձությունները սադրել է Սովետական Միությունը։ Իրականում աֆղան ժողովրդի հեղափոխությունը, անտարակույս, ներքին բնույթի իրադարձություն է։ Դրա կազմակերպման հետ ՍՍՀՄ-ը ոչ մի առնչություն չունի։

Այսօր ժողովրդական իշխանությունը Աֆղանստանում հաջողությամբ լուծում է 1978 թվականի ապրիլյան հեղափոխությունից բխող խնդիրները։ Ստեղծվում են պետական ձեռնարկություններ, որտեղ սահմանված է ութժամյա աշխատանքային օր, սոցիալական մեծ պրոբլեմներ են լուծվում լուսավորության և առողջապահության բնագավառներում, անցկացվում է հողային ռեֆորմ։ Ընդունվել է աշխատանքի վերաբերյալ օրենք՝ ուղղված աշխատավորների շահերի պաշտպանությանը։ Կարելի է ասել, որ աֆղան ժողովրդի կյանքում սոցիալական շատ պրոբլեմներ արդեն լուծված կլինեին, եթե չլիներ ԱՄՆ-ի, Պակիստանի և այլ երկրների հանցավոր միջամտությունը, որոնք ռազմական ու նյութական մեծ օգնություն են ցույց տալիս ներքին հակահեղափոխությանը, նրա հրոսակակազմավորումներին։

Եթովպիայի ու Աֆղանստանի օրինակներից երևում է, որ ժողովրդական հեղափոխությունը օբյեկտիվ անհրաժեշտություն էր, հասարակությունը դրա կարիքն զգում էր, սոցիալական կարգի փոփոխությունը չէր կարող իրողություն չդառնալ։

Սոցիալ-տնտեսական ազատ զարգացման պահանջմունքներով էին թելադրված Չիլիի ու Նիկարագուայի հեղափոխությունները։ Ազգային բուրժուակալվածատիրական օլիգարխիայի տիրապետությունից և օտարերկրյա, առաջին հերթին հյուսիս-ամերիկյան, կապիտալի ճնշումից ազատագրվելու ձգտում՝ ահա թե ինչը այդ երկրներում ծնունդ տվեց հեղափոխությանը, այլ ոչ թե դրսից նրանց դրդելը, ինչպես այդ փորձում է հաստատել իմպերիալիստական պրոպագանդան։

Ի դեպ, Չիլիում հեղափոխությունն իրականացվեց զուտ խաղաղ ճանապարհով, պառլամենտական դեմոկրատիայի բոլոր նորմերի պահպանմամբ։ Դա չկանխեց ԱՄՆ-ի միջամտությունը, սոցիալիստների ու կոմունիստների՝ օրինականորեն ընտրված կառավարության տապալումը։ Այս առնչությամբ միանգամայն ակնհայտ են այն պնդումների լկտիությունն ու կեղծությունը, թե աշխարհում սոցիալիզմի տարածումը «տեղի է ունեցել ոչ թե ժողովրդական շարժումների կամ ազատ ընտրությունների օգնությամբ, այլ ռազմական ուժի կամ քայքայիչ գործողությունների միջոցով»։ Բայց թե՛ Չիլիում, թե՛ Նիկարագուայում և թե մյուս երկրներում ռազմական ուժ և քայքայիչ գործողություններ կիրառում է հենց ամերիկյան իմպերիալիզմը։ Չիլիի, իսկ այժմ նաև Նիկարագուայի իրադարձությունները կարող են դասական օրինակ ծառայել այն բանի, թե ինչպես է իմպերիալիզմը կազմակերպում հակահեղափոխության արտահանումը։ Սակայն Չիլիի հեղափոխության պարտությունը ժամանակավոր բնույթ է կրում։ Իմպերիալիզմի և պինոչետյան դիկտատուրայի ուժերը կարողացան սոսկ դանդաղեցնել հեղափոխական պրոցեսի զարգացումն այդ երկրում, բայց կանգնեցնել, դադարեցնել այն նրանք անկարող են։

Այսպիսով, այս և արդիականության մյուս սոցիալական հեղափոխությունները ծնվել ու ծնվում են ժողովուրդների քաղաքական և սոցիալ-տնտեսական զարգացման ներքին պահանջմունքներից։ Դրանով էլ ակնհայտ է դառնում այդ հեղափոխությունների «արտասահմանյան» ծագման մասին առասպելի, դրանց իրականացման օրինաչափությունների, պատմական կանխորոշվածության ժխտման անհիմն լինելը։

## III

Ձգտելով կանգնեցնել պատմության անկասելի ընթացքը, կանխել հեղափոխական փոփոխությունները, իմպերիալիստական ռեակցիան փորձում է մասսաների հեղափոխական ակտիվության զարգացումը խանգարել ոչ միայն կապիտալիստական սիստեմի «ծայրամասում», այսինքն նախկին գաղութներում, այլև բուն կապիտալիզմի բաստիոններում։ Ընդ որում իմպերիալիզմը

դիմում է քաղաքական ճնշման, գաղափարախոսական «ուղեղալվացման», ոստիկանական հետապնդումների՝ գործադրելով պրոպագանդայի ու հարկադրանքի ողջ ապարատը, և միևնույն ժամանակ ցուցադրում է անասելի երկերեսանիություն, փարիսեցիություն և կեղծ բարեպաշտություն: «Միացյալ Նահանգներում և այլ երկրներում դեմոկրատական կապիտալիզմը աննախադեպ ունակություն է դրսևորել հարաճուն թվով մարդկանց համար քաղաքական ու քաղաքացիական իրավունքներ և հուսալի բարգավաճում ապահովելու գործում», հավաստում է հանրապետական կուսակցության պլատֆորմը: Բայց դրանում միանգամայն լռության է մատնվում այն, որ ԱՄՆ-ում ավելի քան 8 միլիոն մարդ գործազուրկ է, 35 միլիոնն ապրում է «աղքատության սահմանագծից» էլ խեղճ: Այդ «ամենահարուստ» և «ամենաազատ» երկրում մըշտապես խախտվում են մարդու իրավունքները, իրականացվում է ռասայական ու ազգային խտրականություն, կրճատվում են ժողովրդի սոցիալական կարիքներին հատկացվող ծախսերը: Ոչ այլ ոքի, քան պրեզիդենտին են պատկանում ԱՄՆ-ում առողջապահության և լուսավորության աղետալի վիճակի մասին խոսքերը:

Այդ ամենը օբյեկտիվ հիմք է ստեղծում ժողովրդական զանգվածների դըժգոհության աճի համար: Կառավարող դասակարգերի սոցիալական դեմագոգիան ակնհայտորեն չի գործում:

Հասարակության առաջընթաց զարգացման համեմատ աճում է ժողովրդական զանգվածների ակտիվությունը: Այս հետևությունը Լենինը համարում էր մարքսիզմի «ամենախոր և ամենակարևոր դրույթներից մեկը» (տե՛ս ԵԼԺ, հ. 2, էջ 673—674): Նա հատկապես առանձնացնում էր Մարքսի և Էնգելսի միտքն այն մասին, որ «պատմական գործողության ընդգրկման խորության ավելացումը կապված է պատմականորեն գործուն-մասսայի քանակի ավելացման հետ» (տե՛ս ԵԼԺ, հ. 35, էջ 221):

Կապիտալիզմի սոցիալական արատներին ժողովրդական զանգվածների պատասխանը եղավ ընդլայնվող հակամոնոպոլիստական պայքարը, իսկ իմպերիալիզմի կողմից խաղաղության սպառնալիքին՝ հակապատերազմական շարժումը, որը 80-ական թվականներին անօրինակ ուժ ձեռք բերեց: Կապիտալի և բուրժուական պետության կամայականության դեմ անգլիական հանքագործների ու դոկերների, արևմտագերմանական մետաղագործների, ֆրանսիական հանքափորների ու մետաղագործների, ԱՄՆ-ի ավտոշինարարների, վարձու աշխատանքի բանակի այլ ջոկատների ներկայացուցիչների ելույթներ, իսկ դրա հետ միաժամանակ նաև խաղաղության բազմահազարանոց երթարշավներ, ՆԱՏՕ-ի ռազմական բազաների պաշարում, Արևմտյան Եվրոպայում միջին հեռահարության հրթիռների տեղաբաշխման դեմ մասսայական գործողություններ՝ այս բոլորը լենինյան հետևությունների ճշտության այսօրվա անվիճելի ապացույցներն են:

Սոցիալական հեղափոխության ընթացքում տեղի է ունենում, որպես կանոն, երկու հակադիր դասակարգերի բախում. մեկը, որ սպառել է իրեն, և մյուսը, որին պատկանում է ապագան: Լենինը գտնում էր, որ առանց դասակարգի, դասակարգային հասարակության հասկացության՝ սոցիալական հեղափոխության հասկացությունը բավականաչափ կոնկրետ չէ:

Չկա ավելի կեղծ, ռեալ իրականությանը հակասող որևէ մի այլ բան, քան արդի կապիտալիզմի «անդասակարգ» կամ «վերդասակարգային» կառուցվածքի մասին բուրժուական գաղափարախոսների պնդումը: Կապիտալիզմի շրջանակներում դասակարգային հակասություններն ու դասակարգային պայքարը ժխտող բոլոր բուրժուական կոնցեպցիաները, ինչպես ոչ հեռավոր անցյալում «մոդայական»՝ Բելլի «պոստինդուստրիալ հասարակության» տեսությունը, չդիմացան ժամանակի ու փաստերի քննությանը: Ճիշտ այդպես էլ հենց կապիտալիստական իրականության կողմից հերքվեցին Վեբերի «դասակարգերի ու դասերի» տեսությունը, «դասակարգ» հասկացությունը «անհավասարությամբ» փոխարինելու Դարենդորֆի և արևմտյան այլ սոցիոլոգների փորձերը, Պարսոնսի, Դևիսի, Մուրի ստրատիֆիկացիայի ֆունկցիոնալիստական տեսու-



թյունները, որոնք դեռ վերջերս Արևմուտքում դիտվում էին իբրև դասակարգերի ու դասակարգային պայքարի մասին մարքսյան տեսության «հերքում»:

Այսօր արևմտյան երկրներում ավելի ու ավելի է հաստատվում այն տեսակետը, որ ոչ թե այդ գաղափարախոսները, այլ Մարքսն ու նրա ուսմունքն են առավել լիովին բացահայտում արդի դարաշրջանում դասակարգերի ու դասակարգային պայքարի բնույթը:

Այսպիսով, թե՛ տեսականորեն, թե՛ գործնականորեն սնանկ դուրս եկան դասակարգային պայքարը «լուծարքի ենթարկելու», այնպես ձևացնելու փորձերը, թե իբր XX դարի վերջերին այն առհասարակ սպառել է իրեն: Դասակարգային մարտերը արդի հասարակական զարգացման միս ու արյունն են դարձել: Կապիտալիստական աշխարհը հայտնվել է բանվոր դասակարգի ու բուրժուազիայի, ժողովրդական զանգվածների ու մոնոպոլիստական կապիտալի հակամարտության աննախադեպ սաստկացման դեմ հանդիման:

XX դարի 60—80-ական թվականների դասակարգային մարտերի արդյունքները թույլ են տալիս գտնելու, որ սնանկացել են այն բուրժուական գաղափարախոսների հայացքները, որոնք դատողություններ են անում կապիտալիստական սիստեմի մեջ բանվորների «ինտեգրացման» մասին, և լիովին արդարացան բանվոր դասակարգի պատմական դերի վերաբերյալ Մարքսի հետևությունները, դասակարգ, որը գործնականում ապացուցեց կապիտալիստական շահագործման կարգի դեմ պայքար մղելու, ազատության և հավասարության համար ժողովրդի պայքարը գլխավորելու, սոցիալիզմի հաղթանակն ապահովելու իր ունակությունը՝ հենվելով իր ակտիվում ունեցած դասակարգային մարտերի վիթխարի պատմական փորձի վրա:

Բանվոր դասակարգի պայքարում առաջատար, ավանգարդային դերը խաղում են կոմունիստական կուսակցությունները: Խորապես խորհրդանշական է, որ «կոմունիստ» բառի հետ աշխատավորները վաղուց ի վեր կապում են այն մարդկանց, ովքեր պայքարում են մարդկության արդարացի ապագայի համար: Այսօրվա կոմունիստները ժառանգորդն են այն մարտիկների, որոնք դարեր շարունակ տեսել են արատներն իրենց ժամանակակից հասարակությունների և երազել վերափոխել դրանք:

Արդի հակակոմունիզմն իր պրոպագանդայի թունավոր նետերն ուղղում է բանվոր դասակարգի կուսակցությունների դեմ, ճգնում է գրպարտել նրանց, ներկայացնել որպես «դավադիրների» խմբերի, «Մոսկվայի գործակալների», համարյա իբրև տեռորիստների: Բանվոր դասակարգի կուսակցությունների նկատմամբ մոնոպոլիստական բուրժուազիայի ատելությունը միանգամայն բացատրելի է: Կոմունիստական կուսակցությունները բանվորական, հեղափոխական շարժման առավել դինամիկ, նպատակասլաց, գիտական տեսությամբ զինված առաջատար մասն են: «Կուսակցությունը,— ընդգծում էր Լենինը,— դասակարգի գիտակից, առաջավոր խավն է, նրա ավանգարդը: Այդ ավանգարդի ուժը 10 անգամ, 100 անգամ և է՛լ ավելի մեծ է, քան նրա քանակը» (ԵԼԺ, հ. 24, էջ 43):

Մարքս-լենինյան կուսակցությունները սոցիալիստական գաղափարները, գիտական կոմունիզմի տեսությունը միացնում են բանվորական շարժման հետ: Կոմունիստական կուսակցությունների գործունեությունն ուղղված է այն բանին, որ բանվոր դասակարգը, մյուս աշխատավոր դասակարգերն իրենց փորձով և իրենց սոցիալ-տնտեսական ու քաղաքական անմիջական շահերի համար ամենօրյա պայքարի ընթացքում ըմբռնեն կապիտալիզմի պատմական դատապարտվածությունը, սոցիալիզմին անցնելու անխուսափելիությունը՝ որպես հասարակության ավելի բարձր ձևի, որը համապատասխանում է իրենց արմատական շահերին, պայքար ծավալեն հանուն սոցիալիզմի:

Կապիտալիզմի երկրների կոմունիստական կուսակցություններին հարկ է լինում գործել միանգամայն բարդ պայմաններում: Նրանք իրենց վրա զգում են իմպերիալիստական ուժերի քաղաքական ու գաղափարախոսական աննախադեպ ճնշումը: Կոմունիստական շարժման դեմ, հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, ծավալվում են ամենակատաղի պրոպա-

գանդիստական կամպանիաներ, կոմկուսակցությունները ենթարկվում են ծանրագույն հալածանքների։ Կիրառվում են բանվոր դասակարգի լավագույն ներկայացուցիչներին քաղաքական խարականության ենթարկելու ամենաճկուն եղանակներ, ինչպես «մասնագիտությունների արգելանքը» ԳՖՀ-ում։ Ավելի է ճկունացել մոնոպոլիստական բուրժուազիայի դասակարգային ստրատեգիան։ Բայց կոմունիստական շարժումն աճում է, ընդլայնվում, համալրվում նոր ջոկատներով։

Վերջին տարիներս իմպերիալիզմն ակտիվացրել է միջազգային կոմունիստական շարժման դեմ քայքայիչ աշխատանքը։ ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ն կկամենային վարկաբեկել կոմունիստական կուսակցությունները, քայքայել դրանք ներսից, «չեզոքացնել» ՍՄԿԿ-ից հեռացնելու և մարքս-լենինյան գաղափարական հիմքից կտրելու միջոցով։

Կապիտալիզմի աշխարհում սոցիալական պրոցեսների զարգացումը կոմունիստների առջև նոր պրոբլեմներ է դնում։ Դրանք ըմբռնելու համար պահանջվում են և՛ կոնկրետ նյութի խոր վերլուծություն, և՛ դրա մանրակրկիտ քննարկում, և՛ մյուս կոմունիստական կուսակցությունների փորձի կիրառում, և՛, գլխավորը, մարքսիզմ-լենինիզմի դիրքերից իմաստավորում։ Այն պայմանների տարբերությունը, որոնցում գործում են կոմունիստական և բանվորական կուսակցությունները, կարող է առաջ բերել քաղաքական պայքարի զանազան հարցերի գնահատման ու դրանց նկատմամբ մոտեցման տարբերություն։ Դրանից օգտվում են կոմունիզմի թշնամիները՝ ձգտելով ուռճացնել այդ տարբերությունները, վերածել դրանք հակասությունների և պառակտման միջոցի։ Իսկ որ նման մտադրությունները տեղ ունեն կոմունիզմի թշնամիների ճամբարում, այդ մասին վկայում են բազմաթիվ հակակոմունիստական գաղափարախոսների խզբզոցները։

Սոցիալիզմի կողմնակիցների շարքերը խտանում են աշխատավորների կենսական շահերի համար մղվող ամենօրյա պայքարում։ Մոնոպոլիստական կապիտալի դեմ տնտեսական ու քաղաքական այդ պայքարն ընթանում է փոփոխակի հաջողություններով։ Բանվորները, աշխատավորները ավելի ու ավելի են համոզվում, որ ոչ մի մասնակի նվաճում չի կարող փոխել կապիտալիզմի օրոք իրենց կախյալ վիճակը, վերացնել շահագործումն ու ճնշումը։

Բանվոր դասակարգը մենակ չէ։ Կապիտալիստական աշխարհում նա դաշնակիցներ ունի, որոնք նույնպես, ինչպես ինքը, տառապում են բուրժուական հասարակարգի արատներից։ Միջազգային բանվոր դասակարգի արդարացի պայքարի հետ միշտ համերաշխ են սոցիալիստական ընկերակցության երկրները, համաշխարհային սոցիալիստական սիստեմը։ Ազգային ազատագրության գոտու ավելի ու ավելի շատ ժողովուրդներ են ընթանում սոցիալիստական ուղիով։

Կապիտալիզմից սոցիալիզմին մարդկության հեղափոխական անցումը, մեկ ֆորմացիայի փոխարինումը մի ուրիշով՝ ավելի բարձրով, հենվում է արդի սոցիալական հեղափոխության հզոր շարժիչ ուժերի վրա։

## IV

Երկրագնդի աշխարհագրական քարտեզի վրա կապիտալիզմի գոտին շագրենակաշու է նման. այն անընդհատ կրճատվում է՝ ի հաշիվ նրա վրա նոր պետությունների երևան գալու, որոնք սոցիալիզմի կառուցումը իրենց նպատակն են հռչակել։ Կարելի է ասել, որ ողջ մարդկությունն աստիճանաբար գնում է դեպի սոցիալիզմ, որը տիրաբար բախում է նրա դուռը։

Դրանում իմպերիալիզմի մունետիկները Սովետական Միության «համաշխարհային էքսպանսիա» են տեսնում։ Հետադիմական «Ուժի միջոցով հանուն խաղաղության կոալիցիայի» ղեկավարներից մեկը՝ սենատոր Լեքսոլտը, պնդում է. «Սովետական էքսպանսիոնիզմը համաշխարհային տիրապետության նպատակ է հետապնդում և գլոբալ ստրատեգիայով ուղղորդվում է հանուն այդ նպատակի»։ Մոլորակի վրա սոցիալիզմի հաղթարշավը «կոմունիզմի ուրվականից» ահաբեկված Գիգոյի ու Մետեռնիխի արդի հետևորդների աչքին ինչ-որ



«համաշխարհային կոմունիստական կայսրություն» է թվում։ Բայց դա ընդամենը հետադիմականների խեղաթյուրված պատկերացումն է ժամանակակից պատմության ընթացքի մասին։

Սոցիալիզմն այսօր ժամանակի թելադրանքն է։ Նրա պատմական կանխորոշվածությունն արտահայտվում է այն բանում, որ արդիականության բոլոր սոցիալական հեղափոխությունները, չնայած յուրաքանչյուրի առանձնահատկություններին ու յուրատեսակություններին, ունեն մի ընդհանուր օրինաչափություն՝ դրանք աջակցում են դեպի սոցալիզմ մարդկության առաջընթացին։

Իսկ ինչպիսի՞ օբյեկտիվ գործոններ են կանխորոշում այդ պրոցեսի հետագա զարգացումը։

**Առաջին**, կապիտալիզմի օրոք աշխատանքն ու արտադրությունն իրենց բնույթով այսօր ավելի ու ավելի հասարակական են դառնում, իսկ ընդհանուր աշխատանքի արդյունքի յուրացումը շարունակում է մնալ մասնավոր։ «Կապիտալիզմը իր իմպերիալիստական ստադիայում,— նշել է Լենինը,— ընդհուպ հասցնում է արտադրության ամենահամակողմանի հանրայնացման, կապիտալիստներին, այսպես ասած, հակառակ նրանց կամքի ու գիտակցության, ներքաշում ինչ-որ մի նոր հասարակական կարգի մեջ, որը մրցակցության լիակատար ազատությունից դեպի լիակատար հանրայնացում տանող անցման կարգ է» (ԵԼԺ, հ. 27, էջ 389)։ Կապիտալիզմը ջանում է հարմարվել փոփոխվող պայմաններին, որոնում է իր տիրապետության նոր ձևեր, փոխում գունավորումը։ Բայց նա անկարող է խույս տալ իր հիմնական հակասությունից։

**Երկրորդ**, սրվում է աշխատանքի ու կապիտալի հակամարտությունը։ Բարձրանում է բանվոր դասակարգի շահագործման աստիճանը, աճում աշխատավորների աշխատավարձի մակարդակի և մոնոպոլիաների շահույթների միջև եղած ճեղքվածքը։ Մեծանում է նաև աշխատավորների աճող պահանջմունքների և դրանց բավարարման միջև ընկած հեռավորությունը։ Մոնոպոլիստական բուրժուազիան փորձում է աշխատավորներից խլել նույնիսկ այն նվաճումները, որոնք ձեռք են բերվել տևական ու համառ պայքարով և որոնք արտացոլում են ժողովրդական զանգվածների կենսական պահանջմունքները։

**Երրորդ**, կապիտալիզմի հակասությունները նպաստում են դասակարգային գիտակցության, հակակապիտալիստական տրամադրությունների աճին։ Դրանք վերջին հաշվով առաջ են բերում մասսաների քաղաքական ակտիվություն, որն իր հերթին դառնում է կապիտալիզմի ճգնաժամի հետագա սրման գործոն։ Բնականաբար, ամեն մի խոր հասարակական վերափոխում, առավել ևս սոցիալական հեղափոխությունները, հնարավոր են միայն մասսաների գիտակցական պայքարի շնորհիվ։

Սրվող ներքին հակասությունները գիտատեխնիկական հեղափոխության ռեզերվների օգտագործման, տնտեսությանը պետական միջամտության, առաջատար կապիտալիստական պետությունների տնտեսական քաղաքականության կոորդինացման և այլ միջոցներով վերացնելու կապիտալիզմի փորձերը չեն կարող կասեցնել իրադարձությունների օբյեկտիվ ընթացքը, որը տանում է դեպի կապիտալիստական հասարակարգի հակասությունների պոռթկում։ Իհարկե, կապիտալիզմին հաջողվում է երկարաձգել իր գոյությունը, և աշխատավորների վրա դա շատ թանկ է նստում։ Բայց հարմարվելու զանազան միջոցառումներն ի վիճակի չեն կապիտալիզմն ազատել անբուժելի արատներից։ Համաշխարհային ասպարեզից նրա հեռանալու անխուսափելիությունը պահպանվում է։ Ահա թե ինչու XX դարի վերջին ևս հրատապ են հնչում Մարքսի խոսքերը պատմության «ծեր խլուրդի» մասին, որը փորում է հետևողականորեն ու համառորեն և որի առջև կապիտալիզմն անզոր է։

Բուրժուական գաղափարախոսները փողհարում են այն մասին, որ իբր սոցիալիզմն ու կոմունիզմը արդյունաբերականորեն զարգացած երկրների համար «հարմար չեն», որ ժամանակակից կապիտալիզմի կառուցվածքային տեղաշարժերը բանվոր դասակարգին վերածում են «փոքրամասնության», որը, իբրև թե, չի արտացոլում ողջ ժողովրդի կամքը։ Բայց նման պնդումները

անտեսում են այն իրողությունը, որ վարձու աշխատանքի բանակի և հենց բանվոր դասակարգի կառուցվածքում կատարվող փոփոխությունները չեն վերացնում արտադրության և հասարակության մեջ նրա առաջատար դերը և որ հենց սոցիալիզմն է ի վիճակի պատասխան տալու արդիականության այրող պրոբլեմներին, որոնք կապիտալիզմը ոչ միայն չի կարող լուծել, այլև ավելի է խորացնում։

Վերջին տասնամյակները ցույց են տալիս, որ քաղաքական պայքարի փորձի հիման վրա կոնկրետ իրավիճակի հաշվառումով կոմունիստական կուսակցությունները իրենց երկրների պայմաններին ու առանձնահատկություններին համեմատ խորացնում են համադեմոկրատական, հակամոնոպոլիստական, հակակապիտալիստական, սոցիալիստական վերափոխումների պրոցեսի իրենց ըմբռնումը։ Հասարակության կառուցվածքի, հակամոնոպոլիստական դեմոկրատիայի և նման այլ խոր փոփոխությունների գաղափարները, այս և կարևոր շատ այլ ծրագրային դրույթներ կոչված են արտացոլելու այն զանազան փուլերն ու անցման ձևերը, որոնք համապատասխանում են այս կամ այն կապիտալիստական երկրում սոցիալիզմի ելակետային սոցիալ-տնտեսական նախադրյալների հասունության կոնկրետ պայմաններին։

Հակակոմունիզմը, ձգտելով վարկաբեկել սոցիալիզմի մարտիկներին, փորձում է պատկերել նրանց իբրև բռնության կողմնակիցների։ Ճշմարտությունից ավելի հեռու բան չկա, քան նման հերյուրանքները։

Իրականում սոցիալական հեղափոխությունն այսօր հասարակության փրկությունն է խոշոր կապիտալի բռնությունից ու կամայականությունից։ Իսկ կապիտալիզմից սոցիալիզմին անցումը կարող է տեղի ունենալ տարբեր ձևերով։ Ինչպես ասված է կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցության ամփոփիչ փաստաթղթում, «յուրաքանչյուր կուսակցություն, ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներով, հաշվի առնելով կոնկրետ ազգային պայմանները, լիովին ինքնուրույնաբար մշակում է իր քաղաքականությունը, որոշում պայքարի ուղղությունները, ձևերն ու մեթոդները, հանգամանքներին համապատասխան ընտրում սոցիալիզմին անցնելու խաղաղ կամ ոչ խաղաղ ուղի, ինչպես նաև իր երկրում սոցիալիզմի կառուցման ձևերն ու մեթոդները»։

Մարդասիրությունից մղված՝ մարքսիստ-լենինյանները հեղափոխության իրականացման խաղաղ ուղու կողմնակից են։ Զինված պայքարի ուղին հարկադրական ուղի է, որն առաջ է գալիս այն դեպքում, երբ հեղափոխությանը թշնամի հետադիմական ուժերը ձգտում են նրա հետ դատաստան տեսնել զինված ձեռքով։ Այդ ժամանակ հեղափոխականները նույնպես դիմում են զենքի։ Սակայն սոցիալիստական հեղափոխության հիմնական խնդիրները ստեղծարար են։ Իսկ դրանք պահանջում են խաղաղություն, հասարակության արտադրողական ուժերի պահպանում։

Արդի պայմաններում բանվոր դասակարգը և նրա ավանգարդը՝ մարքս-լենինյան կուսակցությունը, ձգտում են սոցիալիստական հեղափոխությունն իրականացնել խաղաղ եղանակով։ Դա կհամապատասխաներ բանվոր դասակարգի և ամբողջ ժողովրդի շահերին, յուրաքանչյուր երկրի համազգային շահերին։ Մի շարք կապիտալիստական երկրներում իրադրությունը կարող է այնպես դասավորվել, որ համաձայնության տարբեր ձևերի ու զանազան կուսակցությունների և հասարակական կազմակերպությունների քաղաքական համագործակցության իրականացման հիման վրա բանվոր դասակարգն իր առաջավոր ջոկատի հետ ի վիճակի լինի միավորել ժողովրդի մեծամասնությանը, առանց քաղաքացիական պատերազմի նվաճել պետական իշխանությունը և ապահովել արտադրության հիմնական միջոցների անցումը աշխատանքի մարդկանց ձեռքը։ Բայց դա հնարավոր կլինի լոկ խոշոր մոնոպոլիստական կապիտալի դեմ, ռեակցիայի դեմ բանվորների, գյուղացիական զանգվածների, աշխատավորների մյուս խավերի դասակարգային պայքարի անընդհատ ծավալման միջոցով՝ հանուն խոր սոցիալական ռեֆորմների, հանուն խաղաղության ու սոցիալիզմի։



Կապիտալի երկրներում սոցիալական հեղափոխությունը հասունանում է այն պայմաններում, երբ սոցիալիզմն արդեն համոզիչ կերպով ապացուցել է իր սկզբունքային առավելությունները կապիտալիզմի նկատմամբ։ Սոցիալիզմի իրական նվաճումների շարքը պետք է դասել սոցիալական ճնշման ու ազգային անիրավահավասարության բոլոր ձևերի վերացումը, գործազրկության բացակայությունը, ձրի կրթությունն ու բուժսպասարկումը, պետական սոցիալական ապահովությունը, էժան բնակարանը և կապիտալիզմի օրոք աշխատավորների համար անմատչելի շատ այլ բաներ, անցյալում հետամնաց ազգերի ու ազգությունների արագ զարգացումը, էկոնոմիկայի անճգնաժամ վերելքը, իսկական դեմոկրատիան, որի դեպքում աշխատանքի մարդը ոչ թե խոսքով, այլ իրականում օգտվում է լայն իրավունքներից ու սոցիալական բարիքներից, ձեռք է բերում կրթություն ստանալու, մշակույթի ու գիտության արժույթներից օգտվելու հնարավորություն։ Սոցիալիստական հասարակությունը հնարավորություն տվեց բացահայտելու ժողովրդի բոլոր լավագույն հատկանիշները, հասարակական կյանքի տառացիրեն բոլոր ոլորտներում ծնունդ տվեց ժողովրդական զանգվածների աննախադեպ ակտիվության։

Ջանալով ներգործել հասարակական կարծիքի վրա, ատելություն հարուցել մեր երկրի ու սոցիալիստական հասարակարգի նկատմամբ, ռազմական առումով նախապատրաստել բնակչությանը, իմպերիալիզմը խոշոր մասշտաբներով գործունեություն է ծավալել իրական սոցիալիզմը, սոցիալիստական հասարակարգը վարկաբեկելու համար։ Սակայն, չնայած ամեն կարգի պրոպագանդիստական արգելքներին, սոցիալիզմի նվաճումների մասին ճշմարտությունը հասնում է կապիտալի երկրների ժողովրդական լայն զանգվածներին։ Ամերիկյան ռեակցիան այսօր հայտնվել է այն փաստի առջև, որ ԱՄՆ-ի շատ քաղաքացիներ, հակառակ իմպերիալիստական պրոպագանդայի բոլոր ջանքերին ու «խաչակրաց արշավանքի» կոչերին, սթափ կերպով են գնահատում հակասովետական, հակասոցիալիստական առասպելները։

Դրա բնորոշ իլյուստրացիան է «Ֆորին աֆերս» հանդեսի 1984 թվականի աշնանային համարում հրապարակված հասարակական կարծիքի տեսության տվյալները։ Որպես «ամերիկացիների մտածելակերպի արմատական բեկում»՝ հանդեսը գրում է այն բանի գիտակցության աճի մասին, թե «կոմունիզմը այնպիսի մի բան է..., որի հետ կարելի է գոյակցել, եթե անգամ հավանություն չես տալիս դրան»։ Իսկ քաղաքականապես Ամերիկայի ամենագիտակից մասը Սովետական Միության հանդեպ «գաղափարական թշնամություն» չի տածում, որի վրա հույս էր դնում հակակոմունիզմը։

Վերջին ժամանակներս իմպերիալիստական քաղաքագետներն ու գաղափարախոսները իրենց պրոպագանդիստական խաղում ավելի ու ավելի հաճախ են դիմում համեմատաբար նոր խաղաթղթի՝ բարոյականության և բարոյագիտական արժույթների սպեկուլյացիայի։ Այդ խաղի ձևերը բավական պարզ են. սովետական հասարակարգն ու սովետական արտաքին քաղաքականությունը հայտարարվում են «բարոյազուրկ», և, ընդհակառակն, այն ամենը, ինչ վերաբերում է ԱՄՆ-ի իմպերիալիզմին՝ չափազանց բարոյական և բարոյագիտական։ Ըստ նման տրամաբանության, ԱՄՆ-ի կողմից զենքի կիրառումը միշտ «բարոյական» է, եթե անգամ դրանից խաղաղ բնակիչներ են զոհվում, ինչպես դա տեղի ունեցավ Վիետնամում, Լիբանանում, Գրենադայում։

Նման պնդումների երկերեսանիությունն ակնհայտ է նաև շատ ամերիկացիների համար, որոնք միանգամայն իրատեսորեն և խիստ քննադատորեն են ընդունում իրենց երկրի կառավարող վերնախավերի միջազգային գործունեությունը։ ԱՄՆ-ի արդարադատության նախկին մինիստր Ռ. Կլարկը այդ առթիվ ասել է. «Մեր բուն սիստեմը կարծես թե զուրկ է օրինավորությունից»,— իսկ պաշտոնաթող բրիգադային գեներալ Հ. Հեստերը ԱՄՆ-ի պրեզիդենտին ուղղած նամակում գրել է. «Ես մտահանգում եմ, որ պատմության մեջ դեռ չի եղել այնպիսի պետություն, որը երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ավելի անբարոյական գործեր, քան Միացյալ Նահանգները»։

*Ամերիկյան իմպերիալիզմի կուրսի անբարոյականությունն ամենից առաջ «ուժի դիրքից» քաղաքականության մեջ է, միջուկային սպառազինությունների մրցավազքի ծավալման, ռազմական բյուջեի անհավատալի մեծացման, ռազմական մրցակցությունը տիեզերք փոխադրելու, «աստղային պատերազմների» դարաշրջան հռչակելու մեջ։*

Ամրապնդվելով ու զարգանալով որպես համաշխարհային սիստեմ, սոցիալիզմը հաստատում է այնպիսի հասարակական կառուցվածք, ուր տեղ չունեն պատերազմով՝ որպես քաղաքականության միջոցով, շահագրգռված դասակարգերը և մյուս սոցիալական խմբերը, հանդես է գալիս իբրև ժողովուրդների միջև խաղաղության հզոր պատվար, պայմաններ է ստեղծում արդիականության ամենակենսական պրոբլեմի՝ պատերազմի ու խաղաղության պրոբլեմի լուծման համար, իմպերիալիզմի ուժերին թույլ չի տալիս կործանարար պատերազմ պարտադրել մարդկությանը՝ զանգվածային ոչնչացման զենքի կիրառմամբ: *Այդ ասպարեզում սոցիալիզմի մարդասիրական առաքելությունն այն է, որ կանխվի նոր պատերազմը, որը կարող էր հանգեցնել մարդկային հասարակության գոյության բուն պայմանների ոչնչացման։*

*Սոցիալիզմի պատմական պոտենցիալը անբաժանելի է հասարակական պրոգրեսի պատմական հեռանկարից՝ նոր, կոմունիստական քաղաքակրթության գոյավորումից ու զարգացումից։ Ընդ որում հասարակությունը կանցնի պատմականորեն տևական մի շրջան՝ զարգացած սոցիալիզմի փուլը։ Շարունակելով զարգանալ ու կատարելագործվել՝ սոցիալիզմն աստիճանաբար կվերաճի կոմունիզմի. այն իրականացնում է կոմունիստական ֆորմացիայի բարձրագույն փուլին անցնելու գլխավոր պահանջը՝ լիակատար սոցիալական հավասարության հիման վրա ամենաարդարացի, ամենամարդասիրական հասարակական հարաբերությունների գոյավորումը։ Կոմունիզմը պատմության օրինաչափ արդյունքն է, որը մարդկության հասարակական կյանքը փոխադրում է զարգացման որակապես այլ, առավել բարձր մակարդակի վրա, նա պահպանում և ներառում է այն լավագույնն ու արժեքավորը, որ ստեղծվել է դարերի ու մարդկանց սերունդների կողմից։ Դա կլինի մի հասարակություն, որտեղ, ինչպես ասում են, բոլորն էլ բավարար ապրուստ ու վայելք կունենան։*

Այսպիսով, պատմությունն աշխատում է կոմունիզմի օգտին, այն անխուսափելի է պատմական զարգացման արդեն իսկ բուն ընթացքով: *Հասարակական պրոգրեսի անխափան ընթացքը ձախողման է դատապարտում նրանց, ովքեր փորձում են «խաչակրաց արշավանքներով» և իմպերիալիստական թելադրանքով կանգնեցնել պատմության անիվը։*

**«Коммунист» № 16, 1984 г.**

## Կուսակցական շինարարության տեսություն և պրակտիկա

# ԻՆՉ ՑՈՒՅՑ ՏՎԵՑ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԿԱՄՊԱՆԻԱՆ

**Լ. ՍԱՀԱԿՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ

*ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ կազմակերպություններում հաջողությամբ ավարտվեցին հաշվետու-ընտրական ժողովները։*

*Հաշվետվություններն ու ընտրությունները կարևոր քաղաքական կամպանիա են և խոշոր իրադարձություն կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների կյանքում։ Դրանց անցկացումը, ինչպես նշված է կուսակցական կազմակերպություններում հաշվետվությունների և ընտրությունների անցկացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. օգոստոսի որոշման մեջ, «կոչված է ապահովելու կուսակցական շարքերի հետագա ամրապնդումը, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումը, կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական ու գաղափարախոսական աշխատանքի, սոցիալ-տնտեսական պրոցեսների կուսակցական ղեկավարման ձևերի և մեթոդների կատարելագործումը, սովետական հասարակության կյանքում ՍՄԿԿ-ի ղեկավար դերի բարձրացումը»։*

*Սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները ցույց տվեցին, որ կոմունիստները գտնվել են լենինյան կուսակցության անդամի կոչման բարձրության վրա և հաջողությամբ ապահովել ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների հետևողական կատարումը։ Մեր հանրապետությունում հաշվետվություններն ու ընտրություններն անցան 7.144 կուսխմբերում, 3.661 արտադրամասային և 5.597 սկզբնական կուսկազմակերպություններում։ Առաջին հատկանշական բանը, որ դրսևորվեց այդ ժողովներում, կոմունիստների ակտիվության էական աճն էր։ Բավական է ասել, որ կուսխմբերի ժողովներին մասնակցեց հաշվառման մեջ գտնվող կոմունիստների 98,7, արտադրամասային և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներին՝ 98,2 տոկոսը։ Դրանցում ելույթ ունեցան համապատասխանաբար ժողովների մասնակիցների 52,8 և 35 տոկոսը։*

*Ղեկավարվելով «Կուսակցության մեջ հաշվետվությունների և ընտրությունների հիմնական արդյունքների և կուսկազմակերպությունների խնդիրների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. մարտի որոշմամբ՝ կուսակցության քաղկոմշրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները լայնորեն օգտագործեցին տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման պրոբլեմների կոլեկտիվ քննարկումն ու իմաստավորումը՝ ներկուսակցական կյանքի հետագա ակտիվացման, մասսաների շրջանում տարվող ողջ կազմակերպչական ու քաղաքա-*

կան աշխատանքի ուժեղացման, ՍՄԿԿ XXVI համագումարի, ՀԿԿ XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումների կենսագործման, 1984 թվականի և ամբողջությամբ վերցրած տասնմեկերորդ հնգամյակի պետական առաջադրանքների կատարման համար։

ՀԿԿ Կենտկոմը մշակեց և իրականացրեց մի շարք գործնական միջոցառումներ կուսակցական հաշվետու-ընտրական ժողովները հաջողությամբ նախապատրաստելու և անցկացնելու նպատակով։ 1984 թ. սեպտեմբերին ՀԿԿ Կենտկոմում հրավիրվեց կուսակցության քաղկոմների և շրջկոմների քարտուղարների և կազմբաժինների վարիչների խորհրդակցություն, որտեղ հանգամանորեն արծարծվեցին հաշվետու-ընտրական ժողովների անցկացմանն առնչվող գործնական հարցեր։ Հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում ընդհանրացվել և ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի քննարկմանն են ներկայացվել ժողովներում կոմունիստների արած այն քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, որոնք ենթակա են եղել օպերատիվ լուծման հանրապետական կազմակերպությունների կողմից։

Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեներին օգնելու նպատակով, ՀԿԿ Կենտկոմը նրանց ուղարկել է հաշվետվությունների ու ընտրությունների կազմակերպմանը նվիրված տեղեկատու-մեթոդական նյութեր։ Քաղկոմներն ու շրջկոմներն անցկացրել են կուսխմբերի կազմակերպիչների, արտադրամասային և սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինարներ ու խորհրդակցություններ, մշակել կոնկրետ միջոցառումներ՝ հաշվետու-ընտրական կամպանիայի նախապատրաստման ու անցկացման դրական փորձի ընդհանրացման և գործնական օգտագործման նպատակով։

Այդ ամենի շնորհիվ հանրապետության սկզբնական կուսկազմակերպություններում հաշվետու-ընտրական ժողովներն անցան գաղափարական-քաղաքական բարձր մակարդակով և դրական խոր հետք թողեցին նրանց գործունեության վրա, կոմունիստների կյանքում։

Արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների ժողովների մասնակիցների ուշադրության կենտրոնում էին պետական պլանային առաջադրանքների կատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և որակի բարելավման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, հումքի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների տնտեսման և արտադրության զարգացմանն առնչվող բազմաթիվ այլ հարցեր։ Հաշվետվությունների քննարկման ընթացքում հանգամանորեն խոսվել է այն մասին, թե ինչպես են լուծվում կուսակցության տնտեսական քաղաքականության պրոբլեմները, դրա համար գործնականում ինչ է արվում յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվում։ Ամենուրեք ուշադրության կենտրոնում այն հարցն էր, թե ինչպես որոնել, գտնել և գործի դնել արտադրության աճի, արտադրանքի ինքնարժեքի իջեցման ու որակի բարելավման նոր, լրացուցիչ ռեզերվներ, ակտիվորեն օգտագործել արտադրության ինտենսիվացումն ուժեղացնելու հնարավորությունները՝ գիտատեխնիկական առաջընթացի ներդրումն արագացնելու հիման վրա։

Լենինականի արդյունաբերական շատ ձեռնարկությունների կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում արժեքավորվել է հատկապես նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման ասպարեզում կատարված դրական աշխատանքը։ 1984 թ. մինչև հաշվետու-ընտրական կամպանիայի սկսվելը արդյունաբերության մեջ ներդրվել է այդպիսի 192 միջոցառում։ Դրա և այլ գործոնների կիրառման շնորհիվ, նախորդ տարվա համեմատությամբ, 80 հազար ռուբլով նվազել են խոտանից առաջացած կորուստները, 141 հազար ռուբլով՝ անարտադրողական ծախսերը։ Թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման միջոցով տնտեսվել է ավելի քան մեկ միլիոն 212 հազար ռուբլի։

Երևանի Օրջոնիկիձեի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում առաջնահերթ նշանակություն է տրվել արտադրության արդյունավետության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը, առաքումների պլանի կատարմանը, ամե-



նուրեք խնայողության խստագույն ռեժիմ կիրառելու, եղած ռեզերվները լիովին օգտագործելու, ետ մնացող տեղամասերը առաջավորներին հասցնելու, հնգամյակի չորրորդ տարվա պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու հարցերին։ Հատկապես առաջին պլան է մղվել ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումի առաջադրած աշխատանքի արտադրողականությունը պլանից ավելի բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ իջեցնելու և այդ առթիվ ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման խնդիրը։

Ղափանի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում շեշտը դրվել է արտադրության զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման պրոբլեմների լուծման վրա։ Այսպես, Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի, «Էլեկտրոն», ավտոնորոգման, լուսատեխնիկական գործարանների, կոշիկի ֆաբրիկայի և այլ ձեռնարկությունների ժողովներում արձանագրվել է, որ կուսկազմակերպությունները, տնտեսական ղեկավարությունն ու ինժեներատեխնիկական անձնակազմը խելամտորեն են կատարում աշխատանքի արտադրողականության հետևողական բարձրացման, աշխատավարձի համեմատ դրա գերադաս աճի, աշխատանքային, նյութական և հումքային ռեսուրսների խնայողության, ինքնարժեքի իջեցման և արտադրանքի որակի բարելավման վերաբերյալ կուսակցության ցուցումները։ Այդ ձեռնարկություններում մշակվել և իրականացվում են կոմպլեքսային ծրագրեր, որոնք ներառնում են արտադրության նյութատարության կրճատման, առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների ներդրման, աշխատանքի նորմավորման գիտական կազմակերպման կոնկրետ առաջադրանքներ։ Այդ հարցերը պարբերաբար քննարկվում են կուսակցական ժողովներում, կոմիտեների և բյուրոների նիստերում։ Հաշվետու-ընտրական ժողովներին նախորդած ինը ամսում նոր տեխնիկայի ներդրման շնորհիվ ձեռնարկություններն ստացել են ավելի քան կես միլիոն ռուբլու տնտեսական օգուտ։ Տրիկոտաժի և կահույքի ֆաբրիկաների, «Էլեկտրոն» և լուսատեխնիկական գործարանների, շինարարական նյութերի և իրերի կոմբինատի կուսկազմակերպությունների ժողովներում նշվել է, որ նոր, առավել բարձր տեխնիկական մակարդակի արտադրատեսակների թողարկման, մեքենայացման աստիճանի բարձրացման շնորհիվ կոլեկտիվները կարողացել են առանց արտադրական հրապարակների էական ավելացման արտադրանքի թողարկման ծավալները մեծացնել 10—25 տոկոսով։ Այն հնարավորություն է ընձեռել արդյունաբերական արտադրանքի ծավալի աճի ավելի քան 89,5 տոկոսն ապահովել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Մեր հանրապետությունում ամեն տարի կատարվում են մեծ ծավալի շինարարական աշխատանքներ. գործարկվում են ձեռնարկությունների արտադրական նոր մասնաշենքեր, ծնունդ են առնում բնակչության ամենաբազմազան սպասարկման նոր օջախներ ու օբյեկտներ, հարյուրավոր բնակելի տներ։ Պետությունը միջոցներ չի խնայում դրանց կառուցումն արագացնելու համար։ Բնականաբար, շինարարական կազմակերպությունների կոմունիստներն իրենց հաշվետու-ընտրական ժողովներում գլխավոր ուշադրությունը նվիրում էին կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման, շինարարական արդյունաբերության պլանավորման, կազմակերպման և կառավարման կատարելագործման անհրաժեշտության վրա։ Զեկուցումներում և ելույթներում ոչ միայն ընդհանրացվում էր այդ գործում եղած դրական փորձը, այլև բացահայտվում էին կառույցների ղեկավարման, շինարարական տեխնիկայի օգտագործման կոնկրետ թերությունները։ Կիրովական քաղաքի շինարարական կազմակերպությունների կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում, օրինակ, մտքերի փոխանակությանը մասնակցած կոմունիստների ելույթներում շեշտը դրվում էր կապիտալ ներդրումների ռացիոնալ օգտագործման, թերավարտ շինարարության ծավալների կրճատման հարցերի վրա։

Տրանսպորտային կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները հանգամանորեն արծարծում էին ժողովրդական տնտե-

սության այդ կարևոր բնագավառի հրատապ խնդիրները, շեշտը դնում ժողովրդատնտեսական բեռների փոխադրումների արմատական բարելավման, վառելիքաէներգետիկ և նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերի վրա։ Անդրերկաթուղու Երևանի հանգույցի սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները մեծ ուշադրություն են նվիրել վագոնների բեռնման-բեռնաթափման, դրանց բեռնատարողության լիարժեք օգտագործման, բեռնափոխադրումների արագացման, լոկոմոտիվների արտադրողականության բարձրացման, սոցիալիստական սեփականության պահպանության նկատմամբ կուսկազմակերպությունների հսկողության ուժեղացման հարցերին։ Կոմունիստների տեսադաշտում են եղել ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Վագոնների ռացիոնալ օգտագործման ասպարեզում Լվովի մարզի երկաթուղային և արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների աշխատանքի փորձի մասին» և ՀԿԿ Կենտկոմի՝ «Տրանսպորտում կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդման ասպարեզում Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի հանգուցային կուսկոմիտեների կատարած աշխատանքի մասին» որոշումների կենսագործումը։

Արդյունաբերական, շինարարական և տրանսպորտային ձեռնարկությունների կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում աշխույժ խոսակցություն ծավալվեց աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևերի լայն ներդրման, ամենուրեք կոմպլեքսային, տնտհաշվարկային բրիգադների ստեղծման և դրանց համակողմանի օգնության, սոցիալիստական գործարար մրցության կազմակերպման հարցերի շուրջ։ Հրազդանի շրջանի կուսկազմակերպությունների ժողովներում նշվեց, որ արտադրամիավորումներում և խոշոր ձեռնարկություններում սոցիալիստական մրցությանն աջակցելու նպատակով ստեղծվել են մեթոդական խորհուրդներ, մշակվել և գործի է դրվել մրցության ծավալման և ռացիոնալիզատորական շարժման միջոցառումների ծրագիր։ Արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի ձեռնարկություններում ստեղծվել և գործում է նոր ձևով աշխատող 503 բրիգադ, որոնցից 189-ում ստեղծվել են կուսխմբեր, 125-ում՝ ընտրվել կուսկազմակերպիչներ։ Այդ բրիգադները լայնորեն ներգրավվել են սոցմրցության մեջ և մեծապես նպաստում են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, աշխատանքային և տեխնոլոգիական կարգապահության ամրապնդմանը։

Պետական առաջադրանքները չկատարող ձեռնարկությունների և կառույցների կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում սրությամբ ու սկզբունքայնորեն են քննարկվել տնտեսական գործունեության հարցերը։ Տնտեսական ղեկավարության և նորընտիր կուսբյուրոների ուշադրությունը հրավիրվել է արտադրության կազմակերպման առաջավոր ձևերի հետևողական կիրառման, մատակարարումների և առաքումների պլանների կատարման, աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահության ամրապնդման և այլ հրատապ հարցերի վրա։

ՍՄԿԿ XXVI համագումարը, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումները լուրջ խնդիրներ դրեցին գյուղատնտեսության բնագավառի կուսակցական կազմակերպությունների առջև։ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումը մշակեց ՍՍՀՄ պարենային երկարաժամկետ ծրագիրը և կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց դրանից բխող խնդիրների անվերապահ լուծման վրա։

Ելակետ ունենալով կուսակցության արդի պահանջները՝ կոլտնտեսությունների և սովխոզների կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների մասնակիցները համակողմանիորեն քննարկեցին հողագործության և անասնապահության զարգացման հրատապ պրոբլեմները։ Վերլուծելով գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման ծրագրի կատարման ընթացքը, պարենային ֆոնդի կայուն մեծացման գործում մելիորացիայի դերի բարձրացման նպատակով տարվող աշխատանքը՝ կոմունիստները կոնկրետ օրինակներով ցույց տվեցին այդ ծրագրի կենսական կարևորությունը, շեշտեցին գյուղական աշխատավորության մոբիլիզացման անհրաժեշտությունը ՍՄԿԿ Կենտ-



կոմի մայիսյան (1982 թ.) և հոկտեմբերյան (1984 թ.) պլենումների որոշումներից բխող տնտեսական և սոցիալական կարևորագույն խնդիրների լուծման համար։

Գյուղական կոմունիստները առանձնահատուկ ուշադրություն նվիրեցին ներկայումս իրենց առջև ծառացած գործնական, հրատապ լուծում պահանջող խնդիրներին։ Գործարար մթնոլորտում քննարկվեցին հանրային հոտի ձմեռման կազմակերպման և գարնան-դաշտային աշխատանքների նախապատրաստման հարցերը։ Մասնավորապես նշվեց կերի առավել ռացիոնալ օգտագործման, ցանքին սերմացուի ֆոնդերի նախապատրաստման, ագրոտեխնիկական լավագույն եղանակների կիրառման անհրաժեշտությունը։ Կոմունիստներն արտահայտեցին իրենց վճռականությունը՝ հնգամյակը եզրափակելու գյուղատնտեսական արտադրության բարձր և կայուն ցուցանիշներով։

Էջմիածնի շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների և գյուղատնտեսությանն առնչվող կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները մեծ տեղ հատկացրին պարենային ծրագրի իրագործման նպատակով տարվող աշխատանքի վերլուծությանը։ Նրանք նշեցին, որ գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման հիման վրա զգալիորեն ամրապնդվել է շրջանի ագրոարդյունաբերական կոմպլեքսի նյութատեխնիկական բազան, բարելավվել է գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությունը, բուսաբուծության և անասնապահության մեջ բարձրացել է աշխատանքի մեքենայացման մակարդակը, ձեռնարկվում են բոլոր միջոցները ինտենսիվ արտադրություն կազմակերպելու և կերի բազան ամրապնդելու համար։ Շրջանում կառուցվել է կերի արտադրության վերամշակման ժամանակակից մասնագիտացված երկու արտադրություն, որոնք լրիվին բավարարում են տնտեսությունների պահանջները։ Զգալի աշխատանք է կատարվել հողերի քիմիացման և մելիորացման ասպարեզում։ Տնտեսությունների կոմունիստներն իրենց ելույթներում առանձնակի շեշտեցին այն հանգամանքը, որ տարեցտարի ընդլայնվում են արդյունաբերական ձեռնարկությունների կողմից գյուղին ցույց տրվող շեֆական օգնության շրջանակները, այն կրում է համակողմանի, ոչ սեզոնային բնույթ և ներառնում է նաև բնակավայրերի սոցիալական զարգացման խնդիրը։

Մեղրու շրջանի ագրոարդյունաբերական միավորման մեջ մտնող տնտեսությունների և ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններում հաշվետվություններն ու ընտրություններն անցան գյուղատնտեսական կուլտուրաների բերքահավաքը սեղմ ժամկետում ավարտելու, հողագործական և անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի տարեկան առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար կոմունիստներին, գյուղի ողջ աշխատավորությանը համախմբելու նշանաբանով։ Լեհվազի, Շվանիձորի, Տաշտունի, Վարդանիձորի տնտեսությունների կուսկազմակերպությունների ժողովներում կոմունիստները սկզբունքայնությամբ և գործերի վիճակի համար սրտացավությամբ շեշտեցին, որ ձեռք բերված հաջողությունները շատ ավելի կլինեին, եթե լրիվ օգտագործվեին առկա ռեզերվներն ու հնարավորությունները, եթե կոնկրետ, ճիշտ առաջադրանքներ տրվեին կոմունիստներին, բարձրացվեր հանձնարարված գործի համար նրանց պատասխանատվությունը։

Վերլուծելով կատարված աշխատանքը՝ Կրասնոսելսկի շրջանի գյուղական կոմունիստները ուշադրությունը բևեռեցին արտադրության տարբեր օղակներում տեղ գտած թերությունների վերացման և չօգտագործված հնարավորությունները անհապաղ գործի դնելու վրա։ Ելույթներում մտահոգություն էր արտահայտվում առանձին բրիգադների, ֆերմաների և տնտեսությունների կողմից տվյալ տարվա ու հնգամյակի չորս տարվա պլանների թերակատարման առթիվ։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի մշակած պարենային ծրագրի կատարմանն առնչվող խնդիրները գտնվում էին Անիի շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների մասնակիցների ուշադրության կենտրոնում։ Կոմունիստները նշեցին, որ շրջանային ագրոար-

դարձել են առավել բովանդակալից, մասսայական ինֆորմացիայի միջոցները՝ առավել գործնական, ակտիվ և ներգործուն, աշխուժացել է պայքարը բուրժուական գաղափարախոսության դեմ։

Հաշվետու-ընտրական ժողովները, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի հիշյալ որոշումից, մշակել են դաստիարակության հարցերին սիստեմավորված, կոմպլեքսային մոտեցում ցուցաբերելու, թերություններն ու վրիպումները վերացնելու գործնական միջոցառումներ։ Լենինական, Կիրովական քաղաքների, Մեղրու, Ղափանի, Երևանի Մյասնիկյանի և այլ շրջանների կուսկազմակերպությունների ժողովներում ընդունված որոշումներում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվել պրոպագանդիստական աշխատանքի դրվածքի արմատական բարելավման, աշխատավորության առջև ղեկավար կադրերի ելույթների սիստեմատիկ կազմակերպման, երիտասարդության ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության ուժեղացման, մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների, գաղափարական-դաստիարակչական ողջ կոմպլեքսի արդյունավետության բարձրացման հարցերին։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում արժեքավորվել է ուսանող երիտասարդության շրջանում կուսկոմիտեների և բյուրոների ծավալած արդյունավետ աշխատանքը։ Մյասնիկյանի շրջանի բուհերի կուսկազմակերպությունների ժողովներում ուշադրությունը կենտրոնացվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների լույսի ներքո ուսանողների կոմունիստական դաստիարակության և ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների համար որակյալ մասնագետների պատրաստման գործի հետագա բարելավման հարցերին։ Հաշվետու զեկուցումներում և կոմունիստների ելույթներում վերլուծվել է կուսկազմակերպությունների գործունեությունը ուսումնադաստիարակչական աշխատանքի կատարելագործման, ուսման առաջադիմության բարձրացման ասպարեզում։ Հաշվետու ժամանակաշրջանում այդ հարցերը պարբերաբար քննարկվել են ֆակուլտետների կուսժողովներում, ռեկտորատների ու կուսկոմիտեների համատեղ նիստերում, ընդունվել գործնական որոշումներ։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ էապես բարելավվել է ուսանողների հասարակական-քաղաքական պրակտիկայի կազմակերպման և անցկացման, ուսանողական գիտական ընկերությունների աշխատանքին երիտասարդության ակտիվ մասնակցությունն ապահովելու գործը։ Նշվել է, որ հաշվետու ժամանակաշրջանում կուսշրջկոմը, բուհերի կուսկոմիտեները և ֆակուլտետների բյուրոները իրենց տեսադաշտում են պահել հասարակագիտական ամբիոնների գործունեությունը, բարձրացրել են նրանց դերը ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում։

Բուհերի ֆակուլտետային կուսակցական ժողովներում կոմունիստները միաժամանակ լուրջ խոսակցություն են ծավալել այն մասին, որ կուսկազմակերպությունների ընտրովի մարմինները դեկանատների, ամբիոնների, հասարակական կազմակերպությունների գործունեությունը դեռևս չեն նպատակամղում ուսանողներին խոր ու կայուն գիտելիքներ հաղորդելուն, նրանց քաղաքական դաստիարակության արմատական բարելավմանը։

Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները, ելնելով ձեռնարկությունների և հիմնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների առջև ծառացած բազմաբնույթ խնդիրների անվերապահ լուծման, ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների կուսկազմակերպություններին կուսակցության առաջադրած պահանջների հետևողական կատարման շահերից, արել են ավելի քան 10 հազար քննադատական դիտողություններ ու առաջարկություններ։ Դրանցից 60,9 տոկոսը իրականացվել է հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում։ Կոմունիստները քննադատաբար են վերաբերվել սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության տարբեր կողմերի գնահատմանը։ Դիտողությունների ու առաջարկությունների մեծ մասը նվիրված է եղել արդյունաբերական ձեռնարկությունների ու կազմակերպությունների, շինարարության, գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման, կուլտուրայի և լուսավորության, սպասարկման ոլորտի գործերի բարելավման հարցերին։ Մի ամբողջ շարք դիտողություններ արվել են տնտեսական մարմինների, մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատանքի ոճի կատարելագործման կապակցությամբ։ Դիտողությունները և առաջարկությունները հիմնականում կրել են գործնական ու կոնստրուկտիվ բնույթ։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները մեծ օպերատիվությամբ վերաբերվեցին տեղական կազմակերպությունների հասցեին հաշվետու-ընտրական ժողովներում արված քննադատական դիտողությունների ու առաջարկությունների իրագործմանը։ Դրանց հաշվառման և ամփոփման նպատակով մի շարք քաղկոմներում ու շրջկոմներում ստեղծվեցին հատուկ հանձնաժողովներ՝ կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարների գլխավորությամբ։

Հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները և դրանցում մինիստրությունների ու գերատեսչությունների հասցեին արված քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կատարման միջոցառումների հարցը հանգամանորեն քննարկվեց ՀԿԿ Կենտկոմի բյուրոյում։ Բյուրոն նշեց տեղական կազմակերպությունների հասցեին արված քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրականացման նպատակով կուսակցության քաղկոմ-շրջկոմների կատարած դրական աշխատանքը։ Կոնկրետ հանձնարարություններ տրվեցին հանրապետական կազմակերպություններին՝ անվերապահորեն ընթացք տալ իրենց հասցեին արված քննադատական դիտողություններին ու առաջարկություններին և արդյունքների մասին իրազեկ պահել համապատասխան քաղկոմ-շրջկոմներին։

Հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում ընտրություններն անցան կազմակերպված և «Կուսակցական ղեկավար մարմինների ընտրությունների անցկացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հրահանգի պահանջներին խիստ համապատասխան։ Զգալիորեն բարելավվեց ընտրովի մարմինների որակական կազմը. կուսբյուրոների քարտուղարների և նրանց տեղակալների կազմում ընտրվեցին առավել ակտիվ ու հեղինակավոր, արտադրության առաջավոր կոմունիստներ։ Շատ կազմակերպություններում քարտուղարներ ընտրվեցին այն ընկերները, որոնք անցած հաշվետու-ժամանակաշրջանում լավ կողմերով էին դրսևորել այդ պարտականությունը կատարելիս։ Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների մեջ կանանց թիվն աճել է 1,4 տոկոսով։ Կուսբյուրոների կազմում ընտրվածների 42,5 տոկոսը բանվորներ և կոլտնտեսականներ են։

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական կամպանիայի ավարտմամբ իրենց գործը, իհարկե, վերջացած չեն համարում։ Նրանք կազմակերպում են ընտրովի կուսակցական ակտիվի հրահանգավորումն ու ուսուցումը, այդ նպատակով անցկացնում են սեմինար-խորհրդակցություններ, հատկապես նորընտիր քարտուղարներին ծանոթացնում են կուսակցական շինարարության հրատապ խնդիրներին, կուսակցական աշխատանքի վարման ձևերին ու մեթոդներին։ Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների ուսուցումը տեղի է ունենում նաև կուսակցական և սովետական աշխատողների որակավորման բարձրացման հանրապետական դասընթացներում։ ՀԿԿ Կենտկոմը մշակել է գործնական միջոցառումներ՝ նորընտիր կուսակցական ակտիվի ուսուցումը ճյուղային սկզբունքով և տարբերակված կազմակերպելու համար։ Պլանավորվում է ամեն տարի սկզբնական կուսկազմակերպությունների ազատված 70 քարտուղարների ուսուցումը կազմակերպել մեկամսյա դասընթացներում և 400 ոչ-ազատված քարտուղարներինը՝ տասնօրյա սեմինարում։ Քաղկոմ-շրջկոմներին հանձնարարվել է ձեռնարկել արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների, նրանց տեղակալների և կուսխմբերի ղեկավարների ուսուցումը կուսակցական ակտիվի շրջանային և քաղաքային գործող դպրոցներում։

Այսօր, երբ արդեն զգալի ժամանակ է անցել հաշվետու-ընտրական կամպանիայից, սկզբնական կուսկազմակերպությունների առջև ծառացել են

լուծման կարոտ շատ խնդիրներ և պրոբլեմներ։ Առաջին հերթին նրանք պարտավոր են հետևողական ու արդյունավետ աշխատանք ծավալել հաշվետու-ընտրական ժողովների բացահայտած թերությունները հիմնովին վերացնելու, ընդունված որոշումները անվերապահորեն կատարելու համար։ ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1985 թ.) պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը հանգամանորեն բնութագրեց Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի որոշումների կատարման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործման, գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակի բարձրացման ասպարեզում սկզբնական կուսկազմակերպությունների հիմնական անելիքները, նրանց պարտքը համարեց ձեռնարկել բոլոր միջոցները՝ ընթացիկ հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագիրը հաջողությամբ կատարելու, ՍՄԿԿ XXVII համագումարը արտադրական աննախադեպ հաջողություններով դիմավորելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Կ. Ու. Չեռնենկոն «Զարգացած սոցիալիզմի պահանջների մակարդակին» հոդվածում, նշելով գաղափարախոսական և կազմակերպչական աշխատանճի միասնուբյան լենինյան սկզբունճի պաճպանման անհրաժեշտությունը, խնդիր դրեց «բազմապատկել ջանքերը քաղաքական պրոպագանդայում, նպատակամղել այն մասսաների մոբիլիզացմանը՝ տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման խնդիրները լուծելու համար, կազմակերպչական և տնտեսական աշխատանքով ամրապնդել գաղափարախոսական գործունեությունը»։ Այս պահանջը պետք է գործողության ուղեցույց դառնա սկզբնական կուսկազմակերպությունների համար։

Մեր երկիրը պատրաստվում է արժանավայել ձևով դիմավորելու ՍՄԿԿ XXVII համագումարը։ Կուսակցության քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է կուտակված փորձի, հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների հայտնած նկատառումների հիման վրա ավելի կատարելագործել արտադրության կուսակցական ղեկավարման, կազմակերպչական, գաղափարաքաղաքական աշխատանքի ոճը, ձևերն ու մեթոդները, ըստ ամենայնի բարձրացնել կոմունիստների արտադրական, հասարակական-քաղաքական ակտիվությունը, մոբիլիզացնել քաղաքի և գյուղի աշխատավորական կոլեկտիվների ուժերը՝ տասնմեկերորդ հնգամյակի ավարտական տարվա առաջադրանքները լիովին կատարելու, կուսակցության առաջիկա մեծ համաժողովը տնտեսական, սոցիալ-կուլտուրական աննախադեպ նվաճումներով նշանավորելու համար։

Բարձր մարտունակություն, ծառացած տնտեսական, սոցիալ-կուլտուրական պրոբլեմների խորիմացություն, դրանց անվերապահ լուծման պատրաստակամություն ու վճռականություն. ահա թե ինչն է բնութագրական կուսկազմակերպությունների գործունեությանը ՍՄԿԿ XXVII համագումարին նախապատրաստվելու ժամանակաշրջանում։

---

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵՏ, ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ

**Աիդա ԹՈՓՈՒԶՅԱՆ**
ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար

ՍՈՎԵՏՆԵՐԻ ԵՐԿՐԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ բոլոր փուլերում լենինյան կոմերիտմիությունը եղել է կուսակցության առաջադրած խնդիրների լուծման առաջին բնագծում, հպարտությամբ կրել ու պատվով իրագործել է կուսակցության հուսալի ռեզերվի և մարտական օգնականի բարձր կոչումը։ Կոմերիտմիության հերոսական տարեգրության յուրաքանչյուր էջ, լինի դա քաղաքացիական կռիվների տարիները թե վերականգնվող երկրում սոցիալիստական ապրելակերպի առաջին սաղմերի արմատավորումը, մեծ Հայրենականի հերոսապատումը թե փլատակված քաղաքների ու գյուղերի վերականգնումը, խոպանի անծայր տափաստանների հերկումը թե դարի խոշոր կառույցների ստեղծումը՝ կուսակցության գործին, լենինյան անմահ գաղափարներին անմնացորդ նվիրվածության արտահայտություն է։ «Մենք ապագայի կուսակցություն ենք,— գրել է Վ. Ի. Լենինը,— իսկ ապագան երիտասարդությանն է պատկանում։ Մենք նորարարների կուսակցություն ենք, իսկ նորարարների ետևից միշտ ավելի սիրով երիտասարդությունն է գնում։ Մենք հին նեխվածքի դեմ անձնուրաց կերպով պայքարող կուսակցություն ենք, իսկ անձնուրաց պայքարի միշտ առաջինը կգնա երիտասարդությունը» (ԵԼԺ, հ. 14, էջ 204)։

Լենինյան այս բնութագրումը եղել ու մնում է կոմերիտմիության գործունեության ուղեցույցը։ Այսօր էլ, ակտիվորեն մասնակցելով մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքին, ժողովրդական տնտեսության առջև ծառացած մեծածավալ խնդիրների իրականացմանը, լենինյան կոմերիտմիությունը նվիրումով է կատարում սովետական երիտասարդության առաջատար ջոկատի իր պատվավոր ու պարտավորեցնող կոչումը։ ՀամԼԿԵՄ-ի գործունեության հաջողությունը պայմանավորված է այն ամենօրյա ուշադրությամբ, հոգատարությամբ ու ղեկավարությամբ, որ ցուցաբերում է կոմունիստական կուսակցությունն իր հերթափոխի նկատմամբ։

Եվ կոմերիտական յուրաքանչյուր սերունդ կարող է հպարտությամբ նշել, որ կոմերիտմիության ուժը կուսակցական ղեկավարման մեջ է։ Հատկանշական է, որ զարգացած սոցիալիզմի պայմաններում կոմերիտմիության կուսակցական ղեկավարումն ստանում է ավելի բազմակողմանի, բազմածավալ բնույթ։ Դրա վառ վկայությունն են ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի ճառը կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների համաբանակային խորհրդակցությունում, ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման մասին» ծրագրային որոշումը։ Դրանցում առաջ են քաշվում արդի պայմաններում երիտասարդության հետ տարվող աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման անհրաժեշտությունը, այն կարևոր

դրույթը, որ երիտասարդ սերնդի հետ տարվող աշխատանքը կուսակցությունը համարում է իր ստրատեգիական խնդիրներից մեկը։

Ստեղծագործաբար յուրացնելով երիտասարդության հետ տարվող աշխատանքի, կոմերիտմիության կուսակցական ղեկավարման մինչև այժմ կուտակված փորձը՝ կուսակցությունը կոմերիտմիության առջև դնում է երկրի երիտասարդ սերնդի դաստիարակության գործի բարելավմանն ուղղված որակապես նոր խնդիրներ։ Դրանք ամբողջովին բխում են սոցիալիստական շինարարության խնդիրների օր-օրի աճող մասշտաբներից, երկու համաշխարհային սիստեմների գաղափարական հակամարտության սրման իրողությունից։ Կյանքն ինքն է առաջադրում կոմունիստական իդեալների համար պայքարող, հասարակական և քաղաքական կայուն համոզմունքների տեր մարտիկների նոր սերնդի դաստիարակման պահանջ։ Առաջին պլանի վրա են դրվում նրանց աշխատանքային և քաղաքական ակտիվության հարցերը։

Վ. Ի. Լենինը կոմերիտմիության III համագումարում արտասանած իր ճառում երիտասարդության միության յուրաքանչյուր անդամից պահանջում էր կոմունիզմ սովորել։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի ճառում լենինյան խորիմաստ պահանջկոտությամբ տրված են երիտասարդության ներկա սերնդին կոմունիզմ սովորեցնելու հիմնադրույթները։ Դա առաջին հերթին նշանակում է ապահովել սոցիալիստական հեղափոխության, սոցիալիստական շինարարության փորձի հաջորդայնությունը, երիտասարդությանը սովորեցնել տիրապետել ավագների հեղափոխական փորձը և այն հարստացնել ժամանակի թելադրանքով ծնված նոր բովանդակությամբ։ «Կուսակցությունն այս բանն անում է,— նշեց ընկ. Կ. Ու. Չեռնենկոն,— ամեն կերպ զարգացնելով կոմերիտմիության՝ որպես հասարակական կազմակերպության, ինքնուրույն բնույթը, շեշտելով նրա անվերապահ կազմակերպական ինքնուրույնությունը»։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1984 թ. սեպտեմբերյան պլենումը հանգամանորեն քննարկեց հանրապետությունում կոմերիտական կազմակերպությունների կուսակցական ղեկավարման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության հետագա կատարելագործման, կոմերիտմիության գործունեության բարելավման հարցերը։ ՀամԼԿԵՄ յուրաքանչյուր անդամի ոգևորում և նոր հայրենաշեն գործերի է կոչում այն գնահատականը, որ պլենումի ամբիոնից տրվեց ՀամԼԿԵՄ մարտական ջոկատներից մեկին՝ Հայաստանի լենինյան կոմերիտմիությանը։ «Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն,— նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը,— բարձր է գնահատում հանրապետության կոմերիտմիության ավանդը կոմունիստական շինարարության բարդ ու բազմակողմանի խնդիրների լուծման գործում, կոմերիտական կազմակերպությունների հետևողական աշխատանքը՝ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կատարման ասպարեզում»։

Այս բնութագրումն ընդունելով որպես հանրապետության երիտասարդության ավանգարդի՝ լենինյան կոմերիտմիության նկատմամբ հայրական հոգատարության և մեծ վստահության մի նոր արտահայտություն՝ ՀԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմները միաժամանակ պլենումում արված քննադատական դիտողություններն ու առաջարկությունները ընդունել են որպես կուսակցական պատասխանատու հանձնարարություն և գործնականորեն ձեռնամուխ են եղել դրանց իրականացմանը, բացահայտված թերությունների վերացմանը։

Որոշելով կոմերիտմիության գործունեության հիմնական ուղղությունները էկոնոմիկայի բնագավառում՝ կուսակցությունը խնդիր է դնում մոբիլիզացնել երիտասարդության ուժերը տասնմեկերորդ հնգամյակի խնդիրների լուծման, պարենային և էներգետիկ ծրագրերի իրականացման, ժողովրդական տնտեսության ինտենսիվացման, տնտեսավարման արդյունավետ մեթոդների արմատավորման համար։ Այս պահանջն այսօր դարձել է հանրապետության կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը։

Հատկանշական է ՀԼԿԵՄ Էջմիածնի, Ախուրյանի, Արտաշատի, Գորիսի,



Մասիսի շրջկոմների ծավալած աշխատանքը։ Էջմիածնի շրջանում ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են շուրջ 15 հազար կոմերիտականներ, 256 կոմերիտական-երիտասարդական բրիգադներ։ 8.500 կոմերիտականներ և 220 բրիգադներ ժամկետից շուտ զեկուցեցին տասնմեկերորդ հնգամյակի չորրորդ տարվա պլանային առաջադրանքների կատարման մասին. մեծ թվով կոմերիտականներ և երիտասարդական բրիգադներ վաղուց աշխատում են հնգամյակի եզրափակիչ տարվա հաշվին։

Կոմերիտական սերունդների ավանդույթներին հավատարիմ՝ հանրապետության պատանիներն ու աղջիկները հարվածային աշխատանքով դիմավորեցին կոմերիտմիությունը Վ. Ի. Լենինի անունով կոչելու 60-ամյակը։ Կոշիկի «Մասիս» արտադրական միավորման՝ Շողիկ Յավրյանի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադը տոնի նախօրյակին կատարեց ընթացիկ հնգամյակի պլանը և սկսեց արտադրանք տալ հաջորդ հնգամյակի հաշվին։ Տիգրան Մանուկյանի բրիգադը զեկուցեց, որ խնայված հումքով տարեսկզբից թողարկել է 1.500 զույգ մանկական կոշիկի ձևվածք։

Սոցիալիստական մրցության գործարար կազմակերպման, ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ամենօրյա վերահսկման, առաջավոր փորձի արմատավորման ու տարածման շնորհիվ այսօր շուրջ 160 հազար կոմերիտականներ ու երիտասարդներ, 1.800 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ աշխատում են գրաֆիկի առաջանցումով։ Նրանցից շատերն ստանձնել են լրացուցիչ պարտավորություններ և ձգտում են հնգամյակի առաջադրանքների կատարման մասին զեկուցել Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած պատմական հաղթանակի 40-ամյակի նախօրյակին։ Ստվարանում են նաև այն երիտասարդ աշխատավորների շարքերը, ովքեր պարտավորվել են հնգամյակի եզրափակիչ տարվա պլանների կատարման մասին զեկուցել 1985 թ. ամռանը Մոսկվայում կայանալիք երիտասարդության և ուսանողների համաշխարհային փառատոնի օրերին։ Մրցության ընթացքում կոմերիտականների նախաձեռնությամբ ծնունդ առած ամեն մի հայրենասիրական շարժում լայն արձագանք է ստանում, արժանանում ջերմ պաշտպանության։ Այսպես, ՀԼԿԵՄ Կենտկոմի բյուրոն հավանություն է տվել «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման՝ Գեղամ Ջաքարյանի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադի «Մեր բնագիծը բարձր որակավորումն է» նախաձեռնությանը և հանձնարարել այն տարածելու հանրապետության երիտասարդական կոլեկտիվների շրջանում։

Ժողովրդական տնտեսության խնդիրների լուծման գործում մեծ է ուսանողական ջոկատների ավանդը։ Ամեն տարի ավելի քան 12 հազար պատանիներ ու աղջիկներ իրենց աշխատանքային քննաշրջանն են անցկացնում երկրի հարվածային կառույցներում։ Անցած տարի, օրինակ, նրանց ուժերով կատարվել է ավելի քան 62 հազար ռուբլու շինարարական աշխատանք։ Ուսանողական ջոկատների ջանքերը, նրանց բեղմնավոր գործունեությունը համապատասխանում են «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման այն պահանջին, որ անհրաժեշտ է «սատարել երկրի հարվածային կառույցներում աշխատելու երիտասարդության ձգտմանը»։ Կոմերիտական կազմակերպությունները պետք է հաշվի առնեն, որ այդ կառույցներին մեր երիտասարդության մասնակցությունը ոչ միայն աշխատանքային, այլ նաև քաղաքացիական հասունացման, բարեկամության ու ինտերնացիոնալիզմի դպրոցներ են։

Հանրապետության կոմերիտականների ու երիտասարդության աշխատանքի կարևորագույն տեղամասեր են շինարարությունը, տրանսպորտը և կապը։ Ընթացիկ հնգամյակի սկզբից համամիութենական կոմերիտական հարվածային կառույցներ են գործուղվել մեր հանրապետության ավելի քան չորս հազար պատանիներ ու աղջիկներ, որոնք երիտասարդական ինտերնացիոնալ ջոկատների կազմում մասնակցել են Ուրենգոյ—Պոմարի—Ուժգորոդ գազամուղի, ԲԱՄ-ի կառուցման, Ռուսաստանի ոչ սևահողային գոտու, գյուղական և մե-

լիորացիոն շինարարության, Արևմտյան Սիբիրի նավթի և գազի հանքավայրերի յուրացման հայրենաշահ գործին։ Հանրապետության երիտասարդության աշխատանքային հարվածային տեղամասեր են հայտարարված Իջևան—Հրազդան երկաթգծի, Երևանի մետրոպոլիտենի, Ջրառատի թռչնաբուծական ու Մարալիկի բամբակագործվածքային ֆաբրիկաների և ժողովրդատնտեսական կարևոր նշանակության բազմաթիվ այլ կառույցներ։

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման գործում ծանրակշիռ է նաև գյուղատնտեսության երիտասարդ աշխատողների ավանդը։ Այս տարի կերի կուտակման հարվածային եռամսյակին մասնակցեցին հանրապետության շուրջ 90 հազար պատանիներ ու աղջիկներ, 4.150 կոմերիտական-երիտասարդական բրիգադներ։ Հետևողական աշխատանք է տարվում «Այգեգործությանը՝ կոմերիտական հոգատարություն» և «Անասնապահությանը՝ կոմերիտական հարվածային ճակատ» շարժումների շրջանակներում երիտասարդության գործունեության ակտիվացման համար։ Միայն 1984 թ. հարվածային ջոկատների կազմում անասնապահների շարքերը համալրեցին շուրջ 600 պատանիներ ու աղջիկներ։

Կոմերիտական կազմակերպությունները արդյունավետ պայքար են ծավալում խաղողի և պտղատու այգիների նոսրության վերացման, բերքի կորուստները կանխելու համար։ Արձագանքելով կուսակցության կոչին՝ երիտասարդությունը վերջին երեք տարվա ընթացքում հանրապետության տարածքում տնկել է ավելի քան 110 հազար ընկուզենի։

Սակայն ձեռք բերված հաջողություններն ամենևին չեն խոսում այն մասին, որ աշխատող երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում ամեն ինչ հարթ է, չկան չլուծված պրոբլեմներ, թույլ օղակներ ու դժվարություններ։ Միշտ չէ, որ պլանային առաջադրանքների կատարումը դառնում է երիտասարդ բանվորի պարտքի ու պատասխանատվության գործը։ Քիչ չեն թերացումները, սպառողական վերաբերմունքի դրսևորման փաստերը, հանձնարարված գործի նկատմամբ ոչ պատասխանատու վերաբերմունքի դեպքերը։ Մեծ թիվ է կազմում երիտասարդության հոսունությունը արտադրության վճռական տեղամասերում։ Շատ կոմերիտական կազմակերպություններ դեռևս չեն կարողացել խորամուխ լինել նշված և ուրիշ թերությունները ծնող սոցիալ-տնտեսական, կազմակերպական պատճառների մեջ։ Մի շարք կազմակերպություններ (Երևանի ռետինատեխնիկական իրերի, «Մետշին», Լենինականի ապակու, Մասիսի ատաղձագործական իրերի գործարանների, Կիրովականի շիննորոգման տրեստի, Երևանի տեխնոլոգիական սարքավորումների արտադրամիավորման և այլն) իրենց գործունեությունը չեն վերակառուցում երիտասարդության այսօրվա պահանջներին ու հետաքրքրություններին համապատասխան։ Օրինակ, գաղտնիք չէ, որ արտադրական կոլեկտիվներում կադրերի հոսունության հիմնական պատճառներից մեկը աշխատանքի բովանդակությունից և պայմաններից երիտասարդների դժգոհությունն է։ Եվ հաճախ, ցավոք, նշված և ուրիշ կոմերիտական կազմակերպություններ ուշադրությունից դուրս են թողնում արտադրություն նոր եկած մարդուն, չեն օգնում նրան՝ ծագած առաջին դժվարությունների հաղթահարման գործում, չեն նպաստում աշխատանքային պայմանների բարելավմանը։ Իրողություն է այն, որ կոմերիտմիության որոշ քաղկոմ-շրջկոմներ վատ գիտեն շինարարական, տրանսպորտի, առևտրի և սպասման ոլորտի կոմերիտական կազմակերպություններում տիրող իրավիճակը, նրանց գործունեությունը չեն նպատակաուղղում տնտեսական կոնկրետ խնդիրների լուծմանը։

Չպետք է թաքցնել նաև այն ճշմարտությունը, որ տնտեսական ղեկավարները հաճախ չեն աջակցում երիտասարդական շատ նախաձեռնությունների արմատավորմանը։ Այսպես, «Երևանշին» շինմոնտաժային միավորումում գործող 17 կոմերիտական-երիտասարդական բրիգադներից և ոչ մեկն այսօր չի աշխատում բրիգադային կապալի մեթոդով։ Մոտ մեկ տարի առաջ միավորման №2 շինվարչության Լևոն Հարությունյանի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադն անցավ այդ մեթոդին։ Շինվարչության ղե-



կավարությունը, որը բազմիցս նշել էր բրիգադի լավ աշխատանքը, անսպասելիորեն սկսեց նրա ուժերն օգտագործել փոքրածավալ աշխատանքներում, իսկ ներկայումս այն ցաքուցրիվ է արվել տարբեր տեղամասերում։ Երևի նման վերաբերմունքով պետք է բացատրել այն, որ մինչև 30 տարեկան երիտասարդներն այստեղ կազմում են աշխատողների միայն 14 տոկոսը, իսկ դա ութ տոկոսով ցածր է մինիստրության միջին ցուցանիշից։

Դեռևս չլուծված շատ հարցեր կան նաև գյուղի երիտասարդության աշխատանքի և հանգստի պայմանների բարելավման, գյուղատնտեսական արտադրության վարման կուլտուրայի բարձրացման, բարձրագույն կրթությամբ երիտասարդ մասնագետ կադրերով արտադրության վճռական տեղամասերն ամրապնդելու գործում։

Գիտակցելով առկա թերություններն ու բացթողումները, աշխատանքի կատարելագործման անհրաժեշտությունը՝ ՀԼԿԵՄ Կենտկոմը միջոցառումներ է մշակում կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը վերակառուցելու, արտադրության վճռական տեղամասերում կոմերիտմիության դերն ու հեղինակությունը բարձրացնելու նպատակով։ Կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմները ներկայումս սևեռուն ուշադրություն են նվիրում նաև գիտատեխնիկական առաջընթացին երիտասարդության մասնակցության ակտիվացմանը։ Հետզհետե ստվարանում են երիտասարդ գյուտարարների ու նորարարների շարքերը, արտադրության արդյունավետության բարձրացման, ռեզերվների հայտնաբերման, հումքի, վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողության համար շահեկան աշխատանք են կատարում «Կոմերիտական լուսարձակի» շտաբներն ու պոստերը։

Լենինյան կոմերիտմիության գործունեության կարևորագույն տեղամասերից մեկը երիտասարդության գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործի կազմակերպումն է։ Հանրապետության կոմերիտական կազմակերպությունների առջև այսօր այդ խնդիրները դրված են է՛լ ավելի սրությամբ։ Եվ դա բխում է ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ծրագրային որոշումից, որը լուրջ ու պատասխանատու խնդիրներ է առաջադրում նաև հանրապետության կոմերիտական կազմակերպություններին։ ՍՄԿԿ Կենտկոմը խնդիր է դնում ավելի շատ հոգատարություն ցուցաբերել մատաղ սերնդի քաղաքացիական հասունացման նկատմամբ, միավորել ընտանիքի, ուսումնական հաստատությունների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը, պատանիների ու աղջիկների մեջ ձևավորել գաղափարաբարոյական բարձր հատկանիշներ։ ՀԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմները ջանում են գործադրել բոլոր միջոցները ՍՄԿԿ Կենտկոմի այդ պահանջը պատվով կատարելու համար։

Հաշվի առնելով այն հանգամանքը, որ ներկայումս երիտասարդության քաղաքացիական ձևավորումն ընթանում է միջազգային ասպարեզում գաղափարական պայքարի աննախադեպ սրության պայմաններում, երբ դասակարգային թշնամին սոցիալիզմի հիմքերը քայքայելու համար փորձում է հենակետ փնտրել մեր երիտասարդության շրջանում, երբ, ինչպես բուրժուական գաղափարախոսներն են հայտարարում, կապիտալիզմի և սոցիալիզմի միջև պայքարը «պետք է տեղի ունենա այն դաշտում, որը սովորաբար անվանում ենք երիտասարդություն», հանրապետության կոմերիտական կոմիտեները, երիտասարդական մամուլը առանձնակի ուշադրություն են նվիրում պատանիների ու աղջիկների գաղափարական դաստիարակության հարցերին, նպատակային աշխատանք են ծավալում նրանց մոտ մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, բարոյագեղագիտական առողջ սկզբունքների արմատավորման հարցերին։ Վերջին տարիներին կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմներն սկսել են ավելի մոտիկից զբաղվել երտասարդության գիտաաթեիստական դաստիարակության, նոր սոցիալիստական ծեսերի արմատավորման խնդիրներով։

Կոմերիտական գործունեության կարևոր տեղամասեր են հայտարարված
ուսանողական և բանվորական հանրակացարանները, ինչպես նաև ըստ բնա-
կության վայրի, անչափահասների հետ տարվող աշխատանքը։
Կոմերիտական բոլոր օղակների գործունեության վերակառուցման մեր
գլխավոր և հուսալի հենարանը շուրջ 27 հազարանոց երիտասարդ կոմունիստ-
ների այն ջոկատն է, որը կուսակցության հանձնարարությամբ աշխատում է
կոմերիտական կազմակերպություններում։ Կոմերիտմիության համար կարևոր
ուժ են սովետներում ընտրված 9.300 երիտասարդ դեպուտատները։ Միջոցներ
են ձեռնարկվում ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմների և ժողովրդական դեպուտատների
քաղաքային ու շրջանային սովետների գործկոմների երիտասարդական հանձ-
նաժողովների գործունեությունն ավելի արդյունավետ դարձնելու համար։
Մեր աշխատանքի հաջողությունը, անշուշտ, պայմանավորված է կոմե-
րիտական կադրերի ճիշտ ընտրությամբ ու տեղաբաշխմամբ։ Այս ասպարե-
զում ՀԼԿԵՄ Կենտկոմը մշակել և իրականացնում է լայն ծրագիր. պարբերա-
բար վերանայվում է կադրերի ռեզերվը, նրանց հետ տարվում է գործնական
աշխատանք, լրջորեն հաշվի են առնվում կադրերի քաղաքական, գործնական
հատկանիշները, յուրաքանչյուր տարի ավելի քան 120 հազար ակտիվիստներ
անցնում են համապատասխան կատեգորիաների ուսուցում հանրապետական
կոմերիտական դպրոցում, ակտիվի ուսուցման ճամբարներում և սեմինար-
ներում։

Կոմերիտական աշխատանքն այսօր, իրոք, պահանջում է որոշակի վերա-
կառուցում և կատարելագործում։ Դրանք պետք է համապատասխանեն ժամա-
նակի պահանջին։ Որպես աշխատանքի ծրագիր ընդունելով այդ նպատակով
կուսակցության առաջադրած խնդիրները՝ մեր ողջ գործունեությունը կազմա-
կերպում ենք հանրապետության մինիստրությունների, գերատեսչությունների
և նրանց ենթակա ներքին օղակների հետ սերտ համագործակցությամբ։ Զգում
ենք այն գործնական մտահոգությունը և շահագրգռությունը, որ առաջացել է
կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեներում, սկզբնական կուս-
կազմակերպություններում՝ կոմերիտական կազմակերպությունների ղեկավար-
ման, նրանց աշխատանքի արդյունավետության և հեղինակության բարձրաց-
ման նկատմամբ։
Սովետների երկրի երիտասարդ սերնդին մեծ բախտ է վիճակվել՝ սովո-
րել, աշխատել ու ապրել մի երկրում, որը մարդկության պատմության մեջ
առաջինն է ուղի հարթում դեպի կոմունիզմի բարձունքները։ Եվ այդ պատմա-
կան առաջընթացում մեզ առաջնորդում է Լենինի մեծ կուսակցությունը՝ սո-
վետական ժողովրդի բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողը։
Կոմերիտմիության ուժը, նրա կենսունակության աղբյուրը կուսակցական
ղեկավարման մեջ է։ Կուսակցությունը հետևողականորեն կոմերիտմիությանն
է փոխանցում իր կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի փորձը,
ստեղծագործաբար զարգացնելով նրա նախաձեռնությունն ու ինքնագործու-
նեությունը, աճեցնում ու դաստիարակում է երիտասարդ սերնդին։

---



# ՊԱՐԵՆԱՅԻՆ ՖՈՆԴԻ ՀԱՄԱԼՐՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՌԵԶԵՐՎ

Գ. ԱՎԱԳՅԱՆ
Աշխարհագրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր
Վ. ՄԱՆԱՍՅԱՆ

Մեր ԵՐԿՐԻ ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ համալիրում կարևոր տեղ են զբաղեցնում կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժանդակ տնտեսությունները։ Դրանք շոշափելի դեր են խաղում բնակչությանն անհրաժեշտ պարենամթերքով ապահովելու և գյուղական բնակչության եկամուտների ձևավորման մեջ։ Արդի փուլում կուսակցությունը սևեռուն ուշադրություն է նվիրում անձնական օժանդակ տնտեսությունների զարգացմանը՝ այն դիտելով իբրև ագրարային քաղաքականության բաղկացուցիչ մաս։ ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց, որ սոցիալիստական գյուղատնտեսության հիմքը եղել և մնում են կոլտնտեսություններն ու սովխոզները, բայց դրանց հետ մեկտեղ չի կարելի անտեսել անձնական օժանդակ տնտեսությունների հնարավորությունները։ Դրանք կարող են էական նեցուկ լինել պարենամթերքների արտադրության գործում։ Անձնական օժանդակ տնտեսությունների դերը հատկապես կարևորվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումում և այնուհետև՝ ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսություններում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու լրացուցիչ միջոցառումների մասին» որոշման մեջ։ Բնակչությանը բարձրորակ սննդամթերքներով ապահովելու անհրաժեշտությունը նշվեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. հոկտեմբերյան պլենումում։

Կուսակցության և կառավարության այդ փաստաթղթերում ուշադրություն է հրավիրվում այն փաստի վրա, որ քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսություններում մսի, կաթի և մյուս մթերքների արտադրության ավելացման հնարավորությունները լիովին չեն օգտագործվում։ Մի շարք տեղերում թերագնահատվում է տնամերձ տնտեսությունների դերը պարենային ռեսուրսների համալրման գործում, իսկ առանձին դեպքերում մթերքների արտադրությունը նույնիսկ կրճատվում է։ Դեռևս լիովին չեն բավարարվում կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների պահանջմունքներն անասունների մատղաշների ձեռքբերման հարցում, տեղական շատ մարմիններ քիչ են հոգ տանում անձնական անասուններ ունեցող աշխատավորներին խոտհարքներ և արոտավայրեր հատկացնելու, տրանսպորտ տրամադրելու մասին։ Անբավարար է զարգանում մթերման ցանցը, մեծ թերություններ կան բնակչությունից գյուղատնտեսական մթերքների ավելցուկների գնումները

կազմակերպելու գործում: Մենք չենք հասել այն բանին, որ գյուղում ապրող ամեն մի ընտանիք ունենա բանջարանոց և իր տնամերձում բազմացնի անասուններ ու թռչուններ, որ հնարավորին չափ շատ ընտանիքներ ձեռք բերեն կովեր:

Ագրարային սեկտորում նախատեսվող կարևոր միջոցառումների իրականացումը, անշուշտ, կնպաստի բնակչության տնամերձ տնտեսությունների զարգացմանն ու դրանցում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը: Այդ կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը կարևոր են համարում այնպիսի մթնոլորտի ստեղծումը, որպեսզի քաղաքացիներն զգան, որ անձնական օժանդակ տնտեսություններում անասուններ ու թռչուններ բազմացնելով և հողագործական կուլտուրաներ աճեցնելով իրենք օգտակար, պետական գործ են կատարում: Հայաստանի կոմկուսի 1982 թ. հունիսյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշեց, որ հանրապետության բնակչությանն անասնապահական մթերքների մատակարարումը բարելավելու համար պետք է մեծ դեր հատկացնել նաև կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժանդակ տնտեսություններին:

Փաստ է, որ գյուղատնտեսական տասնյակ կարևոր մթերքների և հումքի ապրանքային արտադրանքը ստացվում է հանրային տնտեսություններում (կոլտնտեսություններ, սովետական տնտեսություններ և պետական այլ ձեռնարկություններ): Այսպես, հացահատիկի հիմնական տեսակների, տեխնիկական կուլտուրաների և կերաբույսերի ամբողջ ապրանքային արտադրանքը տալիս են հանրային տնտեսությունները:

Սակայն գյուղատնտեսական մի շարք կարևոր մթերքների և հումքի արտադրանքում տնամերձ տնտեսությունների բաժինը, թեև ունի նվազելու ընդհանուր միտում, շարունակում է զգալի դեր խաղալ: Բավական է նշել, որ 1982 թ. Հայկական ՍՍՀ-ում կարտոֆիլի արտադրանքի 48,1, մսի՝ 28,7, բանջարեղենի, կաթի, ձվի, բրդի՝ 32,35 տոկոսը, պտուղների՝ 50, խաղողի՝ 23,2 տոկոսը բաժին է ընկել բնակչության տնամերձ տնտեսություններին:

Վիճակագրական տվյալների վերլուծությունը վկայում է, որ տնամերձ տնտեսությունների արտադրանքի տեսակարար կշիռը Հայաստանում համընկնում է երկրի միջին ցուցանիշներին: Զգալի տարբերություն է նկատվում միայն կարտոֆիլի արտադրանքում, որի միութենական միջին ցուցանիշը վերջին մեկուկես տասնամյակում գրեթե չի փոխվել և շարունակում է մնալ բարձր՝ 63 տոկոս, Հայկական ՍՍՀ-ի՝ 48,1 տոկոսի դիմաց: ՍՍՀՄ-ի միջին ցուցանիշի նկատմամբ հանրապետությունում զգալիորեն բարձր է բրդի արտադրանքի տեսակարար կշիռը (32 տոկոս՝ երկրի 24 տոկոսի դիմաց) և մասամբ ձվի արտադրանքի տեսակարար կշիռը (համապատասխանաբար՝ 34,2 և 31):

Ինչպես հայտնի է, անձնական օժանդակ տնտեսություններին հատկացված հողակտորները սովորաբար մանրաուրվագիծ են (հատկապես լեռնային շրջաններում) և մասամբ պիտանի կամ շահավետ չեն հանրային տնտեսություններում օգտագործելու համար: Հայաստանի լեռնային շրջանների մեծ մասի (Ազիզբեկով, Եղեգնաձոր, Մեղրի, Կամո, Գուգարք, Արթիկ, Ապարան, Արագած և այլն) տնտեսություններում զգալի տեսակարար կշիռ են կազմում (25—50 տոկոս) այն հողակտորները, որոնց միջին չափերը տատանվում են 0,3—1 հեկտարի սահմաններում: Փոքրատարած, անկանոն ուրվագծերով հաճախ տարբեր թեքության լեռնալանջերին տեղաբաշխված և իրարից ձորակներով բաժանված հողակտորներում գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման արդյունավետությունը եռակի անգամ ցածր է հարթ վայրերի խոշոր հողակտորների համեմատությամբ: Հանրապետության լեռնային խիստ մասնատված շրջաններում դաշտային աշխատանքներում տեխնիկայի օգտագործման վրա բացասաբար են անդրադառնում հողակտորների ցրվածությունը, տրանսպորտաճանապարհային վատ ապահովվածությունը և ագրոէկոլոգիական պայմանների անբարենպաստությունը:

Արտադրության առանձին ճյուղեր, օրինակ, վաղահաս կանաչիների տար-



բեր տեսակների, հատապտուղների, լոբազգիների և ծաղիկների մշակությունը, ճագարաբուծությունը, մեղվաբուծությունը, ջրլող թռչունների և աղավնիների բազմացումը տնտեսապես ավելի նպատակահարմար է կազմակերպել բնակչության անձնական օժանդակ տնտեսություններում: Նշված ճյուղերում աշխատանքները դժվար են մեքենայացվում: Բացի դրանից, աշխատատար մի շարք կուլտուրաների և անասունների նկատմամբ անհրաժեշտ խնամքի հաշվին, տնամերձ տնտեսություններում ստանում են բարձր եկամուտներ: Օրինակ, Էջմիածնի շրջանի Գայի կոլտնտեսության հանրային և անձնական օժանդակ տնտեսություններում կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ բանջարաբոստանային կուլտուրաների արտադրության համար հատկացված միավոր հողատարածությունից տնամերձ տնտեսություններում 2—2,5 անգամ ավելի շատ բերք է ստացվում, քան հանրային տնտեսությունում: Արդյունավետ օգտագործելով հանրապետության ցածրադիր գոտում ագրոկլիմայական ռեսուրսները և կուլտուրական բույսերի հասունացման ժամանակաշրջանների առանձնահատկությունները, տնամերձ տնտեսություններում ստանում են երկու-երեք բերք: Այսպես, ստորին գոտու տնամերձ տնտեսություններում վաղ գարնանը մշակում են վաղահաս կարտոֆիլ և տարբեր կանաչիներ, ամռանը՝ լոբազգիներ և հատապտուղներ, սեզոնի վերջում՝ ուշ հասունացող բանջարանոցային կուլտուրաներ, իսկ առանձին տնտեսություններում՝ արմատապտուղներ և կերային կուլտուրաներ:

Հանրապետության անձնական օժանդակ տնտեսություններում (հատկապես Արարատյան դաշտում և նրան հարող նախալեռնային գոտում) բարձր արդյունք ստանալու նպատակով կիրառում են այսպես կոչված խտացված ցանքաշրջանառության եղանակը: Նման հողօգտագործման դեպքում կարտոֆիլի հետ աճեցնում են կերային արմատապտուղներ, եգիպտացորենի հետ՝ լոբազգիներ և արևածաղիկ: Երիտասարդ այգիների միջշարքային հողերի վրա աճեցվում են կարտոֆիլ, բանջարեղեն, կերային արմատապտուղներ: Այս ամենը, անշուշտ, մեծացնում է հողօգտագործման արդյունավետությունը:

Անասնաբուծության բնագավառում, սակայն, անձնական օժանդակ տնտեսությունները մթերատվության ցուցանիշներով տակավին զիջում են հանրային տնտեսություններին: Դա բացատրվում է նրանով, որ հանրային անասնաբուծության մեջ կիրառվում են գիտության և առաջավոր փորձի նվաճումները, լայնորեն օգտագործվում են խտացրած կերեր, բիոխթանիչներ: Մինչդեռ, տնամերձ տնտեսություններն առայժմ չունեն այդ հնարավորությունները, և որպես անասնակեր օգտագործում են հանրային տնտեսություններին անմատչելի վայրերի (ճանապարհաեզրեր, անտառամիջյան բացատներ, զառիթափ լանջեր, անկանոն ուրվագծով ճանապարհազուրկ հողակտորներ) կանաչ զանգվածը և տնամերձերում մշակվող կերային կուլտուրաները, գյուղատնտեսական մնացուկները: Տնամերձ տնտեսություններում անասունների պահելը հանրային տնտեսություններին ազատում է լրացուցիչ անասնագոմեր կառուցելու բավական խոշոր ծախսերից:

Հանրային և անձնական օժանդակ տնտեսությունների միջև աշխատանքի միջճյուղային ու տարածքային բաժանման և դրանցում միջտնտեսական կոոպերացման շնորհիվ հնարավորություն է ընձեռվում առավել արդյունավետ օգտագործելու բնական պայմանների առանձնահատկությունները:

Տնտեսությունների երկու ձևերի մասնագիտացման և դրանց միջև միջտնտեսական կոոպերացման հարաբերակցությունը փոփոխվում է գյուղատնտեսության արտադրաուժերի զարգացմանը համապատասխան: Ընդ որում հանրային տնտեսություններում արտադրության մասնագիտացման և ինտենսիվացման շնորհիվ տնամերձ տնտեսություններում ևս փոփոխվում են արտադրության և՛ մասնագիտացումը, և՛ տեսականին:

Հանրային տնտեսություններն իրենց վրա են վերցնում գյուղատնտեսական կարևորագույն մթերքների և հումքի արտադրության գործը, իսկ տնամերձ տնտեսությունները յուրատեսակ կոնյունկտուրային դեր են կատարում՝ նպաստելով հիմնականում ամենաբազմազան մթերքների նկատմամբ բնակչության անհատական պահանջմունքների բավարարմանը: Այսպես, եթե նախ-

կինում հանրապետությունում անձնական օժանդակ տնտեսությունները ստիպված էին արտադրել գյուղատնտեսական ամենաբազմազան մթերքներ, նույնիսկ հացահատիկ, այժմ դրանք մասնագիտացել են բանջարաբուծության, պտղաբուծության, խաղողագործության, իսկ լեռնային շրջաններում՝ անասնաբուծության բնագավառներում։ Տնամերձ տնտեսություններում առանձին ճյուղեր փոխել են իրենց արտադրական ուղղվածությունը։ Օրինակ, հանրային տնտեսությունները մասնագիտացել են ոգելից խմիչքների համար հումք ծառայող խաղողագործության մեջ։ Օժանդակ տնտեսություններում խաղողագործությունը մասնագիտանում է սեղանի խաղողի և քիշմիշի արտադրության բնագավառում։ Հետագայում ևս նեղ մասնագիտացումն ավելի կխորացվի և՛ հանրային, և՛ տնամերձ տնտեսություններում։ Մեր հանրապետության բնակլիմայական պայմանները, ագրոտեխնիկական անհրաժեշտ աշխատանքների իրականացման դեպքում, հնարավորություն են ընձեռում ապահովելու գյուղատնտեսական մի շարք արժեքավոր կուլտուրաների՝ խաղողի, մրգերի, հատապտուղների և բանջարեղենի կայուն ու բարձր բերք։ Այդ կուլտուրաները, լինելով աշխատատար, միաժամանակ բարձրարժեք են և ունեն մեծ պահանջարկ, որը խթանում է դրանց արտադրությունը տնամերձ տնտեսություններում։ Կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օգտագործման հողամասերը գերազանցապես ծառայում են որպես շենքի բակ, միայն առանձին դեպքերում գտնվում են գյուղամերձ գոտում։ Այդ հանգամանքը նպաստում է անձնական օժանդակ տնտեսություններում ավելի արդյունավետ օգտագործելու ընտանիքի անդամների ազատ ժամանակը։

Հայաստանի բնատարածքային պայմանների խիստ բազմազանությունը յուրօրինակ դրոշմ է թողնում ամբողջ գյուղատնտեսական արտադրության կազմակերպման վրա և պահանջում է գիտականորեն հիմնավորված մոտեցում կոնկրետ տարածքի սահմաններում հանրային ու անձնական տնտեսությունների միջև հողօգտագործման հարաբերակցությունները որոշելու համար։ Հողաշինարարության արդի փուլում հանրային և անձնական օժանդակ տնտեսությունների միջև հողօգտագործման կատեգորիան սահմանելիս շատ կարևոր է հաշվի առնել կոնկրետ տարածքի չափերն ու կառուցվածքը։ Մանրաուրվագիծ և անկանոն ցրված փոքր հողակտորները, որոնք մեծ մասամբ պիտանի չեն հանրային արտադրության մեջ օգտագործելու համար, տնտեսապես արդյունավետ է հատկացնել բնակչությանը՝ որպես անձնական օժանդակ տնտեսություն։ Այդ հողակտորները, եթե նույնիսկ գերազանցում են կոլտնտեսային կանոնադրությամբ անձնական օգտագործման համար նախատեսված չափերին, նպատակահարմար է երկարաժամկետ պայմանագրերով հանձնել գյուղացիներին՝ համապատասխան արտադրություն կազմակերպելու պայմանով։ Մինչդեռ, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, հանրային տնտեսությունների օգտագործումից դուրս են մնացել զգալի հողատարածություններ, միաժամանակ հանրապետությունում անձնական օժանդակ տնտեսություններին հատկացվող միջին հողաչափերը պակաս են միութենական մյուս հանրապետությունների միջին ցուցանիշից։ Այդ առումով և հանրապետության խիստ սակավահողության պայմաններում դժվար է արդարացնել այնպիսի վիճակը, երբ հանրային տնտեսությունների համար անմատչելի և տակավին չօգտագործվող հողակտորները հասնում են շուրջ 0,5 մլն հեկտարի։

Էջմիածնի, Աշտարակի, Ղուկասյանի շրջաններում կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ գյուղական բնակչության մեկ ծխին հատկացվող անձնական հողօգտագործման միջին չափերն ըստ ուղղաձիգ գոտիների նույնպես խիստ տարբերվում են։ Այսպես, Էջմիածնի շրջանում գյուղական մեկ ծխին հատկացվող անձնական հողօգտագործման միջին չափերը կազմել են, ամբողջ շրջանի համար՝ 0,1 հեկտար, իսկ Տարոնիկի սովխոզում և Գայի կոլտնտեսությունում՝ 0,12 հեկտար, Բաղրամյանի սովխոզում՝ 0,08 հա։

Հանրապետության միջին գոտու անձնական օժանդակ տնտեսություններում հողօգտագործման ցուցանիշը մոտավորապես հավասար է հանրապետական համանման ցուցանիշին։ Աշտարակի շրջանում անձնական հողօգտագործման այդ կարգի ցուցանիշները տատանվում են հետևյալ սահմաններում.



ամբողջ շրջանում՝ 0,14 հա, Ագարակի կոլտնտեսությունում՝ 0,22 հա, Արտաշավանի սովխոզում՝ 0,25 հա, Օշականի սովխոզում՝ 0,1 հա։

Բարձր գոտու անձնական օժանդակ տնտեսություններում գյուղական մեկ ծխին հատկացվող հողատարածության միջին չափերը հանրապետական միջինից բարձր են։ Ղուկասյանի շրջանում այդ ցուցանիշները կազմել են. ամբողջ շրջանի միջինը՝ 0,3 հեկտար, Զորաշենում՝ 0,22, Բավրայում՝ 0,2, Ցողամարգում՝ 0,12 հեկտար։

Հանրապետության լեռնային և խիստ մասնատված մակերևույթի պայմաններում անձնական հողօգտագործման միջին չափերը, բոլոր տնտեսությունների համար, նույնիսկ մեկ շրջանի սահմաններում, հավասար լինել չեն կարող և, բնականաբար, հողօգտագործման արդյունավետության բարձրացման նպատակով միջոցառումներ մշակելիս հարկ է հաշվի առնել յուրաքանչյուր կոնկրետ բնատարածքային միավորի ամբողջ բազմազանությունը։ Բոլոր դեպքերում հանրապետության անձնական օժանդակ տնտեսություններում այդ նպատակով ինչպիսի կազմակերպական ու տնտեսական միջոցառումներ էլ ձեռնարկվեն, կարծում ենք, լեռնային բարձր գոտում, որտեղ բնական պայմաններն անբարենպաստ են և հողի եկամտաբերության աստիճանը ցածր է, անձնական հողատարածությունների չափերը պետք է համեմատաբար բարձր լինեն։

Հանրապետության բնական տարբեր գոտիների բնակիչների համար մոտավորապես հավասար հնարավորություններ ստեղծելու և բնատնտեսական ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու առումով անհրաժեշտ է, որպեսզի անձնական օժանդակ տնտեսություններին հատկացվող հողաչափերը տարբերակվեն։

Զանազան ուղղաձիգ գոտիներում տեղաբաշխված գյուղական շրջանների անձնական օժանդակ տնտեսությունների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ գյուղական մեկ ծխին հատկացվող անձնական հողօգտագործման միջին չափերը փոքր են հանրապետական համանման ցուցանիշներից և դաշտային ու լեռնային գյուղերում տնամերձ հողամասեր, ինչպես նաև բնակարան կառուցելու հնարավորություններ չունենալու պատճառով, նորաստեղծ ընտանիքները շարունակում են ապրել մի հարկի տակ՝ ունենալով մեկ ընտանիքի համար նախատեսված տնամերձ հողակտոր։ Այդպիսի դեպքում երիտասարդ ընտանիքների մի մասը ստիպված հեռանում է գյուղից։ Նորաստեղծ ընտանիքներին տնամերձով և անհատական բնակարան կառուցելու միջոցներով չապահովելը գյուղի ղեկավար մարմինները սովորաբար պատճառաբանում են հողային ֆոնդի սահմանափակությամբ։ Հանրապետությունում այդ կարևոր խնդիրը լուծելու համար առկա է երկու ուղի։ Առաջինը հանրային տնտեսությունների օգտագործումից դուրս մնացած անկանոն ուրվագծով ցրված փոքր հողակտորները գյուղի աշխատողներին հատկացնելու ուղին է։ Ընդ որում, ինչպես նախատեսված է կոլտնտեսության օրինակելի կանոնադրությամբ, «գյուղական բնակավայրերը խիստ կառուցապատված լինելու դեպքում բնակելի տների մոտ տնամերձ հողամաս է առանձնացվում ավելի պակաս չափերով, հողամասի մնացած մասը հատկացնելով բնակավայրի բնակելի գոտու սահմաններից դուրս։ Երկրորդը գյուղից հեռացած և նրա հետ կապ չունեցող ընտանիքների նախկին տնամերձերը գյուղում ապրող և աշխատող մարդկանց վերահատկացնելու ուղին է։ Ուսումնասիրությունները վկայում են, որ լեռնային շրջանների գրեթե բոլոր գյուղերում զգալի թիվ են կազմում, այսպես ասած, «թափուր» տնամերձերը։ Կոլտնտեսության օրինակելի կանոնադրության համաձայն, այդպիսի տնամերձերը կոլտնտեսականների ընդհանուր ժողովի որոշմամբ կարելի է հատկացնել գյուղում ապրող և աշխատող ընտանիքներին։

Ըստ քաղաքացիական օրենսդրության, քաղաքում ապրող նախկին գյուղացիների գյուղական բնակավայրում գտնվող բնակելի տան սեփականության իրավունքը (առք ու վաճառքի դեպքում) չի կարող տարածվել տնամերձ հողամասի օգտագործման վրա։ Գործող օրենսդրության հիման վրա, տնամերձ հողամաս կարող է տրամադրվել միայն այն քաղաքացիներին, որոնք մշտա-

դեպքում, երբ կապի վճարովի ծառայությունները, ուղևորատար տրանսպորտի բոլոր տեսակներինը և կոմունալ տնտեսության ծառայություններինը՝ 7,2—8,2 տոկոս: Տասներորդ հնգամյակում կենցաղծառայությունների ծավալն աճեց 1,5 անգամ, ընդ որում գյուղական կենցաղսպասարկումը, քաղաքայինի համեմատությամբ, զարգացել է ավելի արագ: Այդպիսի տեմպերը հնարավորություն են ընձեռել էապես բարձրացնելու կենցաղծառայությունների իրացման մակարդակը: 1983 թ. դրանց ընդհանուր ծավալը երկրում գերազանցեց 9 մլրդ ռուբլուց՝ 1960—1983 թվականներին աճելով ավելի քան երկու տասնյակ անգամ: Տասներորդ հնգամյակում և տասնմեկերորդի երեք տարում երկրի բնակչությանը ցույց է տրվել 60 մլրդ ռուբլու ընդհանուր գումարի կենցաղային ծառայություն:

Ներկայումս ճյուղում գործում են 4 հազարից ավելի մասնագիտացված ձեռնարկություններ և միավորումներ, մոտ 5 հազար կենցաղի տներ և կոմբինատներ, 430 հազար արհեստանոցներ, արտադրամասեր և ընդունման կետեր, որոնց աշխատողների թիվը հասնում է 2,7 միլիոնի: Բնակչությանը ցույց է տրվում ավելի քան 900 տեսակի ծառայություն: Ճյուղի արագ զարգացման նյութական նախադրյալները պետության հատկացրած խոշոր կապիտալ ներդրումներն են: Միայն իններորդ և տասներորդ հնգամյակների տարիներին երկրում կենցաղծառայության օբյեկտների շինարարության, վերակառուցման ու վերազինման նպատակով ծախսվել է ավելի քան 4 մլրդ ռուբլի: Տասներորդ հնգամյակում ճյուղի հիմնական ֆոնդերի արժեքն ավելացավ 46 տոկոսով, ձեռնարկություններն ստացան զգալի քանակությամբ նոր տեխնոլոգիական սարքավորումներ, որոնց մշակմանն ու արտադրությանը մասնակցեցին միութենական և հանրապետական տասնյակ գիտահետազոտական և կոնստրուկտորական կազմակերպություններ: Մինչև տասնմեկերորդ հնգամյակի վերջը երկրի բնակչությանը ցույց կտրվեն ավելի քան 11 մլրդ ռուբլու ծառայություններ:

Հայկական ՍՍՀ-ում ևս այն զարգանում է արագ տեմպերով: 1983 թվականին հանրապետությունում իրացված ծառայությունների ծավալն ավելի քան 15 անգամ, իսկ գյուղական վայրերում՝ 40 անգամ գերազանցեց 1960 թվականի մակարդակը: Սպասարկումների ծավալը բնակչության մեկ շնչի հաշվով աճեց ավելի քան 8 անգամ և 1983 թվականին հասավ 31,37 ռուբլու, իսկ գյուղում՝ 22,53 ռուբլու, այսինքն՝ ավելի քան 30 անգամ գերազանցեց 1960 թվականի ցուցանիշը:

Անցած հնգամյակում և ընթացիկի երեք տարում Հայաստանում իրացվել է գրեթե 600 մլն ռուբլու ծառայություն, որի ավելի քան 130 միլիոնը բաժին է ընկնում գյուղական բնակչությանը: 1983 թվականին ծառայությունների գումարը կազմել է 101 մլն ռուբլի, իսկ հնգամյակի վերջում այն կգերազանցի 115 միլիոնից:

Զգալիորեն կզարգանան նորոգման-վերականգնման ծառայությունները. բարդ տեխնիկայի, հատկապես փոխադրամիջոցների տեխնիկական սպասարկումը, հագուստի քիմիական մաքրումն ու ներկումը, սպիտակեղենի լվացումը, բնակարանի նորոգումը և այլն: Դա պայմանավորված է այդ ծառայությունների նկատմամբ բնակչության բարձր պահանջարկով: Հատկանշական է, որ մեզ մոտ կենցաղային ծառայությունների պոտենցիալ պահանջարկի զգալի մասը բավարարվում է ինքնասպասարկման ճանապարհով (քաղաքներում այն կազմում է գրեթե 40, իսկ գյուղերում՝ 60 տոկոս): Ներկայումս հանրապետության կենցաղծառայության 4,6 հազարից ավելի ձեռնարկություններում շուրջ 28 հազար մարդ է զբաղված:

Ինչպես մյուս հանրապետություններում, այնպես էլ մեզ մոտ, ճյուղի զարգացման տնտեսական արդյունավետության բարձրացման կարևորագույն գործոն են կենցաղծառայության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, համակարգի արտադրության տեխնիկական վերազինման խոշոր կազմակերպական-տեխնիկական միջոցառումները, որոնց շնորհիվ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, կատարելագործվել նորոգման և պատ-



վերների կատարման տեխնոլոգիան, բարելավվել բնակչության սպասարկման որակը:

Հայկական ՍՍՀ-ում կենցաղային ծառայությունների զարգացման տնտեսական արդյունավետության մասին վկայում են միութենական հանրապետություններում ծառայությունների և կապիտալ ներդրումների իրացման ծավալի համեմատական տվյալները բնակչության մեկ շնչի հաշվով: Վերլուծությունը ցույց է տալիս, որ միութենական հանրապետություններում կենցաղային ծառայությունների զարգացման մակարդակի վերին ու ստորին սահմանագծերը տարբերվում են մոտավորապես 3—5 անգամ: Աչքի է զարնում այն փաստը, որ հանրապետություններում կապիտալ ներդրումների մակարդակը քիչ է պայմանավորված նրանց կենցաղծառայության զարգացման աստիճանով: Դա հատկապես բնորոշ է Մերձբալթիկայի և Միջին Ասիայի համար: Էստոնական ՍՍՀ-ում սպասարկումների ծավալը 1,5 անգամ գերազանցում է միութենական մակարդակը, և ճյուղի կապիտալ ներդրումները, մեկ բնակչի հաշվով, միութենականից բարձր են երկու անգամ: Միջինասիական հանրապետություններում ինչպես կենցաղային ծառայությունները, այնպես էլ ճյուղի կապիտալ ներդրումները ետ են մնում միութենական մակարդակից: Մեր հանրապետությունում կենցաղծառայության 1980 թվականի կապիտալ ներդրումները բնակչության մեկ շնչի հաշվով կազմում էին միութենականի 171,9 տոկոսը, այդուհանդերձ, կենցաղային ծառայությունների ծավալը, մեկ շնչի հաշվով, կազմեց ընդամենը 81,8 տոկոսը: Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին այդ ցուցանիշը զգալիորեն աճել է, և արդեն 1985 թվականին հանրապետությունը կգերազանցի միութենական մակարդակը:

Բերված տվյալները վկայում են Հայկական ՍՍՀ-ում ճյուղի կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության բարձրացման մեծ ռեզերվների առկայությունը: Այդ ռեզերվների լավագույն օգտագործման նպատակով անհրաժեշտ է բոլոր ձեռնարկություններում ու միավորումներում մշակել նյութական և ֆինանսական ռեսուրսների օգտագործման բարելավմանն ուղղված կազմակերպական-տեխնիկական միջոցառումների կոմպլեքս պլաններ:

Ճյուղի տնտեսական արդյունավետության բարձրացման հատկապես մեծ ռեզերվներ է պարունակում կենցաղային ծառայությունների համաչափ զարգացումը հանրապետության շրջաններում ու քաղաքներում: Այսպես, օրինակ, մինչև տասներորդ հնգամյակի վերջը Արարատյան տնտեսական շրջանում իրացված կենցաղծառայությունների ծավալը բնակչության մեկ շնչի հաշվով 1,8 անգամ գերազանցում էր Սևանի ավազանի համապատասխան ցուցանիշը:

Մեզ մոտ էական պրոբլեմ է նաև քաղաքի ու գյուղի կենցաղային ծառայությունների մակարդակների մեծ տարբերությունը: 1980 թվականին հանրապետությունում կենցաղծառայությունների ծավալը գյուղի մեկ բնակչի հաշվով, 1965 թվականի համեմատությամբ, աճեց ավելի քան 12,3 անգամ, բայց, այնուհանդերձ, այն կազմեց քաղաքային բնակչությանը ցույց տրված ծառայությունների 54,8 տոկոսը:

Հայկական ՍՍՀ քաղաքներում ու գյուղերում բնակչության տեղաբաշխման և կենցաղային ծառայությունների իրացման ծավալի վերլուծությունը ցույց է տալիս, որ 1983 թվականին իրացված ծառայությունների 76,2 տոկոսն ստացել են քաղաքաբնակները, որոնք կազմում են հանրապետության ընդհանուր բնակչության 66,9 տոկոսը: Մինչդեռ հեշտ է նկատել, որ ութերորդ հնգամյակում ինտենսիվորեն կրճատվել է քաղաքի ու գյուղի բնակչության սպասարկման մակարդակներում եղած խզումը: Եթե 1965 թվականին գյուղի բնակիչներին բաժին է ընկել ծառայությունների ընդամենը 9,4 տոկոսը, ապա 1970-ին այն կազմել է 17,2 տոկոս: Ճյուղի զարգացման վերջին հինգ տարվա արդյունքներից երևում է, որ այդ մեծությունը 1979-ի 21,5-ից 1983 թվականին աճել է մինչև 23,8 տոկոս: Ընթացիկ հնգամյակում իրականացվում է միջոցառումների համակարգ՝ գյուղում կենցաղային սպասարկումն առավել բարձր տեմպերով զարգացնելու համար:

Ճյուղի զարգացման անհամաչափություն է դիտվում նաև հանրապետու-

*թյան քաղաքների միջև։ Այսպես, 1983 թվականին քաղաքներում իրացված կենցաղային ծառայությունների մոտ 65 տոկոսը բաժին է ընկել երևանցիներին, որոնք կազմում են հանրապետության քաղաքային բնակչության 51,2 տոկոսը։ Դա նշանակում է, որ մայրաքաղաքում յուրաքանչյուր բնակչի հաշվով 8 ռուբլով ավելի ծառայություններ են իրացվել, քան մյուս քաղաքներում։ Ներկայումս երևանցիներին, որոնք կազմում են հանրապետության ընդհանուր բնակչության 39 տոկոսը, բաժին է ընկնում սպասարկումների ավելի քան 50 տոկոսը։ Տերիտորիալ առումով կենցաղսպասարկման անհամաչափ զարգացման գլխավոր պատճառներից մեկը, թերևս, այս կամ այն ռեգիոնի կենցաղծառայության մեջ կապիտալ միջոցների ներդրման առաջնությունը որոշելու մեթոդիկայի բացակայությունն է։*

*«Բնակչության կենցաղսպասարկման հետագա զարգացման և բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1983 թ. հայտնի որոշմամբ առանձնակի ուշադրություն է հատկացված կենցաղծառայությունների հիմնական տեսակներով մասնագիտացված արտադրամիավորումների, հանրապետական, երկրամասային և մարզային կենտրոններում դրանց բարձր մեքենայացված գլխամասային ձեռնարկությունների, իսկ մյուս քաղաքներում ու շրջկենտրոններում մասնաճյուղերի կամ արտադրամասերի ստեղծմանը։*

*Մոտավոր հաշվարկները ցույց են տալիս, որ տասնմեկերորդ հնգամյակում մայրաքաղաքի բնակիչների կենցաղծառայությունների պահանջարկի բավարարման համար բավական է ունենալ շուրջ 300—320 մասնագիտացված խոշոր ձեռնարկություններ և 150—200 ընդունման կոմպլեքս կետ, որոնցից յուրաքանչյուրը կընդգրկի 500—600 մետր շառավիղ։ Այդ կետերը բնակիչներից ստացված պատվերները կարող են հանձնել համապատասխան մասնագիտացված ձեռնարկություններին, որտեղ դրանք կկատարվեն որակով և սահմանված ժամկետում։ Հաշվարկներ կատարելիս նկատի ենք առել, որ ձեռնարկություններից յուրաքանչյուրը մասնագիտացվելու է 6—7 տեսակի կենցաղային ծառայության գծով։ Բացի այդ, 1,5—2,5 հազար մետր շառավղի սահմաններում գործելու են կենցաղի տներ, որպեսզի մարդիկ հնարավորություն ունենան պահանջները բավարարելու նպատակով պատվերներ տալ՝ դիսպետչերի միջոցով։*

*Այդ ամենը հնարավորություն կընձեռի. առաջին՝ կրճատելու ծառայություններից օգտվելու համար բնակչության ժամանակի կորուստները, երկրորդ՝ խիստ կրճատելու մասնավոր անձանց ծառայություններին դիմելու և ինքնասպասարկման դեպքերի թիվը։*

*Կենցաղսպասարկման տնտեսական արդյունավետության բարձրացման գլխավոր գործոնը գիտատեխնիկական առաջընթացն է։ Վերջին տարիներս հանրապետության կենցաղային ձեռնարկություններում մեծ աշխատանք է տարվել գիտատեխնիկական առաջընթացի արագացման, մասնավորապես ճյուղի տեխնիկական մակարդակի բարձրացման բնագավառում, ներառյալ ձեռնարկությունների վերազինումը, աշխատանքի գործիքների նորացումը, կազմակերպական-տեխնիկական միջոցառումների ներդրումը։ Մասնագիտացված ձեռնարկությունների ստեղծման, կոմպլեքսային մեքենայացման ներդրման, արտադրական կարողության մեծացման միջոցով զգալիորեն բարելավվել են որակական ցուցանիշները։ Հանրապետության կենցաղծառայության ինդուստրացումը որակական փոփոխություններ է առաջացրել ճյուղի գործունեության մեջ։ Բարձր տեմպերով են աճել ավտոմեքենաների նորոգման և տեխնիկական սպասարկման ձեռնարկությունների հիմնական ֆոնդերը, և արդեն 1982 թ. հանրապետության կենցաղծառայության հիմնական ֆոնդերի ընդհանուր գումարում դրանց տեսակարար կշիռը կազմել է 18 տոկոս։ Կահույքի նորոգման և պատրաստման ձեռնարկությունների հիմնական ֆոնդերն այդ նույն ժամանակամիջոցում աճեցին 3 անգամ և կազմեցին բոլոր հիմնական ֆոնդերի 10 տոկոսը։*

*Տասներորդ հնգամյակում և տասնմեկերորդ հնգամյակի 3 տարիներին*



*զգալի աշխատանք է կատարված կենցաղսպասարկման ծառայությունների կազմակերպական կատարելագործման նպատակով։ Ստեղծվել են արտադրամիավորումներ, նախագծային-կոնստրուկտորական տեխնոլոգիական ինստիտուտ, պատվերների ընդունման ու հանձնման կոմբինատ, միավորվել են մայրաքաղաքի վարսավիրանոցների կոմբինատները։ Աշխատանքներ են տարվել ձեռնարկությունների մասնագիտացման համար, վերացվել են մի քանի հարյուր սակավ արդյունավետ մանր արտադրամասեր, կազմակերպվել են լվացքի և քիմիական մաքրման նոր ձեռնարկություններ։*

*Կենցաղսպասարկման մինիստրության պրակտիկայից կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, որոնք ցույց են տալիս սպասարկումների կազմակերպման տնտեսական արդյունավետությունը։ Հոկտեմբերյան քաղաքի փայտամշակման ձեռնարկության բազայի վրա համակենտրոնացվել է անտառանյութերի վերամշակումը, որի շնորհիվ բարձրացել է հիմնական ֆոնդերի տնտեսական արդյունավետությունը։ Գալանտերեայի 52 առարկաների արտադրության խոշորացումը և մասնագիտացումը բարձրացրին աշխատանքի արտադրողականությունը, նշանակալիորեն իջավ արտադրանքի ինքնարժեքը։ Բարձր տնտեսական արդյունավետություն ապահովեցին հայելիների, մետաղյա մահճակալների, ցանկապատերի, ցանցերի, ակնագործական իրերի պատրաստման և ազգային տարազի կարման կենտրոնացումն ու մասնագիտացումը։ Բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու վերոհիշյալ միջոցառումներն ապահովեցին շահութաբերության աճի բարձր տեմպեր և այս ցուցանիշով հանրապետության կենցաղ-սպասարկման մինիստրությունը Միության մասշտաբով գրավում է առաջնակարգ տեղ։*

*Միաժամանակ հարկ է նշել, որ հանրապետության կենցաղծառայության մեջ այդ գործում և հատկապես տեխնիկական առաջընթացի արագացման ասպարեզում առկա են զգալի ռեզերվներ։ Դեռևս մեծ թիվ են կազմում մանր օբյեկտները։ Օրինակ, 1983 թվականին մեկ ձեռնարկությանը, միջին հաշվով, բաժին էր ընկնում ընդամենը 6 աշխատող, այն դեպքում, երբ դեռևս 1980-ին Մերձբալթյան հանրապետություններում այդ ցուցանիշը կազմում էր 11,7—14,7։*

*Կենցաղսպասարկման աշխատանքի արտադրողականությունը, արդյունաբերության համեմատությամբ, միջին հաշվով 3—5 անգամ ցածր է։ Գիտատեխնիկական առաջընթացի ըստ ամենայնի արագացման անհրաժեշտությունը պայմանավորված է նաև տվական գործածության կենցաղային տեխնիկայի արտադրության աճով։ Դրա նորոգումն ու տեխնիկական սպասարկումը պահանջում են արդիական սարքերի ու սարքավորումների կիրառում։*

*Ճյուղի ձեռնարկությունների տեխնիկական առաջընթացը զգալիորեն բարձրացնում է արտադրության արդյունավետությունը։ Առաջավոր ձեռնարկությունների փորձը ցույց է տալիս, որ հատուկ սարքավորումների օգտագործմամբ հագուստ կարելու միասնականացված տեխնոլոգիայի կիրառման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է 15—20 տոկոսով։ Վերնազգեստ արտադրելիս տրիկոտաժե կտորների կենտրոնացված ձևման ներդրումն այդ գործողության վրա կատարվող աշխատանքի ծախսումները կրճատում է 5 անգամ և հնարավորություն ընձեռում 10—15 տոկոսով տնտեսելու գործվածքի ծախսումը։ Հիմնական ֆոնդերի աճի տեմպերը 1970—1972 թվականներին արագացել են ավելի քան 4 անգամ, միաժամանակ կենցաղային ծառայությունների ծավալը և թողարկվող արտադրանքն ավելացել են 3,2 անգամ։*

*Հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության վրա բացասաբար են ազդում հաճախակի դարձած այնպիսի փաստերը, երբ կենցաղսպասարկման նորակառույց արհեստանոցները չեն հագեցվում նոր մեքենաներով ու գույքով կամ նոր սարքավորումներ ներդնելիս չեն վերանայվում աշխատանքի կազմակերպման եղանակները։ Նշված թերությունների վերացման գործում կարևոր դեր կխաղա նոր տեխնիկայի ներդրման և կոլեկտիվների*

խրախուսման կենտրոնացված ֆոնդի ստեղծումը։ Այդ հնարավորությունները տակավին անբավարար են օգտագործվում։

Կենցաղծառայությունների զարգացման տնտեսական արդյունավետության բարձրացման կարևոր ցուցանիշ է նաև աշխատուժի օգտագործման բարելավումը։ Վերջին տարիներս հանրապետությունում բնակչության կենցաղսպասարկման և աշխատանքային ռեսուրսներով ճյուղի ապահովվածության մակարդակները զգալիորեն բարձրացել են։ Սակայն Հայաստանն այդ ցուցանիշով դեռևս ետ է մնում միջին միութենական մակարդակից։ Մեր ձեռնարկություններում գերակշռում է տղամարդկանց աշխատանքը։ Աշխատողների մի մասի պրոֆեսիոնալ ու կրթական աստիճանը լիովին չի համապատասխանում արդի պահանջներին։ Մինչդեռ կադրերի պատրաստման և աշխատանքային ռեսուրսների օգտագործման բնագավառում առկա են լուրջ թերություններ, որոնց վրա մեր ուշադրությունն է սևեռում «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։

Հանրապետության կենցաղծառայության ոլորտում բանուժի օգտագործման արդյունավետությունը բնութագրվում է երկու հակադիր միտումով. մի կողմից, ճյուղի ձեռնարկությունները և արհեստանոցները հագեցվում են նոր սարքավորումներով ու տրանսպորտով, մի բան, որը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը և ֆոնդազինվածությունը։ Մյուս կողմից, նոր հիմնական ֆոնդերը չեն օգտագործվում լրիվ կարողությամբ և քանի որ իրենց արժեքով հներից 2,5—3 անգամ թանկ են, բացասաբար են ազդում ֆոնդազինվածության և ֆոնդահատույցի ցուցանիշների վրա։

Աշխատուժի արտադրողականությունը 1970—1983 թվականներին կենցաղսպասարկման մինիստրությունում բարձրացել է 80 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում մեկ աշխատողի արտադրանքը 2.272-ից հասել է մինչև 3.991 ռուբլու։ Արտադրողականությունը բարձրացել է ֆոնդազինվածության առաջանցիկ աճի շնորհիվ, որը նույն ժամանակամիջոցում մեծացել է երեք անգամ։

Կենցաղսպասարկման ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը զգալիորեն կնպաստեն տնտեսական նոր մեթոդների ներդրումը, բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջավոր ձևերի, մասնավորապես բրիգադային եղանակի կիրառումը՝ միասնական կարգադրով աշխատելու և վերջնական արդյունքների համեմատ վարձատրվելու սկզբունքով։ Ընդլայնվում են համատեղության կարգով, արտաժամյա աշխատելու, ինչպես նաև կենցաղսպասարկմանն ուսանողներին, թոշակառուներին, տնային տնտեսուհիներին մասնակից դարձնելու հնարավորությունները։ Նշված միջոցները կնպաստեն նաև կադրերի հոսունության կրճատմանը, որը միայն տնտեսական մեխանիզմի անկատարելիության պատճառով հասնում է 15—20 տոկոսի։

Բնակչության կենցաղսպասարկման բարելավման տնտեսական արդյունավետության կարևոր ցուցանիշ է կենցաղային ծառայությունների որակի բարձրացումը։ Այս պրոբլեմի կոնկրետ լուծման նպատակով ՀՍՍՀ բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության սիստեմում զգալի աշխատանքներ են կատարվել ձեռնարկությունները և դրանց ստորաբաժանումներն ըստ սպասարկման որակի ատեստավորելու նպատակով։ Որակի բարձրացման կոնկրետ միջոցառումներ մշակելու համար մինիստրությունը սահմանել է համապատասխան ցուցանիշներ, որոշել դրանց քանակական նշանակությունը և կիրառման մեթոդիկան ըստ ձեռնարկությունների ու միավորումների։ 1983 թվականին կենցաղային սպասարկման մինիստրությունում մշակվել և հաստատվել են 204 նորմատիվային տեխնիկական փաստաթղթեր։

Ծառայությունների որակի կառավարման սիստեմի ներդրումը մինիստրության ձեռնարկություններում զուգակցվեց սպասարկումների ռացիոնալ



կազմակերպման հետ՝ կատարելագործելով կենցաղի ծառայության օբյեկտների աշխատանքի ռեժիմը, տեղաբաշխումը, ռեկլամը՝ բնակչության պահանջմունքներն ավելի լրիվ հաշվի առնելու հիման վրա։ ՀՍՍՀ կենցաղային ծառայությունների որակի կառավարման համակարգն ուսումնասիրում են և ներդնում միութենական այլ հանրապետությունների կենցաղային սպասարկման մինիստրությունները։

Կենցաղծառայությունների զարգացման սոցիալ-տնտեսական արդյունավետության բարձրացումը պահանջում է նաև բարելավել ճյուղի ինֆորմացիոն բազան։ Անհրաժեշտ է ինֆորմացիա կուտակել աշխատավորների ընտանիքներում եղած տևական գործածության ապրանքների, նրանց եկամուտների տարբեր մակարդակների, ինչպես նաև սպասարկման ոլորտի աշխատանքի առանձին տեսակների հաշվառման, ծառայությունների գների վիճակագրության վերաբերյալ և այլն։ Նշված խնդրի լուծումը դժվարանում է նրանով, որ կենցաղսպասարկման համակարգը բազմաճյուղ է։ Ծառայությունների պահանջարկի ձևավորման վրա ներազդող գործոնները շատ են։ Դրանց զգալի մասն անցումային բնույթ է կրում կամ քանակական գնահատման չի ենթարկվում։ Տնտեսական արդյունավետության բարձրացումն զգալի չափով պայմանավորված է ծառայությունների պահանջարկների նորմատիվների ստեղծման պրոբլեմով։ Այդպիսի նորմատիվների մշակումը թույլ կտա կազմել ծառայությունների առանձին տեսակների զարգացման հիմնավորված պլան։ Կենցաղային ծառայությունների ճյուղային խմբերի զարգացման գիտականորեն հիմնավորված ուղղությունը, կապիտալ շինարարության արդյունավետության ապահովումը, ձեռնարկությունների տեխնիկական բազայի կատարելագործումն անհնարին են առանց կենցաղծառայությունների տնտեսական արդյունավետության որոշման գիտականորեն հիմնավորված մեթոդիկայի մշակման։

Կենցաղսպասարկման արդյունավետության բարձրացումը կարող է ապահովվել ճյուղի համակենտրոնացմամբ և տեխնիկական հագեցվածությամբ, դրա մասնագիտացմամբ ու կոոպերացմամբ, տերիտորիալ առումով արդյունավետ կազմակերպմամբ, սպասարկման ձևերի կատարելագործմամբ։

Սոցիալ-տնտեսական այդ հրատապ խնդիրների լուծմանն է նպատակամղում «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, որը պահանջում է հատուկ ուշադրություն նվիրել բնակչության կենցաղային սպասարկման զարգացմանը։

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԴԻՎԻԶԻԱՆԵՐԸ ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆՈՒՄ

Ա. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ արժեքավորվում է այն իրողությունը, որ ֆաշիզմի ջախջախման գործում վճռական դեր խաղացին նաև ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը: Դրա վկայությունը ազգային զորամիավորումների ակտիվ մասնակցությունն էր ռազմական գործողություններին: Հայրենական մեծ պատերազմի տարիներին գործող ազգային, այդ թվում հայկական դիվիզիաները, իրոք, արժանի ավանդ ներդրեցին սովետական զինված ուժերի հզորության մեծացման և նրանց հաղթանակի ապահովման գործում:

Հայկական ՍՍՀ զորային կազմավորումների ստեղծումն սկսվեց Հայաստանում սովետական կարգերի հաստատումից անմիջապես հետո: Ազգային զորամասերի կազմակերպումը նպատակ ուներ պաշտպանելու հեղափոխության նվաճումները և նորաստեղծ սովետական հանրապետությունը:

Առաջին հայկական սովետական զորային կազմավորումը ծնունդ առավ 1920 թ. դեկտեմբերին: Այն կոչվում էր Սովետական Հայաստանի բանվորագյուղացիական կարմիր բանակ, որը կազմավորվեց ու կոփվեց Սովետական Ռուսաստանի կարմիր բանակի աջակցությամբ: 1921 թ. մայիսից Սովետական Հայաստանի կարմիր բանակի գլուխ կանգնեց Ալ. Մյասնիկյանը: Օգտագործելով իր ռազմական հարուստ փորձը՝ նա հմտորեն ղեկավարում ու դաստիարակում էր բանակի մարտիկներին ու հրամանատարներին: Զրույցներից մեկի ժամանակ Վ. Ի. Լենինը Ալ. Մյասնիկյանին հարցրել է. «Արդյոք ոտքի՞ է կանգնել ավերված Հայաստանը… բավականաչափ ամո՞ւր է արդյոք ազգային կարմիր բանակը» («Խորհրդային Հայաստան», 1. 11. 1921):

Սովետական Հայաստանի կարմիր բանակի զորամասերն սկզբում համալրվեցին ռուսական հին բանակի և հայկական ազգային զորաջոկերի՝ այն զինվորներով ու հրամանատարներով, ովքեր կանգնած էին սովետական իշխանության դիրքերում, ինչպես նաև նոր զորակոչված բանվորներով, գյուղացիներով ու կամավորներով: Հայաստանում քաղաքացիական կռիվների ժամանակ կարմիր բանակն ավելի կոփվեց, ձեռք բերեց հարուստ մարտական փորձ ու քաղաքական գիտելիքներ: Շուտով Սովետական Հայաստանի զինվորական գործերի ժողկոմ և կարմիր բանակի հրամանատար նշանակվեց Հայկ Բժշկյանը:

Սովետական հանրապետությունների ռազմաքաղաքական համագործակցության հետագա զարգացման, Անդրֆեդերացիայի և ապա՝ ՍՍՀՄ կազմավորման համար ծավալված շարժման առնչությամբ առաջ քաշվեց նաև ազգային զինվորական շինարարության հետագա զարգացման խնդիրը: Եվ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ 1922 թ. փետրվարի 17-ին Անդրկովկասում կարմիր



բանակի ազգային զորամիավորումների ստեղծման հարցը հատուկ քննարկվեց ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյում (տե՛ս За власть советов в Закавказье, сб, 1968, стр. 68):

Սովետական պետական շինարարության հետագա զարգացումը և ՍՍՀՄ կազմավորումը կանխորոշեցին նաև ռազմական կազմակերպության ու բանակի շինարարության խնդիրները: Առանձին հանրապետությունների բանակներ վերակազմվեցին ու միացվեցին Սովետական Ռուսաստանի կարմիր բանակին, որպես մի միասնական բանակ՝ միասնական հրամանատարությամբ ու կանոնագրքերով, զինվորական գործի կազմակերպման ընդհանուր հիմունքներով: Այսպես, Հայկական ՍՍՀ, Վրացական ՍՍՀ և Ադրբեջանական ՍՍՀ կարմիր բանակները վերակազմվեցին հայկական, վրացական և ադրբեջանական հրաձգային դիվիզիաների՝ կարմիր բանակի կազմում: Հայկական դիվիզիան 1922 թ. վերանվանվեց 76-րդ հայկական լեռնահրաձգային դիվիզիա և որպես հանրապետության ազգային զորային կազմավորում գոյատևեց մինչև 1938 թ.: 1922—1930 թթ. դիվիզիայի հրամանատարն էր Ա. Մելիք-Շահնազարյանը, 1931—1937 թթ.՝ Հ. Աթոյանը, ապա կարճ ժամանակ՝ Ս. Ասոյանն ու Ն. Հովհաննիսյանը: Գնդի հրամանատարներ են եղել Ա. Միրիմանյանը, Դ. Մելիքովը, Մ. Գևորգյանը, Ն. Խուդաբաշյանը, Բ. Ավագյանը, Ա. Հովակիմյանը, Ս. Հովհաննիսյանը, Հ. Բաղրամյանը, Ս. Կարապետյանը, Ի. Վեքիլյանը, Գ. Ջալալյանը և ուրիշներ:

Հայկական դիվիզիային առընթեր գործում էր հրամանատարական դպրոց, որը կոչվում էր Ալ. Մյասնիկյանի անունով: Դպրոցում սովորել է մոտ 1.000 սպա: Հայրենական մեծ պատերազմի տարիներին դպրոցի սաներից 14-ը դարձան գեներալներ, 80-ը՝ գնդապետներ, 7-ը՝ Սովետական Միության հերոսներ (Բանբեր Հայաստանի արխիվների, 1972, № 1, էջ 27):

Հայկական 76-րդ լեռնահրաձգային դիվիզիայում 1922—1938 թթ. ծառայել է 150 հազար մարդ և ձեռք է բերել ռազմաքաղաքական անհրաժեշտ գիտելիքներ: Դիվիզիայի շարքերում կոփված սպաներից ավելի քան երեք տասնյակը Հայրենական մեծ պատերազմի տարիներին դարձան սովետական բանակի գեներալներ:

1941 թ. հոկտեմբերի ծանր օրերին դիվիզիան մեկնեց ռազմաճակատ և գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մարտի մտավ Պոլտավայի շրջանում: Դիվիզիայի ռազմիկները 1941 թ. նոյեմբերին հերոսական մարտեր էին մղում Վոլոչանսկ քաղաքի շրջանում: Այդ մարտերում, ռուս զինվորների ու հրամանատարների հետ միասին, մարտական բարեկամությամբ կոփված հայ ռազմիկները և մյուս եղբայրական ժողովուրդների զավակներն անձնուրացաբար պայքարում էին ընդդեմ ֆաշիզմի՝ հանդես բերելով բարձր կազմակերպվածություն և օրինակելի կարգապահություն: Դիվիզիան իրեն փառքով պսակեց հատկապես Ստալինգրադի ճակատամարտում: 1942 թ. նոյեմբերի 24-ին հրապարակվեց ՍՍՀՄ պաշտպանության ժողկոմի հրամանը 76-րդ հրաձգային հայկական դիվիզիան գվարդիական դիվիզիայի վերակազմելու մասին: Հրամանում ասվում էր. «Մեր սովետական հայրենիքի համար գերմանական զավթիչների դեմ մղվող մարտերում դիվիզիան ցույց տվեց արիության, խիզախության, կարգապահության և կազմակերպվածության օրինակներ: Անընդհատ մարտեր մղելով գերմանական զավթիչների դեմ՝ 76-րդ հրաձգային դիվիզիան հսկայական կորուստներ է պատճառել ֆաշիստական զորքերին և իր կործանիչ հարվածներով ոչնչացրել հակառակորդի կենդանի ուժն ու տեխնիկան, անողոքաբար ջախջախել գերմանական զավթիչներին: Հայրենիքի համար գերմանական զավթիչների դեմ մղվող մարտերում հանդես բերած տոկունության, արիության, կարգապահության և կազմակերպվածության համար, անձնակազմի հերոսության համար 76-րդ հրաձգային դիվիզիան վերակազմել 51-րդ գվարդիական հրաձգային դիվիզիայի (История 51-й гвардейской… дивизии, 1956, стр. 34—35):

Դիվիզիայի մասին այլ առիթով ասված է. «Վոլգայի ափերին տեղի ունեցած մեծ ճակատամարտին մասնակցում էին նաև հատուկ ազգային միավո-

զորամասերը ամուր փակել ու պաշտպանել են դեպի Գրոզնի տանող ուղիները, խոշոր կորուստներ պատճառել թշնամուն՝ նախապատրաստելով նրա ջախջախումը հետագա մարտերում։

89-րդ հայկական դիվիզիայի պատմության նոր շրջան սկսվեց 1943 թ. հունվարի 1-ից, երբ դիվիզիան ու բանակի մյուս զորամասերն անցան հարձակման ու հունվարի 3-ին ազատագրեցին Մալգոբեկ քաղաքը և ապա սկսեցին հետապնդել նահանջող հակառակորդին։ Դիվիզիան անցավ 800 կմ դժվարին մարտական ճանապարհ, այդ ընթացքում ոչնչացրեց հակառակորդի 550 զինվոր ու սպա, գրավեց մեծ քանակությամբ զենք ու ռազմամթերք։ Դիվիզիան մասնակցեց Գեորգիևսկ, Միներալնիե Վոդի, Դուբովայա Բալկա, Տատարսկայա, Ստավրոպոլ, Տիխորեցկ, Պավլովսկայա, Կուշչովսկայա, Գարբուզովայա Բալկա և տասնյակ այլ քաղաքների ու հարյուրավոր բնակավայրերի ազատագրմանը (Архив Министерства обороны СССР, ф. 987, от. 480831, д. 1, л. 1—7)։

Փետրվարի 8-ին դիվիզիայի առաջապահ զորամասերը, անցնելով Լիմանի ճահիճները, հասան Գարբուզովայա Բալկա բնակավայրը և կանգ առան, սպասելով մյուս զորամասերի ու թիկունքային ծառայությունների մոտենալուն։ Այդ ժամանակ 58-րդ բանակի հրամանատարությունից հրաման ստացվեց՝ «Երկու գնդերով շարունակել հարձակումը, գրավել Նովոջերելիևսկայա և Պոդի բնակավայրերը, այնուհետև դուրս գալ Ռոգովսկայա բնակավայրը»։

Դիվիզիայի հրամանատարությունն սկսում է հրամանի կատարումը։ 390-րդ գունդը, հրետգնդի մեկ դիվիզիոնի հետ, աջ թևով հարձակվում է Նովոջերելիևսկ կայարանի և գյուղի վրա։ Գնդի հետ էին դիվիզիայի հրամանատար Ա. Վասիլյանը և զինկոմ Խ. Հակոբջանյանը։ 400-րդ գունդը, մեկ հրետանային դիվիզիոնի հետ, հարձակվում է ձախ թևով Պոդի գյուղի վրա։ Գնդի հետ էին դիվիզիայի հրամանատարի տեղակալ Ե. Կարապետյանը և քաղբաժնի պետ Լ. Վարդանյանը, 526-րդ գունդը մնում է Գարբուզովայա Բալկայում, որպես ռեզերվ։ Փետրվարի 9-ի լույս 10-ի գիշերը 300-րդ գնդի ստորաբաժանումները գրավում են Նովոջերելիևսկայա գյուղի մի քանի տներ։

Սակայն պարզվում է, որ գյուղում կան գերմանական մոտոմեքենայացված ուժեղ զորամասեր, որոնք, նկատելով դիվիզիայի մոտենալը Նովոջերելիևսկայային, նախ ուժեղ հրետանային և ականանետային կրակ են բացում, հետո մարտի մեջ մտցնում գնդացրային ու ավտոմատավորների ստորաբաժանումներ։ Գնդի հրամանատար, մայոր Գ. Իսախանյանը զոհվում է։ Այդ ծանր պահին, գրել է դիվիզիայի շտաբի պետ Ֆ. Պոլտավեցը, Ա. Վասիլյանն անձամբ, զենքը ձեռքին նետվում է թշնամու դեմ և ոչնչացնում մի քանի ֆաշիստների։ Մարտիկներն ու հրամանատարները, քաջալերված դիվիզիայի հրամանատարի արիությամբ, սկսում են դիմագրավել թշնամուն։ Այդ մարտում զոհվում է գնդապետ Արտաշես Վասիլյանը, որի մարտական ուղին սկըսվել էր Բաքվի կոմունայի բարիկադներից։

400-րդ գնդի ստորաբաժանումները, հասնելով Պոդի բնակավայրը, ընդհարվում են գերմանական մոտոմեքենայացված զորամասի հետ, որն ուժեղ հակագրոհով կասեցնում է նրանց գրոհը և ծանր կորուստներ պատճառում։

Վերադաս հրամանատարությունը և ՀԿԿ Կենտկոմը միջոցներ ձեռնարկեցին 89-րդ դիվիզիան համալրելու, նրա մարտունակությունը բարձրացնելու համար։ Դիվիզիայի հրամանատար նշանակվեց գնդապետ (հետագայում՝ գեներալ-մայոր) Նվեր Սաֆարյանը։ Դիվիզիան վերախմբավորեց ուժերը և պատրաստվեց նոր մարտերի։ Դրանից հետո սկսվեց դիվիզիայի պատմության նոր շրջանը, որն ընդգրկում է 1943 թ. աշնանը Թամանում և 1944 թ. առաջին կեսին Կերչում ու Սևաստոպոլում մղված մարտերին նրա ունեցած մասնակցությունը։ 1943 թ. օգոստոսին դիվիզիան ընդգրկվում է 18-րդ բանակի կազմի մեջ։ Սեպտեմբերի 3-ին նրա զորամասերը մտնում են մարտի մեջ և մասնակցում Սախարնայա Գոլովա, Դուգայա, Վերխնի Բականսկ քաղաքների ու դրանց շրջանների ազատագրմանը, գրոհում են Նովոռոսիյսկի ճանապարհների թշնամու կուտակած պաշտպանական գծերի վրա, իսկ 1943 թ. հոկտեմբերի 9-ին հաղթանակով ավարտում Թամանյան թերակղզու ազատագրումը և ստանում «Թամանյան» անվանումը։ Նոյեմբերի 21—25-ին դիվիզիան դեսանտով անցնում է Կերչի նեղուցը, մասնակցում քաղաքի և թերակղզու ազատագրման համար մղված ծանր մարտերին, իսկ 1944 թ. մայիսին՝ Սևաստոպոլի ազատագրմանը։ Նրա երկու գնդերն արժանանում են «Սևաստոպոլյան» անվանմանը։

Փառապանծ 89-րդ Թամանյան դիվիզիայի պատմության վերջին շրջանն ընդգրկում է Լեհաստանի ազատագրման և Բեռլինի գրավման համար մղած մարտերը։ 1944 թ. օգոստոսին դիվիզիան Ղրիմից մեկնեց հյուսիս, մտավ 1-ին բելոռուսական ռազմաճակատի զորքերի կազմի մեջ, մասնակցել Լեհաստանի տասնյակ քաղաքների ու շրջանների ազատագրմանը, այնուհետև աչքի ընկավ Օդեր—Ֆրանկֆուրտի հենակետում մղված մարտերում և, վերջապես, բարձր կազմակերպվածություն, վարպետություն ու անօրինակ հերոսություն հանդես բերեց Բեռլինի ճակատամարտում։

Դիվիզիան անցավ 3.700 կմ պայքարի ուղի՝ Թերեքի ափերից մինչև Էլբա։ Այդ ընթացքում նա ոչնչացրեց հակառակորդի 9000 զինվոր ու սպա, 148 տանկ, 300 հրանոթ, գերի վերցրեց 11 հազար զինվոր ու սպա և գրավեց մեծ քանակությամբ զենք ու ռազմամթերք։ 89-րդ Թամանյան դիվիզիայի անձնակազմից Հ. Ավետիսյանը, Ս. Առաքելյանը, Ջ. Կարախանյանը, Ս. Բաղդասարյանը, Խ. Խաչատրյանը, Վ. Առուստամյանը, Ա. Հարությունյանը, Հ. Մկրտչյանը և Հ. Բաբայանն արժանացան Սովետական Միության հերոսի կոչման, իսկ 7.333 զինվոր ու սպա՝ կառավարական բարձր պարգևների։ 98-րդ Թամանյան հայկական դիվիզիան պարգևատրվեց Կարմիր աստղի, Կարմիր դրոշի և սպա՝ Կուտուզովի 2-րդ աստիճանի շքանշաններով։

Հաջորդ հայկական զորային կազմավորումը 408-րդ հրաձգային դիվիզիան էր։ Այն կազմակերպվեց Երևանում, 1941 թ. ամռան ամիսներին։ Նրա կազմը համալրեցին սովետական բազմազգ ժողովուրդների զավակները։ 1942 թ. փետրվար-մարտին դիվիզիան վերակազմվեց հայկական զորային միավորման։ Դիվիզիայի անձնակազմի 80 տոկոսը կոմունիստներ ու կոմերիտականներ էին։

1942 թ. սեպտեմբերի 13-ին դիվիզիան Երևանից մեկնեց ռազմաճակատ։ Դիվիզիային ճանապարհողների մեջ էր նաև Ավետիք Իսահակյանը, որը ողջերթի խոսքեր ասաց հայ ռազմիկներին։ Տուապսեում նրանց ընդունեցին Սևծովյան զորախմբի ռազմական խորհրդի ներկայացուցիչները։ Ռազմաճակատ հասնելու առաջին իսկ օրը գումարվեց դիվիզիայի կուսակցական ակտիվի ժողովը, որտեղ քննարկվեցին դիվիզիայի մարտական խնդիրները։

1942 թ. սեպտեմբերի 16-ին դիվիզիայի զորագնդերը մարտի մեջ մտան Սև ծովի ափով դեպի Անդրկովկաս շարժվող հիտլերականների դեմ և մասնակցեցին Տուապսեի մատույցների պաշտպանության մարտերին։

1942 թ. նոյեմբերին սովետական բանակի Սևծովյան զորախմբի կազմում տեղի ունեցան վերակազմություններ։ 408-րդ հայկական հրաձգային դիվիզիան վերակազմվեց 7-րդ հրաձգային բրիգադի, որը շարունակեց մասնակցել հարձակողական մարտերին, ազատագրեց Խոլմսկայա, Ախտիրսկայա և Բերդովայա բնակավայրերը։ 1943 թ. մայիսին այդ բրիգադը միացվեց 23-րդ դիվիզիային, ուղարկվեց հյուսիս ու մասնակցեց Կուրսկի ճակատամարտին և ապա՝ Ուկրաինայի ու Լեհաստանի ազատագրման համար մղված մարտերին։

409-րդ հրաձգային դիվիզիան կազմակերպվել է պատերազմի առաջին ամիսներին, Գերագույն գլխավոր հրամանատարության դիրեկտիվով։ Կազմակերպական շրջանում դիվիզիայի հրամանատարն էր գնդապետ Ա. Վասիլյանը։ Դիվիզիայի զորամասերը համալրված էին գլխավորապես հայ մարտիկներով։ Մինչև 1942 թ. աշունը դիվիզիան զբաղված էր մարտական ու քաղաքական ուսուցման խնդիրներով և պետական սահմանի պաշտպանությամբ։ 1942 թ. դեկտեմբերի սկզբներին դիվիզիայի զորամասերը մեկնում են Հյուսիսային Կովկաս և մտնում 44-րդ բանակի կազմի մեջ։ Այդ ժամանակ դիվիզիայի հրամանատարն էր գնդապետ Վ. Գլադկովը։

Գերմանաֆաշիստական զորքերի ճնշման տակ մեր զորամասերը թողեցին քաղաքը և ետ քաշվեցին վաղօրոք նախապատրաստված պաշտպանական բնագծերը: Սակայն մեր զինվորները ոչ միայն չընկրկեցին թշնամու առջև, այլև տոկացին, իրենց արյան գնով խիզախորեն դիմագրավեցին նրան՝ պատճառելով մեծ կորուստներ: Ավելին, մեկ օր անց, հունիսի 23-ին սովետական զորամասերն անցան հարձակման, ետ գրավեցին քաղաքն ու հինգ օր այն պահեցին իրենց ձեռքում:

Այդ արյունահեղ կռիվներում իրենց փառքով պսակեցին Մադաթյանը և նրա քաջերը: Կոմունիստ հրամանատարը մարտերի ամենածանր ու վճռական տեղամասերում էր, այնտեղ, ուր վճռվում էր կռվի ելքը: Նա կուսակցական կրքոտ խոսքով ու անձնական օրինակով ոգեկոչում էր մարտիկներին, մղում նրանց սխրանքի: Այդպիսին էլ նա մնաց մինչև պատերազմի հաղթական վախճանը: Համագնդայինները վերհիշում են, թե այդ ծանր, օրհասական օրերին Մադաթյանի անվեհեր վարքագիծը ընդօրինակման ինչպիսի՜ օրինակ է ծառայել բոլորի համար: Չնայած որ կապիտանը վիրավորվել էր, բայց չթողեց ռազմի դաշտը և մինչև վերջ մնաց զինվորների հետ: Այդ օրերին դիվիզիայի քաղբաժինը լույս ընծայեց հատուկ թերթիկ՝ նվիրված քաջարի հրամանատարին, ուր կոչ էր արվում կռվել ու խիզախել Մադաթյանի օրինակով:

Պերեմիշլ քաղաքի պաշտպանությունը պատերազմի առաջին օրերի հերոսական դրվագներից է: Դա այն քաղաքն է, ուր մեր զորքերը մի քանի օրով կասեցրին զավթիչների առաջխաղացումը, շահելով այնքան թանկ ժամանակը՝ օրն ու ժամը և վերախմբավորեցին զորական ուժերը: Եվ ամենագլխավորն այն է, որ դա ռազմաճակատի այդ հատվածում ֆաշիստական Գերմանիայի այսպես կոչված կայծակնային հարձակման ձախողումն էր և նրան հասցված ԱՌԱՋԻՆ ՀԱԿԱՀԱՐՎԱԾԸ: Եվ առաջինը պատերազմում 99-րդ հրաձգային դիվիզիան պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով: Մարտական այդ բարձր պարգևին արժանացավ նաև Մաթևոս Մադաթյանը՝ մարտերը հմտորեն վարելու և ցուցաբերած անձնական սխրանքի համար: Նա պատվով բռնեց ազատագրական պատերազմի առաջին դաժան քննությունը:

Այսպես գրվեց հայրենիքի ազատության ու պատվի համար հայոց լեռնաշխարհի լավագույն զավակներից մեկի մարտական տարեգրության առաջին էջը: Շուտով, դեռևս լիովին չապաքինված, նա մեկնեց ռազմաճակատ՝ ստանձնելով հրաձգային գնդի հրամանատարությունը: Չնայած մեր զորքերի աճող դիմադրությանը և հակառակորդի լուրջ կորուստներին, վերջինս հրով ու սրով խորանում էր մեր երկրի կենտրոնական մարզերը: Պաշտպանական այդ թեժ կռիվներում Մադաթյանը 1942 թվականի հունվարի 20-ին ծանր վիրավորվեց և շուրջ կես տարի բուժվեց հոսպիտալներում:

1942 թվականի կեսերին մարտեր էին մղվում Ստալինգրադի հեռավոր մատույցներում, միջին Դոնի շրջանում: Գերմանաֆաշիստական զորքերը մեծ ուժերով ձգտում էին գետանցել Դոնը և դուրս գալ մայր Վոլգայի ափերը, շրջափակել և ապա գրավել ռուսական փառքի քաղաքը: Ստալինգրադի համար մղվող հերոսական ճակատամարտում նոր ուժով դրսևորվեցին 14-րդ գվարդիական դիվիզիայի 36-րդ գվարդիական հրաձգային գնդի հրամանատար մայոր Մ. Մադաթյանի հրամանատարական վարպետությունն ու ձիրքը: Գնդի առջև խնդիր էր դրված իր բնագծում կասեցնել հակառակորդի հետագա առաջխաղացումը և հակագրոհների միջոցով արյունաքամ անել թշնամուն:

Թերթում եմ այդ օրերի ռազմաճակատային թերթերը: Լակոնիկ, հակիրճ տողեր, մարտերի հերոսական դրվագներ: Դրանք արտացոլում են մեր ռազմիկների սխրալից գործերի հերոսապատումը: Մենք նրանց էջերից իրազեկ ենք դառնում նաև Մ. Մադաթյանի և նրա գվարդիականների հայրենասիրական ոգորումներին, սխրագործություններին:

Ահա մի դրվագ. 1942 թվականի օգոստոսի 17-ին գնդի ռազմիկները, ընթացքից, սրընթաց հարվածով ճեղքելով գերմանացիների պաշտպանությունը, գետանցեցին Դոնը և խրամատավորվեցին նրա արևելյան ափին: Երեք օր անց, հրետանային ու ականանետային նախապատրաստությունից հետո, նավակներով, ինքնաշեն լաստերով և լողալով գվարդիականներն անցան գետի արևմտյան ափը՝ Ջիմովսկի—Կրուշովսկի գյուղերի տարածքում և, կոտրելով թշնամու կատաղի դիմադրությունը, գրավեցին նրա ուժեղ ամրացված հենակետը: Առանձնապես կատաղի բնույթ էին կրում մարտերը N բարձունքի համար: Գնդի հրամանատարը մի խումբ մարտիկներով մոտ 60 ժամ գնդացիրներով և նռնակներով ետ էր մղում **ֆաշիստների** բազմաթիվ գրոհները: Զոհվեց գնդի կուսկազմակերպիչը, վիրավորվեցին շատերը, այդ թվում նաև Մադաթյանը, բայց իրենց ձեռքում պահեցին բարձունքը մինչև որ նրանց օգնության հասան: Այդ մարտերում սպանվեց հակառակորդի 300 զինվոր: Մադաթյանի մարտիկներն ու օգնական ուժերը գերեցին շուրջ հազար իտալացի ու գերմանացի զինվորներ ու սպաներ, այդ թվում գնդի շտաբը՝ լրիվ կազմով, վերցրին մեծ քանակությամբ ռազմավար:

Բարձր գնահատելով 36-րդ գվարդիական գնդի անձնակազմի ցուցաբերած մասսայական հերոսությունը՝ զորամասը պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով, իսկ նրա հրամանատարը՝ Լենինի շքանշանով: Մադաթյանի գվարդիականները քաջությամբ կռվեցին Ստալինգրադի անմիջական մատույցներում, այստեղ էլ նա վերըստին վիրավորվեց:

Ապաքինվելուց հետո Մ. Մադաթյանը վեց ամիս սովորեց Կ. Վորոշիլովի անվան բարձրագույն ռազմական ակադեմիայում և նշանակում ստացավ 4-րդ ուկրաինական ռազմաճակատում՝ որպես հրաձգային դիվիզիայի հրամանատարի տեղակալ: Ծանր վիրավորվելուց հետո հարկ եղավ ավելի քան ութ ամիս բուժվել հոսպիտալներում:

1944 թվականի ապրիլի 20-ին գվարդիայի փոխգնդապետ Մադաթյանը նշանակվեց վեցերորդ գվարդիական դիվիզիայի հրամանատարի տեղակալ, որի կազմում էլ նա անցավ մարտական փառքի ճամփաներով և պատերազմն ավարտեց Պրագայում: Սովետական ժողովրդի ազատագրական պայքարի կրակե բոցերում կոփվեց ու առնականացավ հայ քաջորդին, դարձավ զորավարելու հմուտ վարպետ: Եվ պատահական չէ, որ այդ դիվիզիայի նախկին հրամանատար, պաշտոնաթող գեներալ-մայոր Գեորգի Վասիլևիչ Իվանովն իր հուշերում մեծ ջերմությամբ է խոսել մարտական ընկերոջ ու բարեկամի՝ այդ արիասիրտ ու խիզախ, ուժեղ կամքի տեր ռազմիկ-հրամանատարի մասին, դրվագներ պատմել նրա սխրալի կյանքից:

...1944 թվականի հուլիս—օգոստոս: Հուլիսի 14-ին դիվիզիան մասնակցեց Բրոդի տակ հակառակորդի պաշտպանության ճեղքմանը, իսկ չորս օր անց Մ. Մադաթյանի հրամանատարությամբ գործող առաջավոր ջոկատն ընթացքից գետանցեց Արևմտյան Բուգը, ապա և, թիկունքից հարվածելով, ջախջախեց թշնամու գունդը, գրավեց Ռավա-Ռուսկայա քաղաքը: Այնուհետև ջոկատը ռազմաճակատի զորքերի մեջ առաջինը կտրեց-անցավ Լեհաստանի սահմանն ու գետանցեց Սանը: Ճակատագրի բերումով Մադաթյանը վերստին հայտնըվեց այդ նույն գետի ափին, ուր երեք տարի առաջ ստացել էր իր առաջին մարտական մկրտությունը:

Հետապնդելով ջախջախված թշնամուն, գվարդիական դիվիզիայի աջ թևի զորամասերը Մադաթյանի հրամանատարությամբ օգոստոսի 2-ին անցան Վիսլա գետը և առաջինը ոտք դրեցին Սանդոմիրյան պլացդարմ: Տասներկու օր շարունակ զորախումբն իր հատվածում ետ էր մղում ֆաշիստական զորքերի կատաղի գրոհները՝ նրան հասցնելով ծանր հարվածներ: Օգոստոսի 18-ին 1-ին Ուկրաինական ռազմաճակատի զորքերը գրավեցին Վիսլայի ձախակողմյան ափին գերմանացիների պաշտպանության կարևորագույն հենակետը՝ Սանդոմիր քաղաքը: Գերագույն գլխավոր հրամանատարի օգոստոսի 18-ի հրամանում այդ ճակատամարտում աչքի ընկած զորամիավորումների թվում հիշատակված էր նաև փոխգնդապետ Մադաթյանի զորախումբը: Դիվիզիան պարգևատրվեց Սուվորովի շքանշանով, իսկ Մադաթյանը՝ Կարմիր դրոշի շքանշանով:

1945 թվականի հունվարի 12-ին 1-ին Ուկրաինական ռազմաճակատի զորքերը Սովետական Միության մարշալ Ի. Կոնևի հրամանատարությամբ ձեռնամուխ եղան Վիսլա—օդերյան ստրատեգիական հարձակողական գործողություններին: Զորքերի գլխավոր հարվածային խմբավորման կազմում 6-րդ գվարդիական հրաձգային դիվիզիան, ճեղքելով հակառակորդի խոր էշելոնացված պաշտպանությունը, անցավ հարձակման: Գվարդիայի գնդապետ Մ. Մադաթյանի ղեկավարությամբ դիվիզիայի ուժեղացված ջոկատը, կազմված տանկային գնդից, հրետանային և ծանր ինքնագնացների դիվիզիոններից և հրաձգային երկու գումարտակներից, հետապնդելով թշնամուն, անցավ Գերմանիայի սահմանը և հունվարի 26-ին գետանցեց Օդերը: Ռազմական այդ գործողությունների ժամանակ ցուցաբերած արիության, հերոսության և զինվորական վարպետության համար դիվիզիան արժանացավ Լենինի շքանշանի, 13 գվարդիականների շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում, իսկ Մա-

դաթյանը պարգևատրվեց Լենինի շքանշանով: . . .

...1945 թվականի ապրիլ: Դիվիզիայի զորամասերն անցան Նեյսե գետը, իսկ նրա առաջավոր ջոկատը, գետանցելով Շպրեն, գրավեց չորս քաղաք: Այնուհետև ջոկատը համակենտրոնացման երկու ճամբարներից ազատեց տարբեր ազգերի 25 հազար ռազմագերիների:

1945 թվականի մայիսի 5-ի լույս 6-ի գիշերը եթեր հաղորդվեց տագնապալի մի ռադիոգիր՝ ուղղված կարմիր բանակին: «Օգնեցե՛ք, օգնեցե՛ք,— ասված էր նրանում,— շտապ օգնեցե՛ք»: Դա գերմանական օկուպանտների դեմ Պրագայի հերոսական ապստամբության մասնակիցների ձայնն էր: Արձագանքելով այդ կոչին՝ ռազմաճակատի զորքերը, կատարելով իրենց ինտերնացիոնալիստական առաքելությունը, մայիսի 6-ին արագացված ռազմերթով շարժվեցին դեպի Չեխոսլովակիայի մայրաքաղաքը և մայիսի 9-ի լուսաբացին գրոհով ազատագրեցին Պրագան, փրկեցին քաղաքը վերահաս կործանումից, ավերումից: Քաղաքի ազատարարներից էր նաև 6-րդ հրաձգային դիվիզիայի առաջավոր զորախումբը՝ Մադաթյանի հրամանատարությամբ:

Պաշտոնաթող գնդապետ Գարեգին Դաբաղյանը, որը մայիսի 9-ին գտնվում էր Պրագայում, իր հոդվածում գրել է, թե ինչպիսի ցնծությամբ ու սիրով քաղաքի բնակիչները դիմավորեցին իրենց ազատարարներին՝ սովետական ռազմիկներին: Այստեղ էլ նա, երկար տարիների ընդմիջումից հետո հանդիպեց վաղեմի մարտական ընկերոջն ու բարեկամին՝ Մաթևոս Մադաթյանին, որն իր ռազմիկներով առաջինը Պրագա մտնողներից մեկն էր: Ի պատիվ հայ ռազմիկի, եղբայրական Չեխոսլովակիայի մայրաքաղաքի փողոցներից մեկն անվանվել է նրա անունով:

Այսպես ավարտվեց բոցաշունչ հայրենասերի ու ինտերնացիոնալիստի մարտական ուղին: Հայրենական մեծ պատերազմում ցուցաբերած հերոսության ու խիզախության համար Մ. Մադաթյանը արժանացավ հայրենիքի բարձր պարգևների՝ Լենինի երկու, Կարմիր դրոշի երեք ու Կարմիր աստղի շքանշանների և մի շարք մեդալների, ինչպես նաև լեհական, չեխոսլովակյան և ամերիկյան վեց շքանշանների ու մեդալների: . . .

Պատերազմի հաղթական ավարտից հետո Մաթևոս Մադաթյանը շարունակեց իր ծառայությունը սովետական զինված ուժերում, սովորեց Մ. Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիայի դիվիզիայի հրամանատարների դասընթացներում: Իր ուժերի ծաղկման շրջանում, 1952 թվականին ծառայական պարտականությունների կատարման ժամանակ զոհվեց ավիադեսանտային դիվիզիայի հրամանատարը: Նրա աճյունը հանգչում է հայրենի գյուղում: Ի հիշատակ քաջարի ռազմիկ-հրամանատարի, Սառնաղբյուրի դպրոցը կրում է նրա անունը, իսկ բակում կանգնեցված է Մ. Մադաթյանի կիսանդրին:

Անիի շրջանի համեմատաբար ոչ մեծ գյուղից, Սառնաղբյուրից ֆաշիստական ոսոխի դեմ կռվի ելան շատ հայրենասերներ, որոնք անձնվիրաբար մարտնչեցին հանուն հայրենիքի ազատության ու հաղթանակի: Սակայն նրանցից շուրջ 150 մարտիկներ այնպես էլ տուն չվերադարձան, քաջի մահով ընկան ռազմի դաշտում: Եվ հավերժացան:

Գյուղի աշխատավորները սրբությամբ ու երախտագիտությամբ են պահպանում իրենց քաջարի զավակների անմահ հիշատակը: Կանցնեն տարիներ, տասնամյակներ, բայց ներկա ու գալիք սերունդների հիշողությունից երբեք չի ջնջվի Հայրենական մեծ պատերազմի հերոսների գործն ու սխրանքը:

*Հիշե՛նք բոլորին, անուն առ անուն,*
*Վշտով մեր հիշե՛նք բոլորին:*
*Այդ պետք չէ մեռյալներին,*
*Այն հարկավոր է ողջերին:*

Լավ է ասված: Եվ սառնաղբյուրցիները ջանում են իրենց աշխատանքային հայրենանվեր գործերով հավերժացնել նրանց պայծառ հիշատակը, իրենց արժանի ավանդը ներդնել հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործում...

**ՎՐ. ՍԱՐԳՍՅԱՆ**

---

## Նոր մարդու ձևավորման պրոբլեմներ

# ԸՆՏԱՆԻՔԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՀԻՄՔԵՐԸ

### (ՄԻ ՔԱՆԻ ՆԿԱՏԱՌՈՒՄՆԵՐ)

**Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**

Մարդու կյանքում իրենց ուրույն տեղն ունեն անձնական ոլորտը, ամուսնաընտանեկան հարաբերությունները: Պատահական չէ, որ սոցիալական իրականության մեջ կատարվող բոլոր փոփոխություններն այս կամ այն ձևով արտացոլվում են ընտանեկան հարաբերություններում: Զարմանալի ակներևությամբ ընտանիքն արձագանքում է ինչպես հասարակական-պատմական առաջընթացի հաջողություններին, նույնպես և դրա դժվարություններին ու հակասություններին: Հաճախ կարելի է լսել ընտանիքի պահպանողականության մասին: Դա սոսկ այն փաստի թյուր մեկնությունն է, որ հասարակությունում տեղի ունեցող անցքերն ընտանիքում յուրովի են բեկվում, որտեղ զգալի դեր են խաղում ավանդույթները, ժառանգված սովորույթները:

Մարդկային բնության էությունից բխող ամուսնական ու ծնողական սիրո հզոր զգացումներն ընտանիքում ստեղծում են առաջնային սոցիալականության այն անկրկնելի մթնոլորտը, որը երեխայի առջև բացում է մեծ, բարդ ու հակասական աշխարհի՝ մարդկության ու հասարակության դուռը: Իբրև հասարակական կյանքի բջիջ, ընտանիքը միավորում է ամուսիններին ու նրանց սերունդներին: Այստեղ է, որ մարդ ստանում է նախնական գիտելիքներ շրջապատող աշխարհի մասին, մշակում վարքագծի նորմերը:

Հարաբերություններն ընտանիքում մշտապես կրում են հասարակական-տնտեսական ու քաղաքական պայմանների կնիքը, որոնցում գոյավորվել է այն: Մասնավոր սեփականատիրության աշխարհում ընտանիքում հաստատվում են ամուսնու ու հոր բռնակալական իշխանությունը, կնոջ անհավասարությունը տղամարդու նկատմամբ: Այժմ էլ որոշ կապիտալիստական երկրներում ակնհայտ է կնոջ և տղամարդու խտրականությունը, կինը զրկված է քաղաքական իրավունքից, տղամարդկանց հավասար աշխատանքի համար ստանում է պակաս աշխատավարձ և այլն:

Սոցիալիստական հասարակությունում «Ընտանիքը,— ասված է ՍՍՀՄ սահմանադրության մեջ,— գտնվում է պետության պաշտպանության ներքո:

Ամուսնությունն կատարվում է կնոջ և տղամարդու կամավոր համաձայնությամբ, ամուսինները ամբողջովին իրավահավասար են ընտանեկան հարաբերություններում:

Պետությունը ընտանիքին օգնություն է ցույց տալիս մանկական հիմնարկությունների լայն ցանցի ստեղծման ու զարգացման, կենցաղի ծառայության և հասարակական սննդի կազմակերպման ու կատարելագործման, բազմազավակ ընտանիքներին նպաստներ և արտոնություններ տալու, երեխայի ծննդյան նպաստներ և արտոնություններ վճարելու միջոցով»:

Սովետական ընտանիքն իբրև հանրություն բնութագրվում է հասարակական շահերի նկատմամբ իր նվիրվածությամբ, և դա ստեղծում է այն բարոյական մթնոլորտը, որը համապատասխանաբար ձևավորում է երեխաների բնավորությունը:

Ի՞նչ են երեխաները մարդկության համար. ըստ կենսաբանության՝ մարդկային ցեղի անընդհատության պահպանում, ըստ պատմության՝ մարդկության գալիքը, նրա նոր քայլը ժամանակի ճանապարհին, ըստ տնտեսագիտության՝ ապագա արտադրող-

ների նոր ջոկատներ, ըստ սոցիոլոգիայի՝ մարդկանց նոր սերունդներ: Բոլոր այդ դերերը կենսական են ու կարևոր մարդկության համար:

Իմաստուն է այն թևավոր խոսքը, թե «երեխան տղամարդու հայրն է»: Իրոք, երեխաներն են այրին տղամարդ դարձնում, այդպիսին է այդ ինքնատիպ մտայնության իմաստը: Հոգատարությունն ուրիշի նկատմամբ, ձգտումը բարվոք դարձնել նրա կյանքը՝ անձնավորության հոգեկան խառնվածքի միջուկն է: Նման հոգատարությունը սոսկ բարոյահոգեբանական հատկանիշ չէ, ողջ մարդկայնության, հումանիզմի, մարդկային բարոյականության հիմնաքարն է այդ: Երեխան մեզ հնարավորություն է ընձեռում զգալու ուրիշների նկատմամբ իսկական մարդկային վերաբերմունքի չափանիշը, նրանց հույզերի ու շահախնդրությունների վերապրումի կարողությունը: Դա մարդու գլխավոր ցեղային հատկություններից է՝ մարմնավորված կոմունիստական հումանիզմի սկզբունքներում: Այդ առթիվ Կ. Մարքսը նկատել է. «Ուրիշ մարդկանց զգացումներն ու բնավորությունները դարձել են իմ սեփականը» (К. Маркс, Ф. Энгельс. Из ранних произведений, М., 1956, стр. 592):

Հասարակության մեջ երեխաները խաղում են համապարփակ դեր, նրանք իրենց դրությամբ մարդկային հարաբերությունների շրջանակում ավագներին դնում են այնպիսի իրավիճակում, որը (իհարկե, բարենպաստ սոցիալական պայմաններում) արթնացնում է բարոյական վսեմ հատկանիշներ: Երեխաներն ասես արարիչներ են, նրանք ընտանեկան համակարգում տալիս են այն, ինչ հասարակության համակարգում՝ սոցիալական կառուցվածքի բարձրագույն իդեալներն ու սկզբունքները: Նկատենք, սակայն, որ այդ դերը տարերային է, պոտենցիալ հնարավորություն: Ողջ ուժով դա դրսևորվում է լոկ այն ժամանակ, երբ հասարակական հարաբերությունները հիմնվում են սոցիալիստական սկզբունքների վրա:

Ամուսնաընտանեկան հարաբերություններում դրսևորվում են ո՛չ միայն սոցիալական իդեալները, նորմերը, արժույթները, այլև մարդկանց հոգեկան առանձնահատկությունները, նրանց բարոյական գիտակցությունը:

Մեր ժամանակներում խիստ փոխվում է մարդու հոգեբանության բնույթը, սակայն այդ փոփոխությունները երկկողմ են: Մի կողմից քաղաքայնացումն ու կյանքի ռիթմերի ծանրաբեռնվածությունը մարդկանց ներաշխարհում ծնում են պաշտպանական մեխանիզմներ— հոգեկան պրոցեսների ստանդարտացում, զգացումների բթացում: Մյուս կողմից, մարդկանց մեջ ավելի է զարգանում անհատականությունը, նրանցից շատերը դառնում են շեշտված անձնավորություններ: Ժամանակակից մարդու մեջ գիտակցության, զգացումների, վարքագծի անհատականացումը հավանաբար ամենահեռանկարային փոփոխումն է, որը կանանց մեջ առաջացնում է կյանքի բոլոր բնագավառներում ինքնարտահայտման, անձնական կատարելագործման նոր մղումներ:

Կնոջ կենսական դերերի ընդլայնումը հարստացնում ու բարդացնում է նրա ներքին պահանջմունքների ներկապնակը: Նախկին պահանջմունքների պարզությունը՝ ամուսին, երեխաներ, տուն, աստիճանաբար նոր երանգներ է ստանում: Կնոջ արժույթների նոր համակարգում երեխաները գրավում են առավել համեստ տեղ (հաճախ շատ ավելի համեստ): Նրանք դադարում են լինել վարկային և ոչ մրցակցային արժույթ: Այնուամենայնիվ, դա չի վերաբերում առաջին երեխային, որն անխախտ ու մնայուն արժույթ է, և նրա ծնունդը համարյա բոլոր առողջ մարդկանց մոտ ինքնին նախորոշված է: Սակայն այժմ կնոջ վարկը պայմանավորվում է ոչ թե երեխաների թվով, այլ իր բազում կենսական դերերի կատարման որակով: Ցավոք, այդ վարկը շատ ավելի պայմանավորված է աշխատանքային դերերով, քան դրա տնայինի հետ զուգակցումով:

Կնոջ կենսական դերերի աճը դժվարացնում է դրանցից յուրաքանչյուրի կատարումը՝ պահանջելով նրանից նյարդերի լարում, ուժ ու ժամանակ: Աշխատող կանանց մեծամասնության (հատկապես երիտասարդ մայրերի) բանվորական օրը կրկնակի է. մեկը՝ աշխատանքում, մյուսը՝ տանը: Հայտնի է նաև, որ տան գործը հիմնականում ընկած է կնոջ ուսերին: Եթե ընտանիքում պարտականությունները բաշխված են նրա բոլոր անդամների միջև (այդ թվում՝ երեխաների), ընտանիքն իրեն գիտակցում է իբրև կոլեկտիվ: Դրանից շահում են բոլորը. անցնում է կնոջ լարվածությունը և դժկամությունը, տղամարդն արժանանում է կնոջ ու երեխաների հարգանքին: Շատ էա-



կան է և այն, որ այստեղ է սկսվում երեխաների աշխատանքային դաստիարակությունը: Նրանք իրենց տեղն են գտնում ընդհանուր գործում:

Սովորաբար ընտանեկան դաստիարակության զինանոցը բնութագրվում է դրական ու բացասական հատկանիշներով. թելադրանք, խնամակալություն, առճակատում, չեզոքություն, համագործակցում: Իրողություն է, որ ծնողները, ելնելով դաստիարակության նպատակներից ու բարոյականության նորմերից, իրենց երեխաներին առաջադրում են պահանջներ: Սակայն դա պետք է զուգակցվի ընտանիքի կրտսեր անդամների հանդեպ առավելագույն վստահությամբ ու հարգանքով, այլապես պահանջկոտությունը կվերածվի կոպիտ ճնշման, հարկադրանքի:

Այն ծնողները, որոնք նախապատվությունը տալիս են հրամանին ու բռնությանը, անխուսափելիորեն բախվում են երեխայի դիմադրությանը, որը դրան պատասխանում է իր հակառակ միջոցներով— երեսպաշտություն, խաբեություն, կոպտություն, պոռթկում, իսկ երբեմն էլ՝ բացահայտ ատելություն: Սակայն նույնիսկ, եթե հաղթահարված է դիմադրությունը, դա կասկածելի հաղթանակ է: Քամահրվում են ապագա քաղաքացու հոգեկան խառնվածքի շատ արժեքավոր հատկանիշներ՝ ինքնուրույնություն, արժանապատվության զգացում, նախաձեռնություն, հավատ սեփական անձի հնարավորությունների նկատմամբ: Մի՞թե դա չէ պատճառը, որ ծնողներին տագնապ է պատճառում իրենց զավակների բնավորության անցանկալի հատկանիշների ձևավորումը:

Թելադրանքը ենթադրում է բռնություն, հրաման, իսկ խնամակալությունը՝ գերհոգատարություն, դժվարություններից պատսպարում: Սակայն արդյունքը շատ բանում համընկնում է: Երեխաների մոտ բացակայում են ինքնուրույնությունը, նախաձեռնությունը, նրանք, այսպես թե այնպես, մեկուսացված են իրենց անձին վերաբերող հարցերի լուծումից, ավելին՝ ընտանիքին վերաբերող ընդհանուր պրոբլեմներից: Մարդուն ավելի հեշտ է կործանել չափից ավելի խնամակալությունից, քան երջանկացնել: Այն ծնողները, որոնք մշտապես հոգ են տանում, որպեսզի երեխան զերծ մնա կյանքի դժվարություններից, նրա վրա չփչի միջանցիկ քամին ընտանեկան ջերմոցում, հարազատ զավակին դարձնում են նրբատենչ ու փափկասուն:

Առճակատման պայմաններում դժվար թե ընտանիքում հաստատվի խաղաղություն, ստեղծվում է նյարդային վիճակ, փոխադարձ վիրավորանքը մղում է կողմերին նկատելու միմյանց սխալները միայն, լարվելու իրար դեմ: Նման իրավիճակում երկու կողմերն էլ պարտության են ենթակա: Երեխաների հասունացման հետ «սառը պատերազմը» վերածվում է «տաքի»: Կողմերի ուժերը հավասարվում են. կոպտությունը՝ կոպտությամբ, չարախնդությունը՝ չարախնդությամբ: Մանկավարժական կրախի հետևանքը՝ ընտանիքի կործանումը: Խաղաղ գոյակցության մթնոլորտում ծնողներն աշխատում են, երեխաները սովորում, յուրաքանչյուրն իր գործն ունի, իր հոգսերը: Չեզոք իրադրության պայմաններում երեխան աճում է անկախ ու ազատ, սակայն նրա համար ընտանիքն իբրև հուզական մագնիտ, կենտրոնաձիգ օջախ դադարում է գոյություն ունենալուց: Վաղ թե ուշ հասնելու է կրիտիկական պահը. դժբախտություն, հիվանդություն, դժվարություններ: Այդ ժամանակ է, որ պահանջվում է երեխայի օգնությունն ու մասնակցությունը, սակայն նա արդեն դարձել է անհոգի էգոիստ:

Համերաշխ ընտանիքում տիրում է համագործակցություն, նրա անդամները միասին են և՛ ուրախության, և՛ վշտի պահին: Համատեղ ապրումները, հույսերը, երազանքները համախմբում են ընտանիքը, ամրապնդում նրա հիմքերը: Բարու, ջերմության, հարգանքի մթնոլորտն ինքնաբերաբար չի ստեղծվում, այն ամուսնու, կնոջ, երեխաների համատեղ ջանքերի արդյունք է: Անցյալի գերդաստանը խարսխված էր տղամարդու անառարկելի իշխանության վրա, որից սկզբունքորեն տարբերվում է սոցիալիստական ընտանիքը: Ազատության ու սոցիալական հավասարության պայմաններում ամուսինների ու երեխաների սերը, հարգանքը, փոխըմբռնումը, նրանց ձգտումների ու պահանջմունքների ներդաշնակությունը դարձել են ամուսնության կարևոր գործոններ: Բարեկամության մեջ մարդիկ պահանջ են զգում հաղորդակցվելու, հանրօգուտ գործում միաբանվելու: Ընտանիքում, դրանից զատ, մարդիկ իրար են պատկանում: Սակայն «իրար պատկանել» արտահայտությունը բնավ չի նշանակում մարդուն տիրելու իրավունք, ինչպես, ասենք, իրերին: Այս ենթադրում է բարոյական

պատասխանատվության բարձրագույն աստիճան: Որքան մարդ նրբազգաց է կյանքի ընկերոջ նկատմամբ, այնքան նա երջանիկ է, չէ որ սիրվողը նույնպես համակված է նույն զգացումներով: Սիրո մեջ չեն ստուգում, հավատում են: Հիրավի, մարդու որպիսությունն ընտանիքում բնութագրում է նրա իսկական բարոյական կերպարը: Ամուսիններից յուրաքանչյուրի ես-ի վերածումը մենք-ի միանգամից տեղի չի ունենում: Միայն ընտանեկան հաղորդակցման բովանդակության ու ձևի կատարելագործմամբ, ընտանիքի անդամների միջև ներդաշնակ հարաբերությունների զարգացմամբ, քաղաքացիական հասունությամբ է հնարավոր իրողություն դարձնել այն: Ընտանիքներում, որտեղ բացակայում են շահերի ընդհանրությունը և հուզական ներդաշնակությունը, ամուսիններն իրենց չբավարարված են զգում, համարելով իրենց դաշնադրությունն անհաջող, որը, եթե պահպանվում է, միայն՝ երեխաների առկայությամբ, ավանդույթների ուժով: Երջանիկ ընտանիքներում հատկապես կարևորվում են ամուսինների շահերի ընդհանրությունը և մտերմությունը: Դա, անշուշտ, չի նշանակում, թե երեխաներն այլևս մեծագույն արժեք չեն: Նման ընտանիքներում հաճախ է ցանկություն առաջանում ունենալ երկրորդ, երրորդ երեխան, որոնք առավելապես բարոյահոգեբանական պահանջմունք են և ոչ տնտեսական գործոն, ինչպես անցյալում: Այս պարագայում է լիովին իրականացվում դաստիարակչական ֆունկցիան, որտեղ իշխում է երջանկության, փոխըմբռնման, պատասխանատվության մթնոլորտը:

Ընտանեկան բարօրությունը լայն ու տարողունակ հասկացողություն է: Այն հիմնվում է ո՛չ միայն սիրո, հարգանքի, փոխըմբռնման, այլև նյութական հիմքի վրա, որի կառավարումն ամուսիններից պահանջում է տնտեսական օրենքների իմացություն: Չէ՛ որ ընտանիքի նյութական հիմքերն այսօր այն չեն, ինչ առաջ: Ընտանիքի յուրաքանչյուր անդամին հատկացվող հիմնական ֆոնդերն այժմ անհամեմատ շատ են, քան երեսուն տարի առաջ: Ընտանիքի էկոնոմիկան սերտորեն միահյուսվում է բարոյաէսթետիկական պրոբլեմների հետ: Այստեղ առավել առարկայական է դրսևորվում տնտեսական հարցերի հոգեբանական կողմը, քան արտադրության մեջ, աշխատանքային միջավայրում:

Հարկ է մշակել վարքագծի այնպիսի ոճ, որ խնայողությունը չվերաճի ժլատության, հաշվենկատությունը՝ եսապաշտության, առատաձեռնությունը՝ շռայլության: Տնտեսավարմանը հասու անձն ընդունում է խելամիտ, բարոյապես անսխալ որոշումներ, չդիմելով հաշվեմատյանին, ճիշտ այնպես, ինչպես իրոք գրագետ, դաստիարակված անձը մտքերը շարադրելիս չի դիմում բառարանի օգնությանը: Տնտեսավարմանը տիրապետելը տևական պրոցես է, այն պետք է սկսել փոքրուց: Էկոնոմիկայի, խնայողության, տնտեսությունը խելամիտ վարելու հարցերը պետք է պատշաճ արտացոլում գտնեն դպրոցական ծրագրերում:

Հաճախ է վիճարկվում այն դրույթը, թե հնացել է «ընտանիքի գլուխ» հասկացությունը, թե այն մշտապես պետք է գլխավորի ընտանիքի ազգանվանակիրը՝ տղամարդը: Մինչդեռ կյանքը վկայում է, որ այստեղ և ցանկացած կոլեկտիվում գլխավորը կոչված է լինել ու փաստորեն դառնում է գործիմաց, փորձված անձը, որն ունակ է ընդունելու և կենսագործելու պատասխանատու որոշումներ: Գլխավորելու ֆունկցիան ամուսիններից մեկի վրա հաստատելը ցանկացած արդյունքին չի հասնում: Սոցիալիստական իրականության մեջ առկա են ընտանիքի գլխավորման մի քանի ձևեր: Եթե առանձին ընտանիքներում գլխավորը տղամարդն է կամ կինը, ապա կան նաև ընտանիքներ, որտեղ ամուսինները հավասարապես, համատեղ մասնակցում են ընտանեկան կյանքի կառավարմանը: Կան նաև այնպիսի զույգեր, որոնք իրար միջև աշխատանքի հստակ բաժանում են կատարում: Հարց է ծագում, թե ընտանիքի գլխավորման ո՛ր տիպն է ստեղծում լավագույն պայմաններ մարդու երջանկության, ամուսնական կապերի ամրապնդման համար, դրանցից ո՛րը մեծ չափով է համապատասխանում սոցիալական հարաբերությունների կատարելագործման միտումներին: Դիտարկումները վկայում են, որ այն ընտանիքներում, ուր գոյություն ունեն ընտանիքի գլխավորի վերջին երկու տիպերը, ավելի հաճախ է ստեղծվում վստահության, փոխըմբռնման ու փոխադարձ օգնության մթնոլորտ, քան առաջին երկու ավտորիտար հարաբերությունների պայմաններում: Ինչ խոսք, դա չի բացառում և այն, որ նման ընտանիքներում նույնպես հնարավոր է բարենպաստ իրադրություն հաստատել: Կարևոր է, որ այդ ընտանիքը գլխավորի այնպիսի անձնավորություն, ով



ընդունակ է տանն ստեղծելու ջերմության, վստահության, իսկական համագործակցության մթնոլորտ:

Ուսումնասիրությունները վկայում են, որ երջանիկ ամուսնական կյանքի գրավականներն են փոխըմբռնումն ու նրբազգացությունը, փոխադարձ հարգանքն ու վստահությունը, երեխաների դաստիարակության գործին ամուսնու մասնակցությունը: Ընտանիքի ամրապնդման վրա բացասաբար է ազդում հոգատարության, պատասխանատվության, փոխըմբռնման, նրբազգացության բացակայությունը: Այսօր ամուսիններն իրարից ակնկալում են վերապրումի պահանջմունքի բավարարում, էմոցիոնալ արձագանք, ինչպես և շահագրգռությունների ու սոցիալական ձգտումների ընդհանրություն:

Նման իրադրությունում հատուկ նշանակություն է ստանում ո՛չ միայն սովետական մարդկանց հոգևոր զարգացման բարձր մակարդակը, այլև ընտանեկան կյանքին երիտասարդությանը նախապատրաստելը, մի բան, որի կարիքը խիստ զգալի է լինում հատկապես ամուսնական կյանքի սկզբնավորման շրջանում, երբ ամուսիններից յուրաքանչյուրի սպասումները չեն համընկնում կյանքի ռեալ իրադրություններին, երբ կողմերն անկարող են աննշան հուզական կորուստներով հաղթահարելու բռնկվող կոնֆլիկտները:

Փոխադարձ համակերպման բարդության հետ հատկապես հաճախ են բախվում ամուսնական կյանքի առաջին օրերին, երբ դեռևս չկա համատեղ կյանքի փորձ: Ընտանեկան կենցաղը, հոգևոր-հուզական հաղորդակցման հարանուն պահանջմունքը ենթադրում են, որ ամուսինները հարաբերակցեն իրենց շահագրգռությունները, ճաշակներն ու սովորությունները, կարողանան զիջել կոնֆլիկտային իրավիճակում, ներողամիտ վերաբերվել կողակցի թուլություններին, պատրաստ լինեն հաղթահարելու սեփական թերությունները: Մերձավորների բարօրության համար հոգալն ընտանեկան դաշինքի ամրապնդման երաշխիք է: Ընտանիքում օբյեկտիվության սահմաններում պետք է անպայման բավարարվի մարդ անհատի բաղձալի սպասումներից մեկը՝ ընտանիքի անդամների կողմից հավուր պատշաճի գնահատվի սեփական անձի իրական արժեքը, նշանակությունը: Ամուսիններից մեկի արժանապատվության ոտնահարումը կամ նրա նկատմամբ կասկածամտությունը կարող են հանգեցնել ոչ լիարժեքության կոմպլեքսի առաջացման, հետևաբար ամուսինների փոխհարաբերությունների տևական խանգարման: Նման պայմաններում մարդու մոտ առաջանում են անվստահության, թերհավատության զգացում սեփական ես-ի հնարավորությունների ու կարողությունների հանդեպ, չպատճառաբանված խանդ, չգիտակցված և բարոյապես չհիմնավորված ցանկություն՝ անվերջ «պարզելու հարաբերությունները», անհարկի ուրիշներին վիրավորելու ձգտում:

Ամուսինների միջև փոխհարաբերությունները բարդանում են և այն պատճառով, որ դրանք դրսևորվում են հիմնականում առօրեական մթնոլորտում: Կ. Մարքսը նկատել է, որ մշտական շփումը ծնում է միապաղաղություն, ավելի տեսանելի են դառնում կյանքի «մանրուքները», իսկ խոր կրքերը օբյեկտի մոտիկության հետևանքով հանդարտվում են: Ամուսնական կապերում բացահայտվում են նրանցից յուրաքանչյուրի բնավորությունն ու սովորությունները: Եվ այստեղ շատ կարևոր են նրանց հոգևոր խառնվածքների մերձեցումը, հետաքրքրությունների ընդհանրությունը: Վերջիններիս բացակայությունը նպաստում է կոնֆլիկտային իրավիճակների առաջացմանը: Հանրահայտ է, որ ընտանիքում անվերջանալի մանր խռովությունները, փոխադարձ վիրավորանքներն աննկատելիորեն թուլացնում են միասնությունը, հանգեցնելով նրան, որ ամուսիններն անկարող են լինում կատարել իրենց կարևորագույն ֆունկցիան՝ երեխաների դաստիարակությունը, կորցնում են իրար նկատմամբ փոխադարձ հարգանքը, խամրում են զգացմունքները: Նման պարագաներում փաստորեն անէանում է ընտանիքը: Սոցիոլոգների տվյալներով ամուսնական կյանքի առաջին տարիների փորձը վկայում է, որ նույն պրոբլեմները տարբեր ընտանիքներում յուրովի են լուծվում:

Առողջ ընտանեկան հարաբերությունների ստեղծումն անհնար է առանց բարոյահոգեբանական գիտելիքների իմացության, որոնք նպաստում են ամուսինների փոխադարձ համակերպմանը: Այստեղ մեծ նշանակություն ունի ամուսինների պատրաստակամությունը փոխադարձաբար նշելու յուրաքանչյուրի առավելությունները: Այդ

ուժեղացնում է վստահությունը սեփական ուժերի, կողակցի հանդեպ, հաստատվում է զգացմունքների կայունություն: Այդպիսի փոխհարաբերությունները երաշխիք են՝ հաղթահարելու անվստահությունն ամուսնության ապագայի նկատմամբ, ամրապնդում են ընտանիքը: Իդիլիա, հեքիաթային անուրջներ չէ համատեղ կյանքը: Ամեն ինչ պատահում է ընտանիքում. բախումներ, կոնֆլիկտներ... Հավանաբար դրանք անխուսափելի են: Համատեղ կյանքի արվեստն ուսուցանում է ժամանակին հաղթահարել դժվարությունները, ելք գտնել բարդ իրադրություններում: Ընտանիքի կոդեքսը, նրա ներքին կյանքի կանոնակարգը կոչված են նախատեսելու հնարավոր կոնֆլիկտների թույլատրելի սահմանները: Դուրս գալ այդ սահմաններից, նշանակում է խախտել ընտանեկան հիմքերը:

Ցավոք, կոնֆլիկտների կործանարար հետևանքները հաճախ չեն համապատասխանում դրանք հարուցող պատճառներին: Վճռական դեր է խաղում մարդկանց՝ կոնֆլիկտից արժանավայել դուրս գալու կարողությունը: Լարված իրավիճակում հատկապես երիտասարդ ամուսինները հաճախ ի հայտ են բերում աններելի կամակորություն, խույս տալով զիջումից, որը, իբր, թուլության նշան է: Ընդհակառակը, որքան ուժեղ է մարդը, այնքան բնորոշ է նրան զիջելու պատրաստակամությունը, որովհետև իսկական ուժը մեծ չափով առնչվում է պատասխանատվության զգացումի հետ:

Երբ անդրադառնում ենք ընտանիքի ֆունկցիաներին, առաջին հերթին նկատի ենք առնում դաստիարակչականը: Սակայն այստեղ խոսքը միայն այն մասին չէ, որ ընտանիքը աճեցնում է, ոտքի կանգնեցնում երեխաներին, ձևավորում է ապագա քաղաքացիներին: Օրեցօր, տարեցտարի ընտանիքում տեղի է ունենում իրենց՝ ամուսինների դաստիարակության ու ինքնադաստիարակության բարդ պրոցես: Եվ արդյունքը ո՞չ միայն ընտանեկան երջանկությունն է: Մարդն ավելի լավն է դառնում, նա դուրս է գալիս ընտանիքի սահմաններից, մուտք գործում աշխատանքային, հասարակական գործունեության ասպարեզ, որի էությունն է դարձել հոգատարությունը այլոց նկատմամբ, սեփական ցանկություններն ու պահանջմունքները ներդաշնակելով ուրիշների ձգտումների, կոլեկտիվի, հասարակության նպատակների հետ:

Ընտանեկան երջանկությունը բախտի պարգևը չէ, ոչ էլ պատահականության արդյունք. այն սեփական ջանքերի, բանականության ու բարության, խոր զգացմունքների ու բարձր կուլտուրայի արգասիք է: Ամուսնությունն առավելապես հավասարների միություն է, հավասար՝ զգացմունքների նրբությամբ, ինտելեկտով, աշխարհըմբռնմամբ, ինչպես և արտաքինով: Անչափ մեծ հավակնություններ ունեցողը, ցավոք, միայնակ է մնում:

Անանջատ է ամուսնական ու ծնողական պարտքը, քանզի ընտանիքն ստեղծում են ոչ թե լոկ տղամարդու և կնոջ, այլև հոր ու մոր հարաբերությունները: Անտրոհելի է նաև ամուսնական ու ծնողական սերը: Երեխաներ ունեցող ընտանիքը, որը խարսխված է սիրո վրա, սովորաբար հոգևոր առումով ավելի հարուստ ու ամուր է, քան անզավակ ընտանիքը: Երեխան ավելացնում է հոգսերի բեռը, սակայն բազմապատկում է էմոցիոնալ կապերի ուժը, ավելի սերտ ու բազմազան դարձնում ընտանիքի ու հասարակության առնչությունները:

Բուրժուական որոշ տեսաբանների կարծիքով, մարդկությանը սպասվում է սոցիալական կյանքում կատարել մի նոր քայլ— աստիճանաբար ընտանիքը փոխարինել անձնավորությունների «ազատ կենակցումով»: Դժվար չէ հասկանալ, թե ինչի վրա է հիմնվում նման «գուշակությունը»: Գերմանացի հայտնի հոգեբան Օ. Ռյուլեն նկատել է, որ այժմ բուրժուական հասարակությունը հուսախաբ կանգնած է ընտանեկան ջարդած տաշտակի առաջ և սարսափով նայում է «ժամանակակից ամուսնական հարց» կոչվող աղետալի թշվառությանը:

Ի հակադրություն կապիտալիզմի, զարգացած սոցիալիստական հասարակության մեջ, ինչպես շեշտված է ՍՍՀՄ սահմանադրությունում, սոցիալական քաղաքականության նպատակն է աշխատավորների բարեկեցության, կուլտուրայի, սոցիալական ակտիվության բարձրացումը: Սոցիալական քաղաքականության յուրաքանչյուր բնագավառ ուղղակի կամ անուղղակի, անմիջականորեն կամ միջնորդավորված նպաստում է ամուսնության ամրապնդմանը, ընտանեկան կյանքի մթնոլորտի հարըստացմանը, ընտանիքի սոցիալ-բարոյական գործունեության վերելքին: Այդուհանդերձ տակավին քիչ չէ այն մարդկանց թիվը, որոնք ապերջանիկ են անձնական կյանքում:



Սովետական հասարակայնությանը հատկապես անհանգստացնում է երկրի մի շարք շրջաններում ամուսնալուծությունների բարձր տոկոսը և ծնելիության նվազումը:

Մեր կյանքում սոցիալիստական հարաբերությունների արմատավորման շնորհիվ վերանում են հին, «դասական» ընդհարումները ընտանիքում— ստրկացնող ամուսնու և ստրկացված կնոջ, մարդկանց զգացմունքային և շահամոլական ամուսնության միջև: Ամուսնության, դրա հետ առնչվող ակնկալիքների նկատմամբ պահանջների մեծացումը, մարդկանց հարաճուն զգայունությունը բարոյական ցնցումների հանդեպ, ինչպես և ընտանիքում իրավունքների ու պարտականությունների արդարացի բաշխման բուռն ձգտումը հոգեբանական հող են ստեղծում ներընտանեկան այնպիսի բախումների համար, որպիսիք չգիտեր ու չէր կարող իմանալ սեփականատիրական մենամուսնության ոչ մի ձև:

Սոցիալիստական ապրելակերպն արմատապես փոխեց մարդկային վարքագիծը կարգավորող արժույթների համակարգը: Հիմնական արժույթը, որն արդարացնում է ամուսնության կնքումը, դարձավ ռոմանտիկական սերը՝ հաշվենկատության ուղղակի հակոտնյան: Սակայն, ինչպես վկայում են սոցիոլոգները, «սիրո վրա խարսխված ամուսնությունները» լուծարվում են նույնիսկ ավելի հաճախ, քան խիստ երկրային նկատառումներով ստեղծված միությունները, ամուսնանալու ժամանակը եկել է, նա լավ մարդ է և այլն:

Ամուսնաընտանեկան հարաբերություններում դրսևորվում են ոչ միայն սոցիալական իդեալները, նորմերը, արժութային կողմնորոշիչները, այլև մարդկանց հոգեկան առանձնահատկությունները, նրանց բարոյական գիտակցությունը: Ընտանիքի կայունացման համար շատ կարևոր է բարձրացնել երիտասարդության բարոյական դաստիարակության մակարդակը: Երիտասարդությանը սիրո նկատմամբ հարգանք ներարկելով, հարկավոր է հասնել նաև այն բանին, որ այդ լուսավոր ու գեղեցիկ զգացումը չնվազեցնի բարոյական կարևոր արժույթները— ծնողական սերը, պարտքի ու պատասխանատվության զգացումը: Հավատարմությունը, պատիվը, արժանապատվությունն ընտանիքի ամրության գումարելիներն են, ակտիվ կենսադիրքի երաշխիք: Սակայն ամեն անգամ դրանց ուժն ու ներգործությունը պայմանավորված են երկու կողմերի բարոյագեղագիտական մակարդակով: Հետևապես, ամուսնության նախապատրաստման համակարգը պետք է խարսխվի բոլոր աշխատավորների, հատկապես երիտասարդության, բարոյական դաստիարակության մակարդակի բարձրացման վրա:

Առայժմ մեր երկրում ամուսնաընտանեկան հարաբերություններում առկա են որոշ խոչընդոտներ, որոնք պայմանավորված են մի շարք պատճառներով: Տակավին զգացվում են երկրի վերապրած նյութական դժվարությունները, հասարակական կենցաղային սպասարկման ետ մնալը, հին ավանդույթների, այդ թվում հոգեբանական այն ստերեոտիպերի առկայությունը, որոնք ծնունդ են երկրորդ համաշխարհային պատերազմի դեմոգրաֆիական հետևանքների: Իր դերը խաղաց և այն, որ ուշացումով ընդունվեցին ընտանիքի ամրապնդմանը կոչված մի շարք սոցիալական միջոցառումներ:

Սովետական հասարակության սոցիալ-տնտեսական ու կուլտուրական առաջընթացն էականորեն խթանում է ընտանիքի վրա սովետական ապրելակերպի առաջատար միտումների ներգործությունը: Առավելապես դրսևորվում են ընտանեկան կոլեկտիվի այնպիսի հատկանիշներ, որոնք շեշտում են ընտանիքի անդամների անհատական առանձնահատկությունները, նրանց բնավորությունների, ճաշակների, հրապուրանքների անկրկնելիությունը:

Աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվության աճի, կրթության մակարդակի բարձրացման շնորհիվ վերջին տասնամյակներում տեղի ունեցավ սոցիալական ծանրաբեռնվածության ակնբախ մեծացում՝ մարդկանց կյանքի առաջին կեսում: Դրան հակառակ, կյանքի տևողության ավելացումը, կենսաթոշակային ապահովման արմատական բարելավումը էապես բարեփոխեցին տարեց մարդկանց կենցաղը: Այդ պայմաններում սերունդների միջև ընտանեկան հոգսերի որոշ վերաբաշխումը բնակչության տարբեր խմբերի սոցիալ-աշխատանքային պարտականությունների խելամիտ բաժանման միջոց է: Նման միտումն արժանի է հասարակության բարոյական ու կազմակերպական աջակցությանը:

Մեծահասակները սիրում են խորհուրդ տալ, իսկ երիտասարդների մոտ շատ սուր է ինքնուրույն լինելու պահանջը, անկախ նրանից, թե իրականում ունե՞ն արդյոք վարելու ինքնուրույն կյանք։ Մշտապես անխուսափելի է հին պատկերացումների ու հասկացությունների սրբագրումը, որը մեր արագընթաց դարում ավելի ինտենսիվ է, քան երբևէ։ Նկատենք, որ մեծերը զգուշավոր են նորույթների նկատմամբ, իսկ երիտասարդը ուշադիր է ու արձագանքող։

Երիտասարդ կինն անվերապահորեն իրեն տանտիրուհի է պատկերացնում, նույնիսկ եթե դեռևս օժտված չէ պատշաճ կարողությամբ, իսկ երիտասարդ ամուսինը ցանկանում է լինել ընտանիքի գլխավորը (այն դեպքում իսկ, երբ տակավին իրականում ինքը չի դարձել նրա ո՛չ բարոյական, ո՛չ նյութական նեցուկը)։ Հոգեբանական նման նպատակադրվածության պայմաններում նրանք հիվանդագին են ընդունում մեծերի, ծնողների դիտողությունն ու խորհուրդը։ Սոցիոլոգները վկայում են, որ հարսներն ավելի հաճախ են գժտվում իրենց սկեսուրների հետ, քան փեսաները՝ զոքանչների։

Թոշակի անցնելը, ծերությունը, հիվանդությունը կամա թե ակամա մարդուն աստիճանաբար դուրս են մղում կյանքի լայն շրջանակից։ Բայց մնում է կամուրջը՝ երեխաները։ Կարելի է ապրել նրանց հետաքրքրություններով, ջերմանալ նրանց հաջողություններով, ուրախություններով, տեսնել աշխարհը նրանց աչքերով։ Հուզական աղերսները մարդու հոգևոր պահանջմունքներից են, որոնք նոր երանգներ են ստանում, երբ հասունանում են երեխաները, ամուսնանում, ընտանիք կազմում։ Հասակ առած մարդկանց իրենց հասունացած զավակների հետ հաղորդակցվելուց զրկելը հեռու է մարդկայնության ու բարոյականության չափանիշներից։ Փաստ է, սակայն, որ անտեսանելի խոչընդոտները տարիքավորների ու երիտասարդների միջև ստեղծվում են երկկողմ ջանքերով, սակայն դրանց նախաձեռնությունը յուրաքանչյուր կողմ մյուսին է վերագրում։ Այդպիսին է մարդու հոգեբանությունը, չէ՞ որ դժվար է իրեն մեղավոր ճանաչելը։ Այստեղ իր ողջ հասակով հառնում է բարոյական պարտքը, որից խուսափելն արժանի է հասարակական կարծիքի անսքող դատաստանին։

Այժմ բոլոր զարգացած երկրներում նվազում է բնակչության աճը։ Պատճառն այն է, որ կինը, ներգրավվելով հասարակական արտադրության ոլորտը, ինչպես հարկն է չի ապահովվում անհրաժեշտ կենցաղսպասարկման ծառայություններով։ Լինելով անհավասար իրավիճակում, կինն ստիպված ելք է որոնում դուրս գալու այդ հակասական իրադրությունից, հրաժարվելու ծնելիության բնական ֆունկցիայից։ Մի շարք դեպքերում կնոջ մասնագիտական ու ընտանեկան դերերի միջև հակասությունը խորացվում է իրար նկատմամբ մարդկանց պահանջկոտության բարձրացմամբ, ամուսնության ստատուսի սկզբունքային փոփոխությամբ։

Կնոջ տնտեսական ինքնուրույնության և սոցիալական իրավահավասարության ամրապնդումը, ամուսնաընտանեկան հարաբերությունների ազատագրումը մասնավոր սեփականության իշխանությունից, ամուսնական ընտրությունը վերածում է անձնավորությունների անմիջական սեփական խնդրի։ Այդ զգալի բարձրացնում է պահանջն ամուսնական միության նկատմամբ իբրև «սրտերի միություն» և ոչ թե իրերի։ Համապատասխանաբար ավելի են իմաստավորվում ամուսնության հետ առնչվող ակնկալությունները։ Այդ բոլորը բազմապատկում են ամուսինների բարոյահոգեբանական փոխադարձ պահանջները։ Եթե անցյալում որոշ վիրավորանքներ ընտանիքում չէին նկատվում կամ պարզապես անհետևանք էին մնում, նոր, սոցիալիստական ընտանիքում դրանք հաճախ անհանդուրժելի են դառնում։ Պատահական չէ, որ այժմ «ամուսինների բնավորությունները չեն համընկնում» պատրվակը մեծ կարևորություն է ստանում։

Այսպիսով, հակասությունները հատուկ են նաև սոցիալիստական ընտանիքին։ Սակայն սոցիալիզմն արմատապես փոխում է այդ հակասությունների բնույթը։ «Հակասությունները,— ասում է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— բնական և անխուսափելի են սոցիալիստական հասարակության զարգացման պրոցեսում։ Եվ, իհարկե, դրանք միշտ այսպես թե այնպես ազդում են մարդկանց ճակատագրի վրա, դառնում բարոյական բախումների աղբյուր, մանավանդ որ այդ հակասությունների հաղթահարումը, թեև դրանք մեզ մոտ անտագոնիստական բնույթ չեն կրում, պահանջում են մեծ ջանքեր, քաղաքացիական մեծ համարձակություն, սկզբունքայնություն»։

Կապիտալիզմի զարգացումն օբյեկտիվորեն հանգեցնում է ամուսնաընտանեկան



հարաբերություններում հակասությունների սրման. սոցիալիստական հասարակության առաջընթացն ստեղծում է նոր օբյեկտիվ հնարավորություններ ներդաշնակելու ներընտանեկան հարաբերությունները, ամենից առաջ հաղթահարելու հակասությունները կնոջ դերերի միջև՝ արտադրության մեջ և ընտանիքում։

Ընտանեկան մթնոլորտն էապես ազդում է երիտասարդության շահագրգռությունների, դիրքորոշման, կենսական իդեալների, սոցիալական ակտիվության վրա։ Կարելի է ասել՝ ինչ ձևով որ ընտանիքն է վերաբերվում հասարակության հոգևոր արժույթներին, նույն կերպ էլ երիտասարդն է հիմնականում կատարում իր սոցիալական ֆունկցիան։ Ամեն կոնկրետ դեպքում սոցիալական ու ընտանեկան ազդեցությունների փոխհարաբերության բնույթը պայմանավորվում է ո՛չ միայն հասարակությամբ, այլև ընտանիքով։

Երեխաների նպատակամետ դաստիարակությունն ընտանիքն ապահովում է իր ապրելակերպով և մանկավարժական այն միջոցներով, որոնք մեծերը գիտակցաբար կիրառում են որոշակի արդյունքների հասնելու համար։ Ընդսմին վերջինս կանխորոշվում է ո՛չ միայն այդ ներազդման միջոցների բովանդակությամբ, այլև նրանով, թե որքանով է ընտանիքի ապրելակերպը համահունչ երեխաներին ներարկվող գաղափարներին։ Ամեն նոր սերունդ ընտանիքում ստանում է ողջ կյանքի համար յուրատեսակ «սոցիալ-հոգեբանական շարժման իներցիա»։

Ընտանիքում մեկ երեխան մշտապես ուշադրության, սիրո, հիացմունքի օբյեկտ է, այնտեղ չկա մեկ ուրիշը նրա հետ համեմատվելու, հավասար հարաբերությունների մեջ մտնելու համար։ Այլ կերպ ասած, ընտանիքում երեխային անհրաժեշտ է ունենալ քույրեր ու եղբայրներ, որպեսզի ծնողական հոգատարությունը նրան ձևավորի ոչ թե խնամարկյալ, այլ մարդ, որ պատասխանատու է հարազատների, ուրիշների համար, օժտված է վերապրումի զգացումով։ Նշենք, սակայն, որ չնայած մայրության նկատմամբ սովետական պետության ակներև հոգատարության, մանկական դաստիարակչական հիմնարկությունների սիստեմատիկ ընդլայնման, երեխաներն զգալիորեն իջեցնում են ընտանիքի կենսամակարդակը։ Ընտանիքներում, որտեղ կա մի քանի երեխա, խիստ աճում են նյութական և հոգևոր ծախսերը, որոնք հեռանկարում պատշաճ ձևով չեն հատուցվելու ո՛չ հասարակության, ոչ էլ երեխաների կողմից։ Երեխաներ ունենալն ավելի շատ բարոյական խնդիր է— հաղորդակցվելու ուրախություն, սեփական ես-ը ինչ-որ չափով նրանց մեջ կրկնելու ցանկություն, վերստին կյանքի անցած փուլերի վերապրում, ժողովրդի ու հայրենիքի հանդեպ պարտքի զգացում։

Սովետական հասարակության գաղափարաքաղաքական ու բարոյական միասնության ամրապնդումը ամբողջովին բացառում է սերունդների կոնֆլիկտն այն տեսքով, որն առկա է կապիտալիզմի աշխարհում։ Սակայն քանի որ գիտության ու տեխնիկայի զարգացումն անմիջականորեն ներգործում է մարդկանց կրթության ու հոգեբանության վրա, գիտատեխնիկական հեղափոխությունը սերունդների միջև հոգևոր կյանքի այդ ոլորտներում հարուցում է յուրատեսակ հակասություններ։ Անցյալում մեծահասակների սեփականությունն էին փորձը, գիտելիքները, սոցիալական վարկը։ Այժմ որդին, մանավանդ թոռը, երբեմն առավել իրազեկ են, քան իրենց դաստիարակողներն ընտանիքում, ունեն դիպլոմ, ատեստատ, որոնք պապն ու հայրը միշտ չէ որ հնարավորություն են ունեցել ձեռք բերելու։ Վերջապես, երիտասարդներն իրենց զգում են հասարակության ակտիվ անդամ, մինչդեռ տարեցները կենսաթոշակի են անցնում։

Ընտանիքը՝ իբրև առաջնային սոցիալական միջավայր, տարերայնորեն ու գիտակցաբար ձևավորում է երեխայի կենսական կողմնորոշիչները։ Ընդսմին տարբեր առումներով ընտանիքն առավել չափով է հարմարված երեխային աստիճանաբար հաղորդակցելու կենսագործունեության սոցիալական ձևերին։ Ընտանեկան աշխարհը որոշ չափով մեծ հասարակության տիպարն է նրա սեռահասակային կառուցվածքի կրկնությունը։ Երեխաների աճի զարգացման, նրանց դաստիարակության վրա բարերար են ներազդում ընտանեկան հարաբերությունների հուզականությունը, հատկապես բնական բնազդներից բխող այնպիսի զորեղ սոցիալական զգացումները, ինչպիսին մայրությունն ու հայրությունն են և ծնողների հանդեպ որդիական սերը։

Մշտական հոգատարությունը երեխաների նկատմամբ, հարաճուն ուշադրությունը մատաղ սերնդի դաստիարակության խնդիրներին, սովետական ապրելակերպի բնորոշ հատկանիշն են, որ դրսևորվում են ո՛չ միայն հասարակության մասշտաբով, այլև

ընտանիքի ամենօրյա կենցաղում: ՄԱԿ-ի տվյալներով մայրերն ու հայրերը մեզ մոտ երկու անգամ ավելի ժամանակ են հատկացնում երեխաների հետ հաղորդակցվելուն, քան աշխատող ծնողները՝ ԱՄՆ-ում:

Այնուհանդերձ հասարակական կյանքի զարգացումն ու բարդացումը այսօր հրամայաբար պահանջում են երեխաների ընտանեկան դաստիարակության հետագա բարելավում: Սոցիոլոգիական հետազոտությունները վկայում են, որ ծնողները կըրտսեր երեխաներին ավելի են ուշադրություն նվիրում, քան մեծերին: Անցյալում նման վիճակը նորմալ էր, բնականաբար վերջիններս ավելի պակաս խնամքի կարիք ունեն: Ինչ վերաբերում էր նրանց դաստիարակությանը, ավագ սերունդների ավանդույթների փոխանցմանը, այդ պրոցեսները կատարվում էին տարերայնորեն: Դեռահասների մեծամասնությունն աշխատում էր տակավին պատանեկության տարիներից, որը հետ համատեղ աշխատանքում (հատկապես գյուղում) դեռահասները ձեռք էին բերում ո՛չ միայն աշխատանքային հմտություններ, այլև բարոյական արժույթներ: Շատ կարևոր է նշել և այն իրողությունը, որ դեռևս ոչ ուշ անցյալում ճաշի և ընթրիքի ժամերին ընտանիքի բոլոր անդամները հեր գլխավորությամբ էին սեղան նստում: Այդ հարգալից մթնոլորտը բարերար էր ներազդում յուրաքանչյուրի վրա, ավելի մտերմիկ, անկաշկանդ դարձնում ներընտանեկան փոխհարաբերությունները:

Այժմ արմատապես փոխվել են պայմանները: Երիտասարդության հիմնական մասսան զգալի ուշ է ներգրավվում աշխատանքային գործունեության ոլորտը: Ծնողների ու երեխաների համատեղ աշխատանքն այժմ հաճախ բացառություն է: Ավելի է բարդացնում վիճակը դեռահասների արագ ֆիզիկական հասունացումը: Միշտ չէ ծնողական ներազդումն այժմ վարել տարերային մակարդակով: Մանկավարժական-հոգեբանական կուլտուրայի պակասի հետևանքը հաճախ լինում են այնպիսի իրավիճակները, երբ ունենալով ամենաբարի ցանկություններ, ծնողներն իրենց դաստիարակչական ջանքերում հանգում են հակադիր արդյունքի՝ խախտելով երեխայի վրա մանկավարժական ներազդման սկզբունքները: Չի կարելի աչքաթող անել և այն իրողությունը, որ, ցավոք, կան ընտանիքներ, որոնց ապրելակերպն ու գործելակերպը հակացուցելի են դարձնում երեխաների դաստիարակությունը նրանց կողմից: Ըստ սոցիոլոգիական հետազոտությունների, անչափահաս իրավախախտողների երկուերրորդն այն ընտանիքներից է, որտեղ ծնողները սիստեմատիկ հարբում են: Պարզ է, որ նման ծնողների ազդեցությունը միայն վնաս է բերում, և հասարակությունը երեխաներին պետք է հեռու պահի նրանցից: Այս առնչությամբ հարկ է նկատել, որ ընտանիքի հիմքերը խիստ թուլացնում է տարագնացությունը, որի մասին նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» որոշման մեջ:

Նույնիսկ շատ լավ ընտանիքներ (էլ չխոսենք անհաջողների մասին) ի վիճակի չեն լրիվ կատարելու ժամանակակից դաստիարակության մեծ ու բարդ խնդիրները: Ուստի և օրինաչափ է, որ սոցիալիստական հասարակությունում ընտանիքի դաստիարակչական դերի աճի հետ առավելապես կարևորվում է հասարակական մանկական հիմնարկությունների նշանակությունը: Հասարակական դաստիարակությունը չի փոխարինում, այլ լրացնում է ընտանեկանին: Երեխայի վրա ընտանիքի ու դաստիարակչական հիմնարկությունների ազդեցության առանձնահատկությունը պահանջում է նրանց միջև աշխատանքի յուրատեսակ բաժանում, հաշվի առնելով տարիքային հոգեբանության առանձնահատկությունները: Նկատենք, որ ընտանիքի հնարավորությունը չի սահմանափակվում երեխաների հուզական աշխարհի զարգացմամբ: Այն օժտված է նաև բանականության, մտահորիզոնի վրա ներազդելու հզոր միջոցներով: Վաղ հասակում, ինտելեկտուալ կարողությունների կազմավորման, խոսքի կուլտուրան յուրացնելու շրջանում ընտանիքն ունի առավել հնարավորություններ ներազդելու երեխայի հոգեկանի վրա: Եվ այն, որ երեխաները դպրոց են գալիս մտավոր զարգացման տարբեր աստիճաններով, վկայում է, որ ոչ բոլոր ընտանիքներն են ինչպես հարկն է օգտագործում այդ հնարավորությունները:

Հիրավի, ընտանիքը ձևականորեն լինելով անհատական ու յուրակերպ, էությամբ խորապես սոցիալական է, կրում է անձնական ու հասարակական շահերի օրգանական միասնության կնիքը: Հետևաբար, այժմ հրատապ խնդիր է մարդուն գնահատել բոլոր չափանիշներով՝ որպես աշխատավոր քաղաքացի, ընտանիքավոր, գործերով հրապուրված անձ՝ իր զգացմունքների ու խոհերի ողջ բազմազանությամբ:

---



# ԿԱՌՈՒՑՄԱՆ ՏԱՐԵՐՔՈՎ ԱՌԼԵՑՈՒՆ

## (ՍԱՐԳԻՍ ԼՈՒԿԱՇԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



Պատմական յուրաքանչյուր ժամանակաշրջան իր էությանը հատուկ գործիչներ է տալիս: Հոկտեմբերի հաղթանակի համար մաքառած, նոր կյանքի հիմքերը դնող ու կառուցող այդպիսի գործիչներից էր Սարգիս Լուկաշինը: Նրա գործունեությունը առանձնապես ծավալվեց այն ժամանակաշրջանում, երբ հին աշխարհը կործանվել էր և պետք է նոր հասարակարգ կառուցվեր: Լուկաշինը սոցիալիզմի անխոնջ կառուցող էր, ժողովրդական տնտեսության տաղանդավոր կազմակերպիչ: Լենինյան գործին նրա անմնացորդ նվիրվածությունը, աշխատասիրությունը, գործիմացությունը խոր հետք են թողել ժամանակակիցների հիշողության մեջ: Ս. Լուկաշինին բնութագրելիս նրանք ամենից առաջ շեշտում են նրա կառուցողական մեծ տաղանդն ու կազմակերպչական փայլուն ընդունակությունները, որոնք վառ կերպով դրսևորվեցին հետհոկտեմբերյան ժամանակաշրջանում, սկզբում՝ Դոնում և Հայաստանում, ապա՝ Թիֆլիսում և Մոսկվայում, ժողովրդական տնտեսության կառավարման ոլորտում: Լուկաշինն իր մեջ մարմնավորում էր կոմունիստ շինարարին ու տնտեսավարին:

Սարգիս Լուկաշինը (Սրապիոնյանը) ծնվել է 1884-ի դեկտեմբերի 31-ին, Ռոստովից ոչ հեռու գտնվող Թոփտի հայկական գյուղում, աշխատավորի ընտանիքում: Թոփտեցիների նախնիները թուրքական յաթաղանի սպառնալիքի տակ գաղթել էին Ղրիմ, ապա՝ այնտեղից Դոնի տափաստանները:

Սարգիսը տան միակ գրաճանաչն էր: Նա սկզբում սովորեց գյուղի ծխական, ապա՝ Նոր Նախիջևանի հոգևոր թեմական դպրոցում: Ուսումնատենչ պատանին անմասն չմնաց դարասկզբին աշակերտներին համակած հայրենասիրական զգացումներից: Նա հաղորդակից եղավ հայ մշակույթի և ազգային-ազատագրական շարժումների մշտահուզող խնդիրներին, հետաքրքրվեց քաղաքականությամբ, զբաղվեց սոցիալական պրոբլեմներով: Նրա քաղաքական հասունացման համար վճռական դեր խաղաց ուսումնառությունը Բաքվի արական գիմնազիայում, ուր ներգրավվեց աշակերտական գաղտնի խմբակների մեջ, աշխատակցեց աշակերտական ձեռագիր թերթին, մասնակցեց Բաքվի բանվորների՝ 1904-ի հռչակավոր դեկտեմբերյան գործադուլին: Քաղաքական կյանքում ճիշտ կողմնորոշվելու որոնումներն ի վերջո նրան բերեցին դեպի բոլշևիզմ:

Ռուսական առաջին հեղափոխության ժամանակ Սարգիս Սրապիոնյանը Պե-

տերբուրգում էր՝ համալսարանի իրավաբանական ֆակուլտետի, ապա՝ պոլիտեխնիկական ինստիտուտի տնտեսագիտական բաժանմունքի ուսանող: Այստեղ նա կապվեց տեղի ՌՍԴԲԿ կազմակերպության հետ, կատարեց նրա հանձնարարությունները: «Ռուսական հեղափոխությունը խոր, հեղափոխիչ ազդեցություն թողեց ինձ վրա: 1906 թվականին ընդունվեցի բոլշևիկյան կուսակցության շարքերը: Այդ տարվանից ինձ համար ավելի քան պարզ դարձավ կյանքիս նպատակը, իմ գործելակերպը»,— հիշում է Լուկաշինը հետագայում (**Նվիրական անուններ.** (Ակնարկների և հոդվածների ժողովածու), Երևան, «Հայաստան» հրատ., 1980, էջ 78):

Ռուսական հեղափոխության վայրէջքի տարիներին Ս. Սրապիոնյանը աներեր մնաց, դրան մեծապես նպաստեց 1907-ին Վ. Ի. Լենինի հետ ունեցած հանդիպումը: Կովկասի մի խումբ ուսանողների խնդրանքով Լենինը հանդիպեց նրանց հետ և ֆինլանդական Տերիոկի քաղաքում զեկուցում կարդաց ընթացիկ մոմենտի մասին, պարզաբանեց կուսակցության խնդիրները հեղափոխության վայրէջքի պայմաններում:

Պետերբուրգում սովորելու, ապա և աշխատելու տարիներին նա կուսակցական ընկերներին արդեն հայտնի էր Լուկաշին անունով: Նա հայ մեծ քնարերգու Վահան Տերյանի խորհրդով իր հայրանունը դարձրեց կուսակցական ծածկանուն և հեղափոխական լայն գործունեություն ծավալեց մայրաքաղաքում: Երկու անգամ ձերբակալվելուց հետո, ցարական հետապնդումներից խուսափելու նպատակով, 1909-ին նա հարկադրված մեկնեց արտասահման: Եղավ Բեռլինում, Փարիզում և Շվեյցարիայի քաղաքներում, լսեց Վ. Ի. Լենինի զեկուցումները, կապ հաստատեց Ռուսաստանից վտարանդված ռուս սոցիալ-դեմոկրատների հետ:

Իրավաբանական ֆակուլտետն ավարտելուց հետո Լուկաշինը կարճ ժամանակ աշխատեց որպես երդվյալ հավատարմատարի օգնական: 1916-ին զորակոչվեց ցարական բանակ, փետրվարյան հեղափոխության օրերին ընտրվեց զինվորական կոմիտեի անդամ, իսկ Հոկտեմբերյան հեղափոխության ժամանակ զենքը ձեռքին կռվեց հակահեղափոխական ընդդիմադիր ուժերի դեմ:

Սարգիս Լուկաշինն Արևմտյան Հայաստանը Թուրքիայի բռնակալական լծից ազատագրելու հարցը Վ. Ի. Լենինին, Սովետական Ռուսաստանի ժողկոմխորհին ներկայացնելու մտահղացման նախաձեռնողներից էր: Հիվանդության պատճառով Դոն տեղափոխվելուց հետո նրա սկսած նվիրական գործը շարունակեց բոցաշունչ բանաստեղծ Վահան Տերյանը: Արդյունքը եղավ 1917-ի դեկտեմբերի 29-ին ժողկոմխորհի ընդունած «Թուրքահայաստանի մասին» հայտնի դեկրետը, որով Թուրքիայի լծից Արևմտյան Հայաստանը ազատագրելու և արևմտահայ բնակչությանը ինքնորոշման երաշխիք էր տրվում:

Դոնում սովետական իշխանության հաստատման համար մղվող պայքարին Լուկաշինն ունեցել է ամենաեռանդուն մասնակցությունը. նա զենքը ձեռքին կռվել է գեներալներ Կալեդինի, Կրասնովի, Կոռնիլովի և մյուս հակահեղափոխական բանդաների դեմ: Իսկ Դոնի Ռոստովի ազատագրումից հետո նա մարզի սովետական ու կուսակցական ղեկավար աշխատողներից էր:

ՌԿ(բ)Կ Մոսկվայի մարզային բյուրոյում, ապա Դոնի կոմիտեի առաջին քարտուղարի պաշտոնում աշխատելու տարիներին մեծ փորձ ու անուն վաստակած Լուկաշինը 1921-ի ապրիլի վերջերին կուսակցության Կենտկոմի որոշմամբ աշխատանքի ուղարկվեց Սովետական Հայաստան: 1921-ին Ալ. Մյասնիկյանն ստանձնեց Հայաստանի ժողկոմխորհի նախագահի և ռազմժողկոմի, իսկ Ս. Լուկաշինը՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղարի և ժողտնտխորհի նախագահի պարտականությունները: 1922-ից մինչև 1925-ը Ս. Լուկաշինը Սովետական Հայաստանի ժողկոմխորհի նախագահն էր. նա մեծ ու անգնահատելի աշխատանք է կատարել Հայաստանի կոմկուսի շարքերն ամրապնդելու, հանրապետության ժողովրդական տնտեսությունը վերականգնելու, սոցիալիստական բազմաճյուղ տնտեսության հիմքերը դնելու, նրա զարգացման հետագա ուղղությունները սահմանելու գործում: Անելիքները շատ-շատ էին. անհրաժեշտ էր երկիրը դուրս բերել ավերակներից, ժողովրդին փրկել սովից, հիվանդություններից, կազմակերպել ղեկավար մարմինների համագործակցված և արդյունավետ աշխատանքը: Նա իր ջանադիր գործունեությամբ մեծապես նպաստեց այդ խնդիրների լուծմանը:

Խիզախ նախաձեռնողի, գործադրողի դերում է եղել Ս. Լուկաշինը հանրապետու-



թյան ջրանցքաշինարարության, արդյունաբերության և գյուղատնտեսության, էլեկտրիֆիկացիայի, կոոպերացման, պետական առևտրի բնագավառներում: Նա իր մեջ մարմնավորել է սովետական տնտեսավարի ամենալավագույն հատկանիշները և ջանք ու եռանդ չի խնայել, որպեսզի սովետական պետականությունը խոր արմատներ ձգի քաղաքում և գյուղում: Նրա անմիջական ղեկավարությամբ կազմակերպվեց Հայաստանի արդյունաբերությունը և ծավալվեցին շինարարական աննախընթաց աշխատանքներ գյուղատնտեսության ասպարեզում:

Կուսակցության համագումարներում հանդես գալով Կենտկոմի հաշվետվությամբ՝ նա լենինյան ցուցումների ու պատգամների լույսի ներքո խորությամբ վերլուծում և համակողմանիորեն ամփոփում էր աշխատանքի արդյունքները, նշում կոնկրետ անելիքները:

Գյուղատնտեսության զարգացումը դիտելով իբրև երկրի ինդուստրացման ընդհանուր կոմպլեքսի անբաժան մասը՝ Լուկաշինն առաջ քաշեց այդ ճյուղի համակողմանի զարգացման խնդիրը: 1922-ի սկզբին հանրապետության սովետների առաջին համագումարում նա նշեց, որ Հայաստան երկիրն առանց գյուղատնտեսության ոտքի կանգնել չի կարող: Այդ առնչությամբ էլ ժողովրդի պարենային ապահովվածության, նյութական վիճակի բարելավումը համարում էր առաջնային, անհետաձգելի գործ: Հայաստանի սովետների համագումարի ամբիոնից պարզ ու պատկերավոր հնչեցին Լուկաշինի խոսքերը. «Մենք շինում, ստեղծագործում ենք մի Աշխատանքի տաճար, բայց նախքան շինելը, մեր յուրաքանչյուր բանվորն ու աշխատավորը պետք է իմանա, թե ո՞ր աղյուսը ուր պիտի դրվի, ո՞ր քարը՝ որտեղ» (**ՀՍԽՀ բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների պատգամավորական խորհուրդների առաջին համագումարի արձանագրություններ,** Երևան, Պետհրատ, 1922, էջ 112): Նա ամենայն վճռականությամբ խնդիր դրեց զարգացնել արդյունաբերությունը՝ այդ գործում բացառիկ նշանակություն տալով էլեկտրիֆիկացմանը: Այլ խոսքով, Հայաստանի ապագան նա տեսնում էր սոցիալիստական ինդուստրացման մեջ:

Ս. Լուկաշինը կառուցողների հետ էր: Ամուր ու անխզելի կապ էր պահպանում բանվորների, ինժեներ-տեխնիկների հետ, այցելում շինարարական հրապարակները, ճշգրտում պլաններն ու նախահաշիվները, հետևում դրանց անթերի կատարմանը:

Լուկաշինի ուրախությանը չափ չկար, երբ ավարտվեցին Շիր-կանալի շինարարական աշխատանքները: Նա իր սրտի ջերմ խոսքը հրապարակեց մամուլում՝ նշելով, որ «Աշխատանքի հանրապետությանը հաջողվեց Արփաչայը դուրս հանել բազալտով օղակված նեղ ու խոր ձորերից դեպի Շիրակի ընդարձակ դաշտերը... Թող թշնամիները լսեն և թող հաջողության նպատակահարմարության վրա կասկածող ֆիլիստերները համոզվեն, որ խորհուրդների հանրապետության մեջ աշխատավորության կենտրոնացած աշխատանքը փոքր միջոցներով անգամ կարող է հեղափոխություն ստեղծել մեր տնտեսության ասպարեզում, և թող այս խոշորագույն հաջողությունը հզոր խթան դառնա նոր լարումների ու նվաճումների համար» (**Խորհրդային Հայաստան,** 1924, օգոստոսի 27): Լուկաշինի ամենագործուն մասնակցությամբ վերականգնվեցին ջրանցքներն ու էլեկտրակայանները, կառուցվեցին նորերը՝ հիմք ստեղծելով գյուղատնտեսության ու արդյունաբերության հետագա զարգացման համար:

Լուկաշինը, խորապես մտահոգված աշխարհով մեկ սփռված հայության բեկորների հայրենադարձության հարցով, խնդիր էր դնում ուժեղացնել կապը արտասահմանի առաջադեմ կազմակերպությունների հետ: Իսկ երբ 1925-ի հունիսի վերջերին Ազգերի լիգային կից աշխատանքի միջազգային բյուրոյի հանձնարարությամբ Երևան ժամանեց մեծ հումանիստ, դոկտոր Ֆրիտյոֆ Նանսենի գլխավորած հանձնաժողովը, Լուկաշինը կառավարության կողմից հայտնեց, որ նրան կտրվի լայն հնարավորություն՝ ծանոթանալու ոռոգվելիք հողատարածությունների պատրաստի ծրագրերի հետ, որոնց վրա պետք է բնակեցվեին հայրենադարձ հայերը: Հայաստանի կառավարությունը քննարկեց Հունաստանում, Սիրայում և այլ վայրերում ապաստանած հայերին Հայաստան տեղափոխելու հարցը, ուսումնասիրեց ներգաղթի հնարավորություններն ու պայմանները:

Լուկաշինը մշտապես հետևում էր գիտության ու կուլտուրայի զարգացմանը: Մեծ էր նրա ավանդը գրականության, արվեստի շնորհաշատ մարդկանց հայտնաբե-

րելու, խրախուսելու գործում, որոնց ստեղծագործություններով էլ սկզբնավորվեց սովետահայ մշակույթը:

Տնտեսական շինարարության մեծ եռուզեռի շեմին նա կառավարության անունից հրավերներ ուղարկեց երկրի տարբեր անկյունները՝ անվանի, գործիմաց մարդկանց հավաքելու, նրանց ստեղծագործական ուժերը սոցիալիստական հայրենիքի շենացմանը նպատակամղելու համար: Այդ ժամանակ Լուկաշինի հրավերով Թավրիզից Երևան ժամանեց տաղանդավոր ճարտարապետ Ալեքսանդր Թամանյանը, որին նա մոտիկից գիտեր դեռ Պետերբուրգից, ուր միասին պաշտոնավարել էին եկեղեցիների գույքի կառավարման խորհրդում:

Ալ. Թամանյանը, ինժեներ Հ. Տեր-Աստվածատրյանը, երկրաբան Հ. Կարապետյանը, ջրաշինարարական կառուցումների ինժեներ Գ. Ծիրմազանը և ուրիշներ հաճախ էին լինում Լուկաշինի մոտ, խորհում, ծրագրում վաղվա անելիքները, ամեն ինչում զգում նրա մտքի մեծ ուժը:

Անդրկովկասյան Ֆեդերացիայի ժողկոմխորհում աշխատելու երկուսուկես տարիների ընթացքում Լուկաշինը եղավ երկրամասի ժողկոմխորհի նախագահի տեղակալ, բարձրագույն տնտեսական խորհրդի նախագահ, պետպլանի նախագահ, առևտրի ժողկոմ, բանգյուղտեսչության ժողկոմ:

Մանրամասն ուսումնասիրելով երկրամասի արդյունաբերության վիճակը, նրա վերականգնման նպատակով ձեռնարկված միջոցները և զարգացման հեռանկարները՝ Ս. Լուկաշինը Անդրկովկասյան կուսակցական կազմակերպությունների VI համագումարում և Անդրֆեդերացիայի Կենտգործկոմի նստաշրջանում հանդես եկավ «Անդրկովկասի արդյունաբերության զարգացման հերթական խնդիրները» զեկուցումով: Նրա զեկուցումների, ելույթների հիմնարար դրույթները, արդյունաբերության և գյուղատնտեսության գրեթե բոլոր ճյուղերի զարգացման միջոցների մասին առաջարկությունները միահամուռ կերպով ընդունվում էին երկրամասի կուսակցական և սովետական ղեկավար գործիչների, աշխատավորական լայն խավերի կողմից:

1928-ի սկզբներին Ս. Լուկաշինն աշխատանքի անցավ ՍՍՀՄ ժողկոմխորհի աշխատանքի և պաշտպանության խորհրդում: Մոտ տասը տարի շարունակ գտնվելով երկրի արդյունաբերական շինարարության ղեկավարման ամենաբարձր պոստերում՝ Լուկաշինն աշխատեց ՍՍՀՄ պետպլանի նախագահ Գ. Կրժիժանովսկու, ՍՍՀՄ ԺՏԳԽ-ի նախագահ Վ. Կույբիշևի, ապա՝ Գ. Օրջոնիկիձեի հետ, իր անխոնջ աշխատանքով վայելեց նրանց սերն ու հարգանքը:

Ս. Լուկաշինը գլխավորում էր մեքենաշինական ու քիմիական ձեռնարկությունների կառուցման գործը, ապահովում կուսակցության դիրեկտիվների անշեղ կատարումը: Նա մի առանձին ջերմությամբ էր վերաբերվում նաև մատաղ սերնդի դաստիարակության գործին՝ հաճախ լինելով դպրոցներում, նորաստեղծ տեխնիկումներում և ուսումնարաններում:

Սարգիս Լուկաշինը բազմիցս հանդես է եկել ուշագրավ հոդվածներով, ճառերով ու զեկուցումներով: Հոդվածներից մեկը նվիրված է հեղափոխական բանաստեղծ, դրամատուրգ Ալեքսանդր Վերմիշևի հիշատակին: 1919 թվականն էր: Սարգիս Լուկաշինը նույնպես քաղաքացիական կռիվների ճակատներում էր, կարմիր զորամասերի հետ: Տեղեկանալով ընկերոջ մահվան մասին՝ նա «Եժենեդելնայա պրավդա» թերթում սրտի ջերմ խոսք ասաց իր մարտական ընկերոջ մասին. «Ընկավ բանվորական գործի մեծ մարտիկներից մեկը, ընկավ որպես նահատակ, որպես հերոս: Բայց այն գործը, որի համար զոհվեց Սաշա Վերմիշևը, միլիոնավոր մարտիկների գործն է, այդ գործը կհասցվի մինչև վերջ: Եվ այն տանջանքների համար, որոնց ենթարկվեց անխոնջ բանաստեղծ-հեղափոխական Վերմիշևը, դաժանորեն վրեժ կլուծեն իմպերիալիստական շնագայլերի նողկալի ոհմակից բոլոր այն ընկերները, բոլոր բանվորներն ու կարմիրբանակայինները, որոնց կարմիր խոյանքը երգեց նա իր պիեսներում» («Եժենեդելնայա պրավդա», 1919, նոյեմբերի 5):

Իսկ տարիներ անց, երբ Հոկտեմբերի բարերար շունչը հասել էր Հայաստան, հանրապետության կառուցողական աշխատանքներին գլխովին նվիրված Ս. Լուկաշինը որոնեց իր մարտական ընկերոջ այրուն և որդուն՝ նրանց օգտակար ու սատար լինելու մտադրությամբ: Նա օր առաջ ուզում էր հրատարակված տեսնել Ալ. Վերմիշևի գրական ժառանգությունը, որպեսզի «նրա հիշատակը և նրա մասին ընդհանրապես հնարավորին չափ շատ մարդ իմանա, և նաև նրանք, որոնք առիթ չեն ունեցել մոտիկից ճանաչելու նրան, այդ բյուրեղի պես մաքուր, ազնիվ մարդուն և նվիրված էնտուզիաստ-հեղափոխականին»:



Սարգիս Կասյանի **Ո՞ւր է ելքը** գրքի ռուսովյան հրատարակությանը կցած առաջաբանի հեղինակը նույնպես Լուկաշինն է: Ծրագրային նշանակություն ունեցող այդ երկը, որը 1919 թվականին ընդհատակյա պայմաններում հրատարակվել էր Երևանում, լավ ընդունելություն գտավ նաև Դոնի-Ռոստովի հայ ընթերցողների շրջանում, որոնք և ձեռնամուխ եղան գրքի վերահրատարակությանը: Առաջաբանում կրկին անգամ հավաստվում էր Հոկտեմբերյան հեղափոխության և Սովետական Ռուսաստանի վճռական նշանակությունը կործանման եզրին կանգնած հայ ժողովրդի համար ճակատագրական «Ի՞նչ անել, ո՞ւր է ելքը» հարցադրման դրական լուծման գործում: Իսկ Հայաստանի կոմկուսի առաջին համագումարի առթիվ գրված հոդվածում Ս. Լուկաշինը լուսաբանում է Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների անցած ուղին, վերլուծում ու գնահատում մայիսյան ապստամբության և դրանից հետո տեղի ունեցած քաղաքական իրադարձությունները:

Փաստական հարուստ նյութ են պարունակում նրա Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի, Հայաստանում սովետական իշխանության հաստատման, Անդրֆեդերացիայի տարեդարձին, հանրապետության մեծ կառույցներին նվիրված հոդվածներն ու ելույթները: Դրանց պատմական արժեքը պայմանավորված է ոչ միայն նրանով, որ հեղինակն այդ իրադարձությունների ժամանակակիցն ու ամենաակտիվ մասնակիցն է, այլև նրանով, որ, դրանցում արժեքավորելով ձեռքբերվածը, նա նշում է թերություններն ու բացերը, նախանշում վաղվա անելիքները:

Ս. Լուկաշինը հաճախ է հանդես եկել զեկուցումներով Հայաստանի կոմկուսի, հանրապետության սովետների, Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունների համագումարներում, ելույթներ ունեցել համակուսակցական համագումարներում, սովետների համամիութենական համագումարներում, ՍՍՀՄ Կենտգործկոմի նստաշրջաններում: Նա միշտ և ամենուրեք աշխատավորների ուշադրությունը բևեռել է ձեռք բերված նվաճումների, ժամանակի առանցքային հրատապ հարցերի վրա, միաժամանակ ցույց տվել թերին ու անկատարը, պարզաբանել անելիքները: Դրանցում հստակորեն ձևակերպված են մեր կուսակցության քաղաքականությունը, Անդրկովկասում դրա կիրառման որոշ առանձնահատկությունները: Դրանք բոլորը կուսակցական արժեքավոր փաստաթղթեր են, որոնք ունեն տեսական ու գործնական կարևոր նշանակություն:

Պարզ ու անպաճույճ էր Լուկաշինի խոսքը, անմիջական ու համոզիչ: Ժամանակակցի վկայությամբ, բազմագբաղ այդ գործիչը շատ մարդամոտ էր, դյուրահաղորդ, պարզ ու ընկերական, որից ակնածում, բայց և խորապես հարգում ու հավատում էին նրան: Նա մեծ հեղինակություն էր վաստակել աշխատավոր զանգվածների և կոմունիստների շրջանում իր ժողովրդանվեր արգասավոր գործունեությամբ:

**Գոհար ՄԱՆՈՒԿՅԱՆ**

# ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻՈՐԵՆ ԼՈՒՍԱԲԱՆԵԼ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI համագումարի որոշումները և տասնմեկերորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական զարգացման ծրագիրը հաջողությամբ կատարելու գործում առանձնահատուկ նշանակություն ունի աշխատավորների շրջանում տարվող մասսայական-քաղաքական, գաղափարադաստիարակչական աշխատանքի կազմակերպումը: ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում շեշտվեց, որ անհրաժեշտ է գաղափարախոսական, դաստիարակչական, պրոպագանդիստական ողջ աշխատանքը բարձրացնել այն մեծ ու բարդ խնդիրների մակարդակին, որ կուսակցությունը լուծում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում:

«Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» որոշման մեջ ՍՄԿԿ Կենտկոմն առաջնահերթ, կարևորագույն խնդիր է համարել բարելավել գաղափարադաստիարակչական աշխատանքը անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներում, բրիգադներում ու ֆերմաներում, պրոպագանդան և ագիտացիան, աշխատավորների սոցիալիստական մրցությունը նպատակամղել հնգամյակի պլանների կատարմանը, ամեն ինչ անել ՍՄԿԿ XXVII համագումարն արժանավայել դիմավորելու համար:

Այս առումով մեծ ու կարևոր պահանջներ են ներկայացվում նաև շրջանային լրագրերին: Ընթերցողների ուշադրությանն ենք ներկայացնում դրանցից մի քանիսի գործունեությունը:

### «ՈՐՈՏԱՆ»

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից և Կենտկոմի «Շրջանային և քաղաքային թերթերի գործունեության հետագա բարելավման մասին» որոշումից հետո Սիսիանի կուսշրջկոմը հետևողական աշխատանք է կատարում իր տպագիր օրգանի կուսակցական ղեկավարման, թերթի հրապարակումների մակարդակի բարձրացման և ներգործունության ուժեղացման նպատակով: «Որոտան» շրջանային լրագիրը լուսաբանում է շրջանի կուսկազմակերպությունների գաղափարական կյանքը, աշխատավորների շրջանում տարվող քաղաքական, դաստիարակչական աշխատանքի բարելավման հարցերը: Նրա մշտական խորագրերից են **Որտեղ և ինչպես են իրականացնում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի պահանջները**, **Գաղափարախոսական աշխատանքի հարցերը** և այլն, որոնց ներքո պարբերաբար հրապարակվող նյութերը պրոպագանդում են տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրները, պատմում այն մասին, թե սկզբնական կուսկազմակերպությունները ինչպես են կազմակերպում կոմունիստների, աշխատավորների մարքս-լենինյան ուսուցումը և տնտեսագիտական կրթությունը:

Լրագրի 1984 թ. ապրիլի 12-ի համարում զետեղված իր հոդվածում Սալվարդի կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Բ. Իվանյանը պատմում է ֆերմաներում ու բրիգադներում կատարվող քաղաքական աշխատանքի իրենց փորձի մասին: Կոնկրետ օրինակներով ու փաստերով նա ցույց է տըվել, թե ինչպես բազմազան ձևերի ու միջոցների օգտագործման շնորհիվ քաղաքական աշխատանքը դարձել է ներգործուն ու նպատակասլաց, այն օգնում է բոլոր օղակներում կարգապահության ամրապնդմանը, ներքին ռեզերվների ու հնարավորությունների արդյունավետ օգտագործմանը, արտադրության ինտենսիվացմանը և նյութական բարիքների ավելացման համար մարդկանց ուժերի մոբիլիզացմանը, պարենային ծրագրով տնտեսությանն առաջադրված խնդիրների լուծմանը:

**Երիտասարդ կոմունիստները ուշադրության կենտրոնում** թղթակցությունում Ա. Գրիգորյանը պատմում է, թե շրջկենտրոնի պետտնտեսության կուսկազմակերպությունը ինչպես է կազմակերպում երիտասարդ կոմունիստների քաղաքական-դաստիարակչական գործը: Հեղինակը գրում է, որ կուսկազմակերպությունում գործում է երիտասարդ կոմունիստների դպրոց, որը շատ է օգնում նրանց քաղաքական գիտելիքների հարստացմանը, ակտիվության ու նախաձեռնության զարգացմանը: Կուսբյուրոն լսում է երիտասարդ կոմունիստների հաշվետվությունները, տալիս նրանց հանձնարարություններ և մշտապես հետևում, թե նրանք ինչպես են կատարում կանոնադրական պարտականությունները:

Ուշագրավ է թերթի հոկտեմբերի 20-ի համարի նպատակային էջը, որը կրում է **Առաջին օրից արդյունավետ դարձնել քաղուսման ընդհանուր խորագիրը**: Նշվում է, որ նոր ուսումնական տարում շրջանում գործում են քաղաքական ուսուցման ու տնտեսագիտական կրթության 343, կոմերիտական ուսուցման 73 դպրոցներ, բոլոր օղակներում ընդգրկված են 10.306 ունկնդիրներ, 416 պրոպագանդիստներն ունեն բարձրագույն կրթություն: Հրապարակված թղթակցություններից տեղեկանում ենք, թե Դարբասի, Սիսիանի տնտեսությունների, քաղաքային սովետի գործկոմի կուսկազմակերպությունները ինչպես են կենսագործում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները՝ կոմունիստների, աշխատավորների քաղաքական դաստիարակության հաջող կազմակերպման, երիտասարդության աշխարհայացքի ձևավորման նպատակով:

Թերթի մի այլ համարում (№ 119) Սառնակունքի տնտեսության քաղաքական ուսուցման պրոպագանդիստ Բ. Գևորգյանը և Տաթևի հիդրոէլեկտրակայանի տնտեսագիտական կըրթության պրոպագանդիստ Կ. Եղիազարյանն իրենց հոդվածներում անդրադարձել են այն հարցին, թե ինչ են անում գաղափարական աշխատանքի արդյունավետությունն ապահովելու, ուսումնասիրվող թեմաները կյանքի, տվյալ տնտեսության ու ձեռնարկության կոլեկտիվին ներկայացվող խնդիրների լուծման հետ զուգակցելու, պարապմունքներն ավելի հետաքրքիր ու բարձր մակարդակով անցկացնելու համար:

«Որոտանը» գաղափարախոսական, ագիտացիոն-մասսայական աշխատանքի, ինչպես նաև բնակչության աթեիստական դաստիարակության հարցերի լուսաբանմանը նվիրում է նաև առաջնորդող հոդվածներ: Թերթը դրվատանքով է խոսում «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման՝ Սիսիանի թողարկիչ-կարգավորիչ սարքերի գործարանի, Տաթևգէսի գլխային կառույցների շինվարչության, Շաղաթի, Դարբասի, Նորավանի, Բռնակոթի տնտեսությունների կուսկազմակերպությունների կողմից դիտողական ագիտացիան նպատակասլաց կազմակերպելու մասին: Միաժամանակ նշվում է, որ դիտողական ագիտացիայի կազմակերպման ասպարեզում տարվող աշխատանքը դեռևս հեռու է բավարար լինելուց, քննադատական լույս խոսք է ասված «Գյուղշին» տրեստի, «Հայգյուղտեխպետկոմի» շրջանային միավորման, շինարարական նյութերի և իրերի կոմբինատի, ավտոձեռնարկության և մի շարք այլ կուսկազմակերպությունների մասին:

Գաղափարախոսական աշխատանքում ղեկավար կադրերի ներգրավման հարցին է նըվիրված սեպտեմբերի 22-ի **Տնտեսական, նաև քաղաքական ղեկավարը** վերնագրով առաջնորդող հոդվածը, որտեղ ճշված է, որ շրջանի քաղլուսցանցը, ագիտկոլեկտիվները, քաղինֆորմատորների խմբերը համալրվել են ղեկավար աշխատողներով: Նրանց զեկուցումները, զրույցները հետաքրքրությամբ են լսում աշխատավորները: Թերթը միաժամանակ նշել է, որ ոչ բոլոր ղեկավար և միջին օղակի կադրերն են գաղափարախոսական աշխատանքին մասնակցելը համարում իրենց անմիջական պարտականությունը: Նրանք քիչ են հանդես գալիս աշխատավորների առջև, առանձին ղեկավար աշխատողներ բարեխղճորեն չեն կատարում պրոպագանդիստի, քաղինֆորմատորի, ագիտատորի պարտականությունները:

Լրագրի էջերում համակողմանի լուսաբանվում է կոլեկտիվ ու պետական տնտեսություններում աշխատող երիտասարդ մեխանիզատորների, կթվոր-անասնապահների, սովորող երիտասարդության կյանքն ու գործունեությունը: Հրապարակվող նյութերը օգնում են կուսկազմակերպություններին՝ բարձրացնելու անող սերնդի շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի մակարդակը, նրանց մեջ գաղափարաբարոյական վսեմ հատկանիշներ ձևավորելու, տոգորելու հարազատ գյուղի նկատմամբ սիրով, մղելով նրանց ակտիվ մասնակցելու գյուղատնտեսական արտադրությանը:

Շրջանում նկատելի է դրական մի երևույթ. միջնակարգ դպրոցն ավարտողների զգալի մասը մնում է հայրենի գյուղում աշխատելու: Այս գործում ավանդ ունեն լրագրի **Երիտասարդությունը և գյուղը** մշտական խորագրի ներքո զետեղվող նյութերը, որոնցում պատմվում է այն պատանիների ու աղջիկների մասին, որոնք դպրոցն ավարտելուց հետո աշխատում են ֆերմաներում ու դաշտերում:

Զանտեսելով գաղափարախոսական հարցերի լուսաբանման ասպարեզում «Որոտանի» դրական աշխատանքը, պետք է ասել, սակայն, որ թերթը դեռևս հանգամանալից վերլուծական հոդվածներով չի ընդհանրացնում այն սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, որոնք այդ ասպարեզում ձեռք են բերել ընդօրինակման արժանի փորձ:

Պակասում են թեմատիկ բազմազանությունն ու վերլուծական խորությունը:

Թերթում հրապարակված նյութերում պատշաճ խորությամբ չի լուսաբանվում գաղափարախոսական աշխատանքի կարևոր բնագավառներից մեկը՝ ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ կուսկազմակերպությունների գործունեությունը: Նրա էջերում սակավ են դաստիարակության, ագիտկոլեկտիվների, քաղինֆորմատորների աշխատանքի վերաբերյալ նյութերը, դեպքից դեպք են զետեղվում թղթակցություններ կուլտուր-լուսավորական հիմնարկությունների առօրյայի մասին: Հարկ եղած ուշադրություն չի նվիրվում դասախոսական պրոպագանդայի հարցերին: «Շրջանային ու քաղաքային թերթերի գործունեության հետագա բարելավման մասին» որոշմամբ ՍՄԿԿ Կենտկոմը ուղղակի խնդիր է դնում՝ խորապես բացահայտել սկզբնական կուսկազմակերպությունների կազմակերպչական և գաղափարախոսական աշխատանքի բովանդակությունը, ըստ ամենայնի նպաստել աշխատավորների աշխատանքային ու քաղաքական ձեռներեցության զարգացմանը:

## «ԱՐԱՐԱՏ»

Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հարցերին բազմազան ձևերով և բովանդակալից հոդվածներով ու թղթակցություններով է անդրադառնում «Արարատ» շրջանային թերթը: Նրա էջերում այժմ ավելի հաճախ են երևում **ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումները գործողության մեջ**, **Գաղափարախոսական աշխատանքը և կյանքը**, **Հակապրոպագանդայի տիրույթում**, **Ռազմահայրենասիրական թեմաներով**, **Արձագանքում են ՍՄԿԿ Կենտկոմի որոշմանը** և այլ խորագրեր:

1984 թ. 51-րդ համարում լրագիրը մի էջ է նվիրել քաղաքական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթությանը: **Ամբողջ կուսակցության, յուրաքանչյուր կոմունիստի գործը** խորագրի ներքո ուշագրավ հրապարակումներով հանդես են եկել Վանաշենի կոլտնտեսության կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Հռիփսիմե Հարությունյանը, Փոքր Վեդիի Լենինի շքանշանակիր կոլտնտեսության կուսբյուրոյի քարտուղար Թելման Թոռունյանը, Ավշարի գինու և ոչ ալկոհոլային խմիչքների կոմբինատի կուսկազմակերպության քարտուղար Ալբերտ Բաղդասարյանը: Նրանք կոնկրետ օրինակներով պատմում են, թե ինչպես են կազմակերպում գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական ու պրոպագանդիստական աշխատանքը, և քաղաքական-տնտեսագիտական ուսուցումն ինչպես է նպաստում արտադրության արդյունավետության բարձրացմանը, ունկնդիրների ընդունակությունների դրսևորմանը, նրանց նախաձեռնությունների զարգացմանը:

Կիրովի անվան սովխոզ-գործարանի կուսկազմակերպությունը բնակչության շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի ասպարեզում ուշագրավ փորձ է կուտակել: Այդ աշխատանքի հիմքում դրված է «Հայաստանի կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պրոպագանդումը: Ակտիվ է գործում 20 մարդուց բաղկացած ագիտկոլեկտիվը, որի կազմում ընդգրկված են մեծ մասամբ բարձրագույն կրթությամբ կոմունիստներ՝ գյուղատնտեսության մասնագետներ, մտավորականության այլ ներկայացուցիչներ, արտադրության առաջավորներ: Իսկ թե քաղաքական-գաղափարական աշխատանքի պատշաճ կազմակերպումն ինչպես է խթանել սովխոզ-գործարանի սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների լուծմանը, այդ մասին պատմում է հոկտեմբերի 27-ի համարում հրապարակված ընդարձակ հոդվածը: Ինչպես նշում է թերթը, 50 տարին բոլորած սովխոզ-գործարանի կոլեկտիվը հաջողությամբ է նվաճել հնգամյակի չորրորդ տարվա բնագծերը, խաղողի այգիների միջին բերքատվությունը 132-ի փոխարեն հասցնելով 152 ցենտների: Զգալի չափով գերակատարվել են պտղի, անասնապահական մթերքների վաճառքի առաջադրանքները: Սովխոզ-գործարանի զուտ օգուտները անցել են մեկ միլիոն 200 հազար ռուբլուց:

Արարատի Ս. Տեր-Գաբրիելյանի անվան ցեմենտի-շիֆերի կոմբինատի կուսկոմիտեի քարտուղար Ազատ Հակոբյանը օգոստոսի 9-ի համարում զետեղված իր ծավալուն հոդվածում պատմում է, որ քաղաքական ուսուցման տարբեր օղակներում իրենց տեսական գիտելիքները հարստացնում են 180 կոմունիստներ, 1.000-ից ավելի բանվորներ ընդգրկված են տնտեսագիտական կրթության և կոմունիստական աշխատանքի 34 դպրոցներում: Հետաքրքրական են անցնում նաև տնտեսական ղեկավարների զեկուցումները, դասախոսությունները միասնական քաղօրերին: Այդ ամենի շնորհիվ կոլեկտիվում բարձր է կարգապահությունը, կրճատվել են աշխատաժամանակի կորուստները, կոմբինատի 16 բրիգադներում ընդգրկված 300-ից ավելի բանվորներ աշխատում են նոր, առաջավոր եղանակով:



Մի այլ համարում լրագիրը տպագրել է ՀԿԿ Արարատի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ Վ. Մազմանյանի հոդվածը: Նա գրում է, որ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո շրջանում նկատելիորեն բարելավվել է կոմունիստների մարքս-լենինյան ուսուցման, քաղաքական-մասսայական աշխատանքը: Կուսակցական ուսուցման տարբեր օղակներում սովորում են 2.800 կոմունիստներ, շատ աշխատավորներ ընդգրկված են տնտեսագիտական կրթության դպրոցներում: Կուսշրջկոմն անցկացնում է պարապմունքների մասսայական ունկնդրումներ՝ նպատակ ունենալով ընդհանրացնել ու տարածել առաջավոր քաղդպրոցների փորձը: Հեղինակը միաժամանակ նշում է, որ պրոպագանդիստական աշխատանքում դեռևս լիովին հաղթահարված չեն ձևամոլությունն ու շաբլոնը, քիչ բան է արվում ուսուցման ձևերն ու մեթոդները կատարելագործելու ասպարեզում:

Թերթում գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հարցերի վերաբերյալ հոդվածներով ու թղթակցություններով հանդես են եկել Վանաշենի կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Գ. Մկրտչյանը, կուսշրջկոմի քաղլուսկաբինետի վարիչ Մ. Բարսեղյանը և ուրիշներ:

Խմբագրությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում հրատապ թեմաների ընտրությանը և դրանց համակողմանի լուսաբանմանը: Պարենային ծրագրի, խամ ու խոպան հողերի յուրացման, ոռոգման ջրի արդյունավետ օգտագործման, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջավոր ձևերի, գիտության նվաճումների արմատավորման հարցերին նվիրված հրապարակումների կարելի է հանդիպել լրագրի գրեթե բոլոր համարներում:

Խմբագրությունը ծավալուն էջեր է նվիրել Փոքր Վեդու, Արարատի, Ծիրազլուի կոլտնտեսություններին, որտեղ կազմակերպչական, քաղաքական և դաստիարակչական աշխատանքը սերտորեն զուգակցվում է տնտեսական խնդիրների լուծման հետ:

Թերթը լայնորեն լուսաբանում է շրջանում կազմակերպվող հեղափոխական և աշխատանքային տոնակատարությունները: Հուզիչ են այն նյութերը, ուր պատմվում է զորակոչվողներին բանակ ճանապարհելու, մեծ Հայրենականում զոհված մարտիկների հուշարձան-կոթողների մոտ երդում տալու մասին: Հետաքրքրական հաղորդումներ են զետեղված նաև աշխատանքի նոր ընդունված երիտասարդների հետ հանդիպումների, Հայրենականի մեծ պատերազմի և աշխատանքի վետերանների մեծարումների վերաբերյալ: Ինչպես այդ ամենին, նույնպես և «Անասնապահի օրը» տոնահանդեսներին, «Ծաղկի տոնին» և այլ հանդիսություններին նվիրված հրապարակումներով խմբագրությունը ձգտում է նպաստել աշխատավորների կոմունիստական դաստիարակության հույժ կարևոր գործին:

Պետք է ասել, սակայն, որ «Արարատ» թերթում դեռևս սիստեմատիկ կերպով չի լուսաբանվում աշխատավորության շրջանում տարվող դասախոսական աշխատանքը, խորությամբ չեն բացահայտվում այդ գործում նըկատվող ձևամոլությունը, հաճախ մակերեսորեն են լուսաբանվում երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերը:

Լրագիրը հազվադեպ է անդրադառնում սովետական ապրելակերպի, կոմունիստական բարոյականության նորմերի արմատավորման հրատապ խնդիրներին, չեն ձաղկվում մեր կյանքն արատավորող երևույթները, քննադատական խոսք չի ասվում հանրային աշխատանքից խուսափողների հասցեին:

Լրագիրը պետք է իր առաջնահերթ խնդիրը համարի, ինչպես նշված է շրջանային ու քաղաքային թերթերի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, սովետական ապրելակերպի, կոմունիստական բարոյականության նորմերի հաստատումը, անկազմակերպվածության ու անպատասխանատվության փաստերի նկատմամբ անհանդուրժողականության մթնոլորտի ստեղծումը:

## «ԼԵՆԻՆՅԱՆ ԴՐՈՇՈՎ»

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո Կամոյի շրջանային «Լենինյան դրոշով» թերթը նկատելիորեն բարելավել է իր աշխատանքը, բացել նոր խորագրեր և ակտիվորեն նպաստում է շրջանի աշխատավորական կոլեկտիվների խնդիրների հետ քաղաքական ուսուցման սերտ կապի ամրապնդմանը:

Ուշագրավ է կուսշրջկոմի քարտուղար Գ. Գրիգորյանի ընդարձակ հոդվածը, որը զետեղված է լրագրի 1984 թ. սեպտեմբերի 11-ի համարում: Համոզիչ օրինակներով ու փաստերով նա ցույց է տալիս, որ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների կենսագործման շնորհիվ քաղաքական-դաստիարակչական աշխատանքը դարձել է ավելի ներգործուն, նպատակասլաց, այն նպաստում է շրջանի առջև դրված սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող լուծմանը:

Մի այլ համարում **Ընտրովի ակտիվի մասնակցությունը գաղափարաքաղաքական աշխատանքին** վերնագրով հոդվածում թերթը գրում է, որ շրջանում զգալի գործ է արվում

ընտրովի ակտիվի հետ տարվող աշխատանքը բարելավելու ասպարեզում։ Կուսշրջկոմին կից գործում է ակտիվի դպրոց, որտեղ ընդգրկված են շրջկոմի անդամները ու թեկնածուները, սովետական, արհմիութենական և կոմերիտական ղեկավար աշխատողները։ Թերթը բերում է բազմաթիվ օրինակներ այն մասին, թե ինչպես է ընտրովի ակտիվը մասնակցում միասնական քաղօրերին, բաց նամակի օրերին, երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքներին։

Կուսակցության Կենտկոմի հունիսյան պլենումում հատկապես կարևորվեց գաղափարական աշխատանքի էական օղակը՝ դասախոսական պրոպագանդան։ «Գիտելիք» ընկերության շրջանային կազմակերպության քարտուղար Ա. Մաղաքյանն իր հոդվածում անդրադառնում է աշխատավորության համար կարդացվող դասախոսությունների թեմատիկային։ Նա գրում է, որ դասախոսական պրոպագանդայում հատկապես մեծ ուշադրություն է նվիրվել մարքս-լենինյան տեսության հարցերին և կուսակցության ու կառավարության որոշումների պարզաբանմանը։ Հեղինակը միաժամանակ քննադատաբար նշում է, որ որոշ կազմակերպություններում դեռևս չի հաղթահարվել շաբլոնը։

Թերթում ուշագրավ հոդվածներով ու թղթակցություններով հանդես են եկել Հացառատի պետտնտեսության կուսկոմիտեի քարտուղար Ա. Դաբաղյանը, № 2 շինվարչության կուսկազմակերպության քարտուղար Կ. Բիճյանը, Կամոյի սովխոզ-տեխնիկումի բրիգադավար, ՀՍՍՀ պետական մրցանակի դափնեկիր Ս. Քոլոզյանը, Նորադուզի պետտնտեսության արհկոմի նախագահ, սոցիալիստական աշխատանքի հերոս Պ. Ասոյանը և ուրիշներ։ Նրանք, ելնելով «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից, անդրադարձել են գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, ուսումնասիրվող թեմաները, դասախոսական պրոպագանդան կյանքի, տվյալ տնտեսության, ձեռնարկության կոլեկտիվներին ներկայացվող խնդիրների լուծման հետ զուգակցելու հարցերին։

Հոկտեմբերի 18-ի համարում լրագիրը էջ է նվիրել կուսակցական ուսուցմանը և աշխատավորների տնտեսագիտական կրթությանը։ Մի այլ ինֆորմացիայից տեղեկանում ենք, որ կուսշրջկոմի քաղլուսկաբինետի մեթոդխորհուրդը կաբելի գործարանի քաղուսուցման և տնտեսագիտական կրթության դպրոցներում կազմակերպել է պարապմունքների ունկնդրում, որից հետո պրոպագանդիստներին տրվել է մեթոդական օգնություն։

Շրջանային թերթերում երիտասարդության աշխատանքի ու դաստիարակության հարցերին է նվիրել իր հոդվածը շրջսովետի ներքին գործերի բաժնի պետ Վ. Ներսիսյանը։ Նա կոնկրետ փաստերով ցույց է տվել, որ քաղաքի Արծվաքար թաղամասի, Նորադուզ և Այրիվան գյուղերի տնտեսությունների կոմերիտական կազմակերպությունները ինչպես հարկն է չեն զբաղվում երիտասարդության դաստիարակության հարցերով, որի պատճառով առանձին երիտասարդներ չեն զբաղվում հանրային աշխատանքով, գործում են հակահասարակական արարքներ։

Այս ամենով հանդերձ, երբ լրագրի կատարածը զննում ենք ՍՄԿԿ Կենտկոմի «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» որոշման լույսի ներքո, տեսնում ենք, որ «Լենինյան դրոշով» լրագիրը դեռևս մակերեսորեն է լուսաբանում ըստ բնակավայրի մարդկանց հետ տարվող գաղափարախոսական, ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Սակավաթիվ են ագիտկոլեկտիվների, քաղինֆորմատորների գործունեության մասին պատմող նյութերը։ Թերթն անբավարար է լուսաբանում դիտողական ագիտացիայի կազմակերպումը, բնակչության աթեիստական դաստիարակությունը։

Թերթի խմբագրությանը պետք է լրջորեն մտահոգեն նրա սուղ էջերը, լրագրային տարածքն ավելի արդյունավետ օգտագործելու հարցը։ Ցավոք, նկատելի է ոչ տեղական բնույթի նյութերով չափից ավելի հրապուրվելու միտումը և դա, իհարկե, ի վնաս տեղական պրոբլեմների լուսաբանման։

Հարկ է, որ ինչպես ինֆորմացիայի մեր բոլոր միջոցները, շրջանային մամուլը ևս ավելի հաստատակամորեն պայքարի ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի, Կենտկոմի «Շրջանային ու քաղաքային թերթերի գործունեության հետագա բարելավման մասին» որոշումների կատարման համար, խոր ու բազմակողմանի լուսաբանի կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, ամեն կերպ նպաստի դրա արդյունավետության բարձրացմանը։

**ՀՐ. ՀՈՎՍԵՓՅԱՆ**



# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ՌՈՒՍԱԿԱՆ ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ ՄՏՔԻ ԳՆԱՀԱՏՄԱՄԲ

## (XIX ԴԱՐԻ 30—50-ԱԿԱՆ ԹԹ.)

**Մ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**

ԴԱՐԱՎՈՐ ԱԿՈՒՆՔՆԵՐ ունեցող և դարերի խորքից եկող հայ-ռուսական քաղաքական, տնտեսական ու մշակութային հարաբերությունների, Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու և ընդհանրապես հայ ժողովրդի պատմության դրվագների վերաբերյալ ռուսական պատմագրության ներկայացուցիչների առաջադրած տեսակետների ու գնահատականների լուսաբանումն ու մեկնությունը ունեն ո՛չ միայն զուտ տեսական ու գիտական, այլև քաղաքական-արդիական նշանակություն։ Դրանք հնարավորություն են ընձեռում պատմականորեն ճիշտ ընկալելու հայ ժողովրդի ու նրա ազատագրական շարժման ռուսական կողմնորոշման անհրաժեշտությունը, գտնելու, հիմնավորելու և վեր հանելու այն օբյեկտիվ պատճառները, գործոններն ու շարժառիթները, որոնք, ի վերջո, անխուսափելի դարձրին ոչ միայն ռուսական կողմնորոշումը, այլև Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին։ Նրանք իրենց տեսակետներով ու գնահատականներով կարողացան ընդհուպ մոտենալ պատմական ճշմարտությանը։ Այդ ուշագրավ և հետաքրքիր գնահատականներն ու տեսակետները զգալիորեն նպաստում են հակահարված հասցնելու պատմության կեղծարարների հակագիտական կոնցեպցիաներին, որոնք, խեղաթյուրելով մեր երկրի պատմությունը, մասնավորապես փորձում են ժխտել հայ ազատագրական շարժման ռուսական կողմնորոշման ակունքները և կասկածի տակ դնել Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորելու պրոգրեսիվ նշանակությունը։ Դրանք նպաստում են նաև սովետական մարդկանց և առաջին հերթին երիտասարդության հայրենասիրական ու ինտերնացիոնալ աշխարհայացքով դաստիարակելու գործին։

Անշուշտ, XIX դարի ռուսական պատմագիտական միտքը գերազանցապես պաշտպանում էր տվյալ ժամանակաշրջանի տիրապետող դասակարգերի՝ ազնվականության ու բուրժուազիայի շահերը և, ելնելով դրանից, Ռուսաստանի ռազմաքաղաքական գործողությունները Անդրկովկասում ներկայացնում որպես ազատագրական առաքելություն տեղի քրիստոնյա, գլխավորապես բախտակից հայ ու վրաց ժողովուրդների նկատմամբ. նման մոտեցումը, սակայն, քննադատության չի դիմանում, քանզի ցարական կառավարությունը հետևողականորեն հետապնդում էր կայսրության սահմանները Արաքս և Կուր գետերը հասցնելու խնդիրը, ձգտում վերջնականապես ամրանալ և իրեն միացնել ստրատեգիական կարևոր նշանակություն ունեցող երկրամասը։

Հետևաբար, գիտական ու քաղաքական առումով չափազանց կարևոր է ո՛չ միայն ներկայացնել ռուսական պատմագրության ներկայացուցիչների տեսակետները, կարծիքներն ու գնահատականները, այլև անհրաժեշտ է մարքս-լենինյան մեթոդաբանության հիման վրա ցուցաբերել քննադատական մոտեցում, ոչ գիտական հայացքները պատմական իրականության հետ համընկնող տեսակետներից հստակորեն տարազատելու հմտություն։ Միայն կուսակցական մոտեցումն է օգնում ըմբռնելու, նշեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը (1983 թ.), արդիականության առաջատար

ցանկալի ու անհրաժեշտ էր համարում Մովսես Խորենացու **Հայոց պատմության** թարգմանությունը եվրոպական լեզուներով, որովհետև չափազանց արժեքավոր այդ գիրքն օժանդակում է հռոմեական պատմության շատ դեպքերի լուսաբանմանը: «Մենք ևս ցանկանում ենք, որ այն (Խորենացու **Հայոց պատմությունը**— Մ. Մ.) ամբողջովին թարգմանվի ռուսաց լեզվով» (նույն տեղը, հ. III, էջ 265): Այնուհետև հիշատակվում են եվրոպացի այն հետազոտողները, որոնք կա՛մ զբաղվել են հայոց պատմությամբ, կա՛մ իրենց աշխատություններում անդրադարձել դրա որոշ դրվագներին:

Այսպես, դեռևս 1711 թվականին արևելյան լեզուների պրոֆեսոր Հովակիմ Շրեդերը Ամստերդամում հրատարակել էր իր **Հայոց լեզվի գանձերը** աշխատությունը, որը ժողովածուում համարվում է հիանալի ստեղծագործություն: XVII դարի առաջին կեսին ապրած Կլեմենտի Գալանը ուսումնասիրել է հայ ժողովրդի պատմությունը, իսկ Բազելի մարդասիրական ընկերության անդամներ Դիտրիխը և Հասսը, որոնք, ի դեպ, հայոց լեզուն ուսանել են Մոսկվայում, Լազարյան ճեմարանի ռեկտոր Միքայել Սալանտյանի մոտ, հրատարակեցին հայերեն **Աստվածաշունչը**, Ղարաբաղում հիմնադրեցին ուսումնարան, որտեղ ուսանում էին այնտեղ ապրող քրիստոնյաների ու մահմեդականների երեխաները: Փարիզի ակադեմիայի անդամ հայագետ Սեն Մարտենը նույնպես զբաղվել է Հայաստանի պատմությամբ ու նրա դարավոր մշակույթի ուսումնասիրությամբ: Հայերի ու Հայաստանի մասին հետաքրքրական և ուշագրավ տեղեկությունների կարելի է հանդիպել, նշվում է ժողովածուում, ֆրանսիացիներ Բելոյի ու Գամբայի, անգլիացի ճանապարհորդ Ստոկլերի և այլոց մոտ: Այս ամենից հետո կատարվում է ուշագրավ մի եզրակացություն. «Պատմությունը,— ասել է Ցիցերոնը,— ժամանակների վկան է, ճշմարտության լույսը, հիշողության կյանքը և բարքերի ուսուցիչը: Հայոց պատմությունն օժտված է Ցիցերոնի կողմից շարադրված բոլոր հատկանիշներով» (նույն տեղը, հ. III, էջ 264):

XIX դարի 30—50-ական թթ. ռուսական պատմագրության առանձին ներկայացուցիչներ հատուկ տեղ էին հատկացրել հայկական մեծարժեք ձեռագրերին: Այսպես, Պլատոն Զուբովը 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմին նվիրված իր Картина последней войны России с Персией (Санкт-Петербург (СПб), 1834) գրքում մատնանշում է, որ հայկական արժեքավոր ձեռագրերից կազմված մեծագույն գանձերը հասու են նոր լույս սփռելու Արևելքի «երկրների խճճված պատմության վրա և լուսավորելու այն ճշմարտության ջահով» (էջ 25): Այս տեսակետը հիմնավորելիս Զուբովը հենվում էր Ֆրանսիայի թագավորական Ասիական ընկերության հրատարակած աշխատությունների վրա:

Հայ ժողովրդի հնագույն պատմությունը, նրա դարավոր մշակույթը պատշաճ մակարդակով են ներկայացված XIX դարի 50-ական թվականների սկզբին լույս տեսած և Դեմիդովյան մրցանակին արժանացած Իվան Շոպենի Исторический памятник состояния Армянской области в эпоху ее приссединения к Российской империи (СПб., 1852) աշխատությունում: Շոպենն այն եզակի հեղինակներից է, որի ուշադրության կենտրոնում են եղել Արևելյան Հայաստանի տնտեսական դրությունը, վարչական կառուցվածքը և բաժանումները, ազգաբնակչության թիվն ու կազմը, զբաղմունքը, արհեստագործության, առևտրի ու գյուղատնտեսության վիճակը: Իվան Շոպենը փաստորեն առաջինը քննարկման առարկա դարձրեց այդ կարևոր պրոբլեմները, իսկ նրա աշխատությունը վերոհիշյալ հարցերի մեկնաբանման առումով, ըստ էության, գրեթե մնաց չգերազանցված ռուսական պատմագրության մեջ: Փաստագրական հարուստ նյութերն ասես սքողում են աշխատության մեջ տեղ գտած թերություններն ու սխալները, որոնք, թերևս, ժամանակի հետևանք են: Ահա ինչու Շոպենի կողմից մանրամասնորեն նշված և ընդհանուր առմամբ ընդունելի փաստական տվյալներն այսօր ևս քննադատաբար օգտագործում են սովետահայ այն պատմաբանները, որոնց հետաքրքրում են Արևելյան Հայաստանի տնտեսական դրության ու զարգացման, վարչական կառուցվածքի հարցերը և նման այլ պրոբլեմներ:

Հեղինակն ընդհանուր գնահատական է տալիս հայ ժողովրդի պատմության հետ առնչվող հարցերին, ընդ որում նա հենվում է անտիկ աշխարհի պատմիչներ Հերոդոտի, Դիոդոր Սիցիլիացու, Ստրաբոնի, Պլուտարքոսի, պատմահայր Մովսես Խորենացու, Չամչյանի, ռուս հետազոտողներ Պոլևոյի, Բրոնևսկու, հայտնի հայագետ Սեն-Մարտենի աշխատությունների վրա. այս հանգամանքը վերստին վկայում է նրա աշխատության կարևորության մասին: Շոպենի կարծիքով, մարդկության օրրան Արևելքը միաժամանակ հանդիսանում է նրա ամենահետաքրքրական հնությունների գանձարանը (նույն տեղը, էջ 226): «Այս առումով,— եզրակացնում է Շոպենը,— Անդրկովկասն ընդհանրապես, բայց Հայաստանը հատկապես, արժանի է ամենայն ուշադրության» (նույն տեղը):

Հիմնավորելով իր գրքի երևան գալու անհրաժեշտությունն ու կարևորությունը՝ ներածականում Շոպենը հակիրճ գնահատում է Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, նշում դրա դրական նշանակությունը հայ ժողովրդի համար: «Սույն գիրքը,— մատնանշում է հեղինակը,— ունի բավականին կարևոր մի արժանիք ևս. պատկերելով հայկական մարզի վիճակը Ռուսաստանյան կայսրությանը նրա միանալու ժամանակաշրջանում... հնարավոր կլինի ապագայում միշտ համեմատել և ասել. **ահա ինչ է եղել և ահա ինչ կա:** Թող մարզի բնակիչներն իրենք, երբ լիովին կգնահատեն իրենց նոր կացության առավելությունները, այս գիրքը ձեռքներին բաղդատեն իրենց անցյալը ներկայի հետ և, հասկանալով լուսավորության ու օրենքի առավելությունները կամայականության ու տգիտության նկատմամբ, օրհնեն նախախնամությանը» (նույն տեղը, էջ VI): Այս ամենից հետո Շոպենն անցնում է հայ ժողովրդի պատմության հնագույն շրջանի ու մշակույթի լուսաբանմանը: «Հայաստան անունով հայտնի երկիրը երբեմնի բավականին նշանակալից պետություն էր»,— գրում է նա (էջ 1),— որտեղ ապրող հայ ժողովուրդը իր հազարամյա պատմության ընթացքում թեև հարկադրված էր դիմագրավել օտարերկրյա ասպատակությունները, պաշտպանել հայրենիքի անկախությունը, ապրել ու գոյատևել միայն ուժերի գերագույն լարումով, այդուհանդերձ, կարողացավ զարգացնել իր ինքնատիպ մշակույթը, հատկապես պատմության և գրականության ասպարեզներում: Գլինկայի նման Շոպենը ևս անդրադարձել է հայ-հռոմեական պատերազմներին, Լուկուլոսի և Պոմպեոսի արշավանքներին: Ի տարբերություն Գլինկայի, Շոպենն ավելացնում է Մարկ-Անտոնիոսի Հայաստան կատարած արշավանքի մասին. սա միայն խաբեությամբ կարողացավ գերել Արտավազդին և ուղարկել նրան Ալեքսանդրիա, որտեղ և հայոց թագավորը մահապատժի ենթարկվեց (տե՛ս նույն տեղը, էջ 109):

Շոպենը փորձում է առանձին-առանձին ուսումնասիրել Մեծ և Փոքր Հայքի պատմությունը, սակայն հեղինակի կատարած պատմական պարբերացումները, մեղմ ասած, խիստ անհաջող են, որը, թերևս, կազմում է նրա աշխատության ամենախոցելի և թույլ կողմը: Ընդհանրապես նախամարքսյան պատմագրության ներկայացուցիչների համար անմատչելի է հասարակական-տնտեսական ֆորմացիա հասկացությունը, այդ իսկ պատճառով նրանք ժողովուրդների պատմությունը պարբերացնելիս, որպես կանոն, հիմք են ընդունում այս կամ այն միապետի թագավորության շրջանը, տվյալ ժողովրդի քաղաքական կյանքում որոշակի նշանակություն ունեցող իրադարձությունը, օտարերկրյա ասպատակությունները և համանման այլ դեպքեր: Տեսական բնույթի նման սխալներից զերծ չմնաց նաև Շոպենը:

Շոպենը հատկապես մեծ հետաքրքրություն է ցուցաբերել մշակույթի նկատմամբ, մասնավորապես բարձր է գնահատել և ջերմ համակրանքով հիշատակել հայ ժողովրդի մեծ երախտավոր Մեսրոպ Մաշտոցին՝ հայկական այբուբենի ստեղծողին: Հեղինակի համոզմամբ մեսրոպատառ այբուբենը հայ ժողովրդի ձեռքին ուժեղ զենք էր, հզոր կռվան, անկախության և հայապահպանության համար մղվող անդուլ պայքարում: «Նրա (Վռամշապուհի— Մ. Մ.) թագավորության ժամանակ կատարվեց անվերջանալի միօրինակ արյունահեղ երկպառակություններից անհամեմատ ավելի հետաքրքրական մի իրադարձություն: Հայկական այբուբենի գյուտն էր այդ» (նույն տեղը, էջ 124): Մաշտոցի ծառայությունը, Շոպենի կարծիքով, չի սահմանափակվում միայն հայկական այբուբենի ստեղծմամբ. այդ մեծագույն ծառայությունից զատ նա հիմնեց դպրոցներ, որտեղ կրթվեցին շատ երիտասարդներ, որոնք ուսուցումն ավարտելուց հետո մեկնում էին ժամանակի գիտության լավագույն օջախները՝ Աթենք, Կ. Պոլիս, Հռոմ, Անտիոք, Ալեքսանդրիա, Եդեսիա: Հարստացնելով իրենց գիտելիքները՝ «...նրանք վերադարձան իրենց հայրենիքը, որտեղ եռանդով զբաղվեցին հայրենական բանահյուսության տարածմամբ» (նույն տեղը, էջ 182): Մեսրոպը, եզրակացնում է Շոպենը, իրավամբ վայելում է հայրենակիցների հարգանքը և անմեռ է նրանց սրտում (նույն տեղը, էջ 125): Շոպենը, այսպիսով, գիտականորեն միանգամայն ճիշտ է մեկնաբանում Մաշտոցի դերը, նրա մեծագույն ծառայությունը հայկական մշակույթին:

Շոպենը բարձր է գնահատել հայկական մշակույթի մեկ այլ հսկայի՝ պատմահայր Մովսես Խորենացու **Հայոց պատմությունը**: Մովսես Խորենացուն նա անվանում է տեղացի Տակիտոս, հավաստի են պատմահոր աշխատության մեջ եղած տեղեկությունները: Ավելին, հեղինակն իր գրքի համար որպես հիմնական աղբյուր վերցրել է հենց Մովսես Խորենացու աշխատությունը, քանզի այն, ինչպես գրում է Շոպենը, «...բավարարում է պատմության բոլոր պահանջներին» (И. Шопен, Новые заметки на древние истории Кавказа и его обителей. СПб., 1866, с. 2):

Ինչ վերաբերում է հայ ժողովրդի քաղաքական պատմությանը, ապա Շոպենն առանձնահատուկ տեղ է հատկացնում V դարին, երբ ազգային-ազատագրական պայքար էր մղում Սասանյան Պարսկաստանի դեմ: Շոպենը հիմնականում ճիշտ է ըմբռնում հայկական թագավորության անկման և պետականության կորստյան պատճառները. անմիաբանությունը, իշխանների ու հոգևորականության անընդմեջ երկպառակությունները ի վերջո սասանեցին պետության հիմքերը, որից և շտապեցին օգտվել պարսիկները: Պարսից արքա Հազկերտի կամքով հայերը պետք է դավանափոխ լինեին, հրաժարվեին քրիստոնեությունից և ընդունեին զրադաշտը: Հայ պատմիչ Եղիշեի Վարդանանց պատերազմին նվիրված աշխատության մեջ բերված այդ հրովարտակը, ինչպես մատնանշում է Շոպենը, ֆրանսիացի հայտնի արևելագետ Սեն-Մարտենը հրապարակեց Հայաստանի մասին իր **Գրառումներում**: «Կոստանդնուպոլսում տպագրված այս երկը (Եղիշեի **Վարդանանց պատերազմը**— Մ. Մ.),— եզրակացնում է Շոպենը,— համարվում է պերճախոսության տիպար, ոճը կուռ է, հուզիչ և շատ տեղերում փայլուն: Հատկապես ճակատամարտը պատկերված է հափշտակող ճշգրտությամբ» (И. Шопен, Исторический памятник состояния Армянской области в эпоху ее присоединения к Российской империи. СПб., 1852, с. 189—190):

Շոպենը հիշատակում է և արևելագետ Վիլեֆրուայի կարծիքը Փարիզի թագավորական գրադարանում պահպանվող հայկական ձեռագրերի մասին, որի համաձայն դրանք ունեն գիտական կարևոր նշանակություն Արևելքի պատմության ուսումնասիրության համար: «Հայկական ձեռագրերը, ասում էր այդ արևելագետ-գիտնականը, բացում են նոր աշխարհ գրականության համար, ուր դեռևս չի թափանցել ոչ մի եվրոպացի... Հայաստանում մինչև այժմ ապրող միխոնները, ավելի շատ զբաղվելով իրենց հոգևոր կոչմամբ, ազատ ժամանակ չունեին խորանալու հայկական հնությունների մեջ. այժմ աշխարհը, իհարկե, հաճելի զարմանքով տեղեկանում է, որ Արևելքում գոյություն ունի հատուկ ուսումնասիրության արժանի հետաքրքիր ազգ...» (նույն տեղը, էջ 184): Այս ամենից հետո ահա թե ինչպես է գնահատում Շոպենը հայ պատմիչներին. «...Հայկական մատենագիրների օգնությամբ հայագետ-գիտնականները հին և միջին դարերի պատմության շատ տեղեր լրացրեցին ու բացատրեցին այնպիսի իրադարձություններով, որոնք մինչև նրանց հետազոտությունների լույս աշխարհ գալը անհայտ էին մնում հայ պատմիչների աշխատություններում, բայց դա միայն ընկիզքն է, և հետագա խորացումը պատմական այդ նյութերի հանքաքարում դեռևս կտասնապատկի մեր հարստությունը գիտության այս բնագավառում» (նույն տեղը, էջ 185): Զարգացնելով իր այս կարևոր միտքը՝ Շոպենն ավելացնում է. «Այժմ Եվրոպան եռանդուն ջանում է հատուցել անցյալի համար, շատ համալսարաններին կից բացվել են հայոց լեզվի ամբիոններ... և, պետք է հուսալ, որ մոտ ժամանակում Ռուսաստանի բարերար ազդեցությամբ այս կլասիկ լեզուն կգրավի իր արժանի տեղը Արևելքի այլ լեզուների մեջ» (նույն տեղը, էջ 208): Շոպենը գիտակցում էր, որ Արևելյան Հայաստանը Ռուսաստանի հետ միավորվելուց և նրա հովանավորության տակ անցնելուց հետո ո՛չ միայն ավելի կմեծանա Եվրոպայի հետաքրքրությունը հայկական մշակույթի նկատմամբ, այլև հնարավորություն կընձեռվի լիովին գնահատելու նրա տեղն ու նշանակությունը համաշխարհային քաղաքակրթության ոլորտում:

Հայ ժողովրդի ու Հայաստանի վերաբերյալ որոշ տեղեկություններ է հաղորդում ժամանակի հայտնի գրող Ա. Ն. Մուրավյովը իր երեք հատորից բաղկացած **Վրաստանը և Հայաստանը** գրքում: Դրանք ճամփորդական նոթեր են, որ հետագայում հրապարակվեցին առանձին գրքով: Հայաստանին է նվիրված աշխատության երկրորդ մասը: Հեղինակն անձամբ հանդիպումներ է ունեցել Ներսես Աշտարակեցու հետ ռուսական կայսրության մայրաքաղաքում և Էջմիածնում, ծանոթ է եղել Խաչատուր Աբովյանին, որն ուղեկցել է նրան



Երևանից Էջմիածին: Իր ճամփորդական նոթերում, անդրադառնալով հայոց պատմության էջերին, Մուրավյովը շատ անգամ տուրք է տալիս կղերական տեսակետներին ու մեկնաբանություններին: Վարդանանց պատերազմին նա տալիս է գլխավորապես կրոնական բնույթ, թերևս անտեսում կամ, ավելի ճիշտ, թերագնահատում է ազգային-ազատագրական պայքարի, սոցիալական ճնշման չափազանց կարևոր քաղաքական հանգամանքները: Մուրավյովը մատնանշում է օտարերկրյա նվաճողների հասցրած արհավիրքները, որոնց ասպատակությունների պատճառով քայքայվել է երկիրը, ամայացել ու կործանվել են Դվինը, Արտաշատը, Վաղարշապատը, Անին: Մուրավյովը քաջ պատկերացնում է, որ օտարերկրյա երկարատև տիրապետությունը չէր կարող բարերար լինել հայերի համար ո՛չ բարոյական և ոչ էլ նյութական կացության առումով, թերևս քաղաքական այն պատճառով, որ զարգացման անհամեմատ ավելի ցածր աստիճանում գտնվող, բայց թվով զգալիորեն գերազանցող քոչվոր և ռազմատենչ ցեղերը, բացի ավերածությունից ու կործանումից, ուրիշ ոչինչ չէին բերում հայ ժողովրդին: Իսկ պատմական այդ չարիքը խիստ բացասաբար էր անդրադառնում հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական, քաղաքական և մշակութային առաջընթացի վրա, կասեցնում էր այն, ետ պահում նրան քաղաքակիրթ ժողովուրդների զարգացման մակարդակից, զրկում պետականությունից, ստեղծում ֆիզիկական բնաջնջման կամ բռնի ձուլման վտանգ:

Ռուսական պատմագրության ներկայացուցիչներին հենց ռուս ժողովրդի պատմությունից հայտնի են օտարերկրյա ասպատակությունների սոցիալ-տնտեսական ու քաղաքական ծանր հետևանքները: Բավական է հիշել, որ թաթար-մոնղոլների ավերիչ ասպատակություններից ու աղետներից զերծ չմնաց նաև ռուսական երկիրը. այդ ամենի մասին հայրենասերի անկեղծ ցավով են հիշատակել XIX դարի կարկառուն պատմաբաններ Ն. Կարամզինը, Ս. Սոլովյովը: Ահա ինչու նրանք ո՛չ միայն քաջ պատկերացնում էին օտարերկրյա լծի ծանր հետևանքները, այլև համակրանքով արտահայտվում այն ժողովուրդների մասին, որոնք ազատագրական պայքար էին մղում իրենց անկախության համար և ապավինում էին Ռուսաստանին, ռուս ժողովրդին:

XIX դարի 30—50-ական թթ. ռուսական պատմագրությունը Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելուց հետո կարողացավ հիմնական գծերով լուսաբանել հայ ժողովրդի պատմության հին շրջանի կարևորագույն էջերը, հիմնավորել, որ, չնայած հայերի համար եղած քաղաքական խիստ անբարենպաստ դրությանը, այնուամենայնիվ, նրա ստեղծած բարձրարժեք մշակույթը լուրջ ներդրում է համաշխարհային քաղաքակրթության գանձարանում:

Հայ ժողովրդի դարավոր անցյալի, հնագույն մշակույթի, Ռուսաստանի հանդեպ ունեցած երախտագիտության, նրա ռուսական կողմնորոշման և, վերջապես, Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու պատմական նշանակության մասին հարուստ, ուշագրավ և չափազանց հետաքրքիր տեղեկություններ են թողել Ռուսաստանի պատմության մեջ ազատագրական-հեղափոխական շարժման մունետիկները՝ դեկաբրիստները, որոնք ակտիվ մասնակցել են ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմներին և դրանով իսկ իրենց լուման ներդրել հայ ժողովրդի մի հատվածի ազատագրման գործում: Ազնվական-հեղափոխականները ևս համոզված էին, որ եթե ամբողջ Հայաստանը միանա Ռուսաստանին, ապա ռուսական պետությունը հարավում կստանա ամուր սահմաններ, կամրապնդվի նրա ռազմաքաղաքական հզորությունը: Դեկաբրիստները գիտակցում էին, որ Ռուսաստանը թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական և թե մշակութային զարգացման մակարդակով անհամեմատ ավելի բարձր էր ինչպես Պարսկաստանից, նույնպես և Թուրքիայից: Այստեղից նրանք կատարում էին պատմականորեն միանգամայն ճիշտ հետևություն, որի համաձայն հայ ժողովրդի ազատագրումը պարսկական և թուրքական լծից, Ռուսաստանի հետ նրա միավորվելը կարող էին ունենալ միայն պրոգրեսիվ նշանակություն: Դեկաբրիստների նման գնահատականը քաղաքական առումով հույժ կարևոր է, այն ըստ էության համահունչ է Ֆ. Էնգելսի 1851 թ. Մարքսին գրած նամակի բովանդակությանը. «Որքան ավելի եմ խորհում պատմության վրա,— գրել է Էնգելսը,— այնքան ինձ համար պարզ է դառնում, որ ...Ռուսաստանը իսկապես առաջադիմական դեր է խաղում Արևելքի նկատմամբ» (К. Маркс и Ф. Энгельс,

Соч., т. 27, с. 240—241)։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ ռուս ժողովրդի տաղանդավոր զավակ, հայ ժողովրդի հավատարիմ բարեկամ Ա. Ս. Գրիբոյեդովը, որի ծառայությունները հատկապես անգնահատելի են Թուրքմենչայի հաշտության պայմանագրի կնքման գործում, ռուս-պարսկական պատերազմի նշանակության մասին գրում էր, թե դա «ընդհանրապես ամենամարդասիրական պատերազմն է» (Ա. Ս. Գրիբոյեդով, **Ճանապարհորդական նոթեր,** Ե., 1945, էջ 61)։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը հնարավորություն ընձեռեց հայ ժողովրդին՝ հաղորդակցվելու ռուսական առաջադիմական-դեմոկրատական ու հեղափոխական մտքին։ Այդ գաղափարների անմիջական կրողները դարձան հայ ժողովրդի երկու մեծագույն զավակները՝ մեծ լուսավորիչ ու գրող, ռուսական կողմնորոշման համոզված ներկայացուցիչ Խաչատուր Աբովյանը և հեղափոխական-դեմոկրատ, հայ վաթսունականների ճանաչված ղեկավար, Ա. Գերցենի և Ն. Օգարյովի բարեկամ ու զինակից Միքայել Նալբանդյանը։ Մ. Նալբանդյանը և նրա զինակիցները կողմնորոշվում էին դեպի հեղափոխական Ռուսաստանը, Ն. Չերնիշևսկու և Ա. Գերցենի Ռուսաստանը։ Հայաստանի ազատագրման սոցիալ-քաղաքական հեռանկարները, նրա երկու հատվածների վերամիավորումը նրանք կապում էին Ռուսաստանի ապագայի և ռուս ժողովրդի հետ։ Ահա ինչու Նալբանդյանի խոր համոզմամբ, «Ռուսիո ազատությունը, ընդհանուր մարդկության ազատության վերաբերությամբ, մեծ խորհուրդ ունի...» (Մ. Նալբանդյան, **Հրապարակախոսական երկեր,** Ե., «Հայաստան», 1979, էջ 339—340)։

«Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը,— մատնանշվում է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ողջույնի ուղերձում Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի և հանրապետությունը Լենինի շքանշանով պարգևատրելու առթիվ,— առաջադիմական հսկայական նշանակություն ունեցող պատմական ակտ էր։ Դա հայ ժողովրդին փրկեց օտարերկրյա նվաճողների կողմից բնաջնջվելու սպառնալիքից, ստեղծեց նրա սոցիալական ու ազգային վերածննդի օբյեկտիվ նախադրյալներ, աշխատավոր հայերին թույլ տվեց հաղորդակից լինելու ռուսական առաջավոր կուլտուրային, համադեմոկրատական ու մարքսիստական գաղափարներին, լենինյան կուսակցության մեծ գործին»։

---



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.
Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝
52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77։

*Հանձնված է շարվածքի 22.01.85 թ.։ Ստորագրված է տպագրության 14.02.85 թ.։ ՎՖ 05141։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ բարձր։ 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 17552։ Պատվեր՝ 82։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2։*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.